ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ ● 1965

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՜ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2 ՓԵՏՐՎԱՐ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն



# Содержание




Բ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի առաջին քարտուղար


# ՂԵԿԱՎԱՐ ԿԱԴՐԵՐԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Մեր պարտիան միշտ էլ մեծ նշանակություն է տվել ղեկավար գործիչների գաղափարական-քաղաքական նկարագրին, նրանց մտավոր կարողությունների զարգացման և դրանք կոմունիզմի կառուցման վեհ գործին ի սպաս դնելու կարևորագույն հարցին:

Ահա թե ինչու անցյալ տարվա սեպտեմբերին ՀԿՊ Կենտկոմի նախագահությունը հանգամանորեն քննարկեց մայրաքաղաքի ղեկավար կադրերի գաղափարական-քաղաքական դաստիարակության հարցը: Արձանագրելով այդ բնագավառում ձեռք բերված դրական արդյունքները, Կենտկոմի նախագահությունը միաժամանակ բացահայտեց մայրաքաղաքի պարտիական կազմակերպության գործունեության մեջ տեղ գտած մի շարք լուրջ սխալներ ու թերություններ և նշեց դրանց վերացման կոնկրետ միջոցները:

Ինչ խոսք, որ այդ քննարկումից հետո մայրաքաղաքի պարտիական կազմակերպությունները նշանակալի աշխատանք կատարեցին Կենտկոմի նախագահության որոշումը կենսագործելու ուղղությամբ: Սակայն հարկավոր է ասել, որ այսօր էլ մեր ղեկավար կադրերի գաղափարական-դաստիարակչական աշխատանքների վիճակն այնպիսին է, որ թելադրում է մեզ պատշաճ կոնկրետությամբ բացահայտել այդ մարզում դեռևս գոյություն ունեցող թերությունների պատճառները և նշել դրանց վերացման միջոցները:

Հարցը շոշափելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների և պարտիայի ծրագրի կենսագործման տեսանկյունով, անհրաժեշտ է ընդգծել, որ պարտիական-պետական ու տնտեսավարական ղեկավար գործիչների գաղափարական-քաղաքական դաստիարակությունը իր հասկանալի բարդություններով և առանձնահատկություններով հանդերձ՝ ուրույն տեղ է գրավում մեր առօրյա գործունեության մեջ: Չէ որ Երևանում են կենտրոնացված ռեսպուբլիկայի պետական և տնտեսական կենտրոնական ապարատը, ստեղծագործական կազմակերպությունների, բարձրագույն ու միջնակարգ ուսումնական հաստատությունների, գիտական հիմնարկների մեծ մասը, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի և շինարարական կազմակերպությունների ղեկավար հաստատությունները:

Վեր է ամեն կասկածից, որ երկրի զարգացման ներկա էտապում զգալիորեն փոխվել է ղեկավար աշխատողի նկատմամբ ունեցած մեր երբեմնի նեղ ու միակողմանի պատկերացումը։ Տնտեսության, տեխնիկայի և կուլտուրական շինարարության վիթխարի մասշտաբները ղեկավարի պատվանդանին են կանգնեցնում հազարավոր մարդկանց, որոնց նորագույն ֆունկցիաների ու պատասխանատու դերի մասին դեռ մի տասնամյակ առաջ մենք հստակ գաղափար չունեինք։

Այստեղ նորն ու բնորոշն այն է, որ այժմ կյանքի բոլոր բնագավառների մեծաթիվ ղեկավարներ օժտված են բազմազան մտավոր ունակություններով, զինված են մարքսիստական-լենինյան տեսությամբ, գիտությունների խոր իմացությամբ։ Եվ այս հանգամանքը պահանջում է մեզնից խորապես ըմբռնել այդ իրավիճակի յուրահատկությունները, ավելի հարստացնել իմացության մեր պաշարը և նոր երևույթներին ցուցաբերել պարտիական-պետական մոտեցում։ Հետևաբար, պարտիական կազմակերպությունները կոչված են այսուհետև ավելի հիմնավոր եղանակներով և պատասխանատվության առավել մեծ զգացումով զբաղվելու ղեկավար կադրերի ոչ միայն ընտրության և տեղաբաշխման, այլև նրանց գաղափարական-քաղաքական դաստիարակության հարցերով։

Քննարկվող հարցի առումով մոտենալով Երևանի պարտիական կազմակերպությունների գործունեությանը, պետք է ասենք, որ զգալի հաջողությունները տնտեսության բոլոր ճյուղերում վկայում են այն մասին, որ ղեկավար կադրերի գաղափարական-քաղաքական մակարդակն այժմ ավելի բարձր է, քան երբևէ։

Սակայն մայրաքաղաքի պարտիական կազմակերպությունների դրական գործունեությունը չի սահմանափակվում միայն արտադրական պլանների կատարմամբ և գերակատարմամբ։ Նրանք արդյունավետ ջանքեր են գործադրել նաև քաղաքի բարեկարգման, աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ասպարեզում։ Նրանց օգնությամբ զգալիորեն բարելավվել է նաև գիտության ու կուլտուրայի, ստեղծագործական և գիտահետազոտական կազմակերպությունների, առողջապահության, բարձրագույն ուսումնական հաստատությունների, լուսավորության, կառավարչական օրգանների գործունեությունը։ Վերջիններիս առջև դրված խնդիրների լուծման ասպարեզում պարտիական կազմակերպությունների հետ միասին մեծ աշխատանք են կատարում կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունները։

Ղեկավար կադրերի գաղափարական-քաղաքական դաստիարակության նպատակն է՝ նրանց գործելակերպում արմատավորել և զարգացնել աշխատանքի լենինյան ոճը, հասնել այն բանին, որ նրանք իրենց գործունեության ընթացքում հենվեն կոլեկտիվի վրա։ Այո, ղեկավար ընկերոջ գործունեության հաջողության գրավականը՝ աշխատավորների կոլեկտիվ մտքի և կոլեկտիվ փորձի խելոք օգտագործումն է։ Այն ղեկավարները, որոնք հետևողականորեն կիրագործեն ղեկավարման լենինյան սկզբունքները, նրանց մոտ գործերի վիճակը միշտ լավ կլինի։

Այս առումով արժե դրվատել մայրաքաղաքի հարյուրավոր հաջողակ և ազնիվ դիրեկտորներից մեկին՝ էլեկտրատեխնիկական գործարանի երիտասարդ ղեկավար Կարեն Դեմիրճյանին։ Ընդամենը տասը տարի է, ինչ նա աշխատում է այդ գործարանում և շարքային ինժեներից հասել է դիրեկտորի հույժ պատասխանատու և պատվաբեր դիրքին։ Իսկ ինչպե՞ս։ Ո՛չ ամենևին «առաջքաշման» կարգով, այլ գործին անսահմանորեն նվիրված լինելու տենչով համակված։ Ո՛չ թե բարձր դիրք նվաճելու համար, այլ կոլեկտիվի վստահության արժանի հանրօգուտ գործունեությամբ։ Դիրեկտորության իրավունքը նա վաստակել է ո՛չ միայն իր խորիմացությամբ, այլև ազնիվ վարքագծով, հստակ գաղափարական դեմքով և մարդկանց օրինական պահանջմունքներին ընդառաջելու բարյացակամությամբ։



Ընկեր Դեմիրճյանի գործունեության ոճը կարելի է բնորոշել հետևյալ կերպ. տնտեսավարման վարպետության և գործնականության օրգանական զուգորդում։ Զզվանք՝ շաղակրատանքի և առավելագույն հակում համեստության նկատմամբ։ Հակակրանք՝ էժանագին խոստումներով ձեռք բերված հեղինակության և փքուն «դեմոկրատիզմի» հանդեպ և սովետական օրենքների անշեղ կենսագործում։ Անհանդուրժողականություն իրավունքները չարաշահողների դեմ և պարտիական, պրոֆմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների ֆունկցիաների լիակատար պահպանում։ Համբերատար և բարյացակամ վերաբերմունք ներքևից եկող քննադատության հանդեպ և քննադատողների հետ խորհրդակցելու և գործակցելու պատշաճ տակտ։

Առօրյա հարցերի քննարկումից ծագած վեճերից նա չի «խրտնում» ոմանց նման, այլ իր սուր մտքի օգնությամբ որսում է այդ վեճերի մեջ առկա օգտակար գաղափարները և հաճույքով հանձն առնում դրանց իրագործումը։ Գործարանային կոլեկտիվը գնահատում և հարգում է ընկ. Դեմիրճյանի անմիջականությունը ու ձեռներեցությունը։ Նրա մտավոր կարողության բնորոշ մի գիծն էլ այն է, որ կարողանում է կոլեկտիվում ծագած տարակարծիքությունների նրբերանգները յուրովի սինթեզել և կիրառել։

Եվ ահա այս ձեռնարկության կոլեկտիվի միասնությունն ու համախմբվածությունն իրենց արտահայտությունն են գտնում աշխատողների համերաշխ գործունեության մեջ, տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով պլանները կատարելու և գերակատարելու մեջ։ 1964 թ. գործարանի կոլեկտիվը բոլոր ապրանքատեսակների գծով տարեկան պլանը կատարեց դեկտեմբերի 19-ին և խոտան արտադրանք չտվեց։

Վերջին 2—3 տարիների ընթացքում այս ձեռնարկությունում շատ բան է արված աշխատատար պրոցեսների մեքենայացման, հոսքային գծերի արմատավորման, կոնվեյերների տեղադրման, տեխնոլոգիական կարգապահության բարձրացման ուղղությամբ։ Այժմ գործարանի թողարկած միասնական սերիայի էլեկտրաշարժիչներն իրենց հուսալիությամբ և ցուցանիշներով չեն զիջում և ոչ մի ուրիշ շարժիչի։

Մայրաքաղաքի սկզբնական պարտիական կազմակերպությունները շատ անելիքներ ունեն արտադրության մեջ աշխատող մեր հազարավոր «մեծ» ու «փոքր» ղեկավարների դաստիարակության գործում։ Լավագույն ցեխի պետի, հերթափոխի պետի և վարպետի աշխատանքի ճիշտ գնահատումը, արժեքավորումը բարոյական խթան են հանդիսանում ինչպես նրա, այնպես էլ մյուս ղեկավարների դաստիարակության գործում։

Ղեկավար կադրերի դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունեն ժամանակին նրանց թերությունների ու սխալների նշմարումը և շտկումը։ Ո՛չ պակաս կարևոր նշանակություն ունի նաև նրանց լավ աշխատանքի ճիշտ գնահատումը։ Մինչդեռ, լավագույն ղեկավար աշխատողին ըստ արժանվույն

չգնահատելը մեր աշխատանքի թույլ տեղերից մեկն է։ Գործի շահը պահան-
ջում է, որ սկզբնական պարտիական կազմակերպությունները, շրջանային կո-
միտեներն ու քաղաքային կոմիտեն ամեն կերպ օգնեն, նպաստեն, պայմաններ
ստեղծեն լավ ղեկավարների դերի ու հեղինակության բարձրացման, նրանց
փորձի տարածման ու արմատավորման համար։
Պետք է նկատի ունենալ, որ ղեկավարի շուրջը հասարակական ու ճիշտ
կարծիք ստեղծելու հետևանքով կարող է շահել կամ տուժել ոչ միայն ղեկա-
վարը, այլև ամբողջ կոլեկտիվը։ Տեսնել ղեկավարի թերությունները, ասել
նրան այդ մասին, բոլորովին չի նշանակում վարկաբեկել, զրպարտել նրան։
Սակայն առանձին մարդիկ ի չարը գործադրելով քննադատության իրավուն-
քը, ղեկավարի նկատմամբ թույլ են տալիս անհիմն ոտնձգություններ, նրան
վերագրում են շինծու մեղադրանքներ, որով խանգարում են գործին, արյուն
պղտորում և ներվեր փչացնում։ Պարտիական կազմակերպությունը բարոյական
իրավունք չունի նման դեպքերում անտարբերություն ցուցաբերել։ Նա պետք է
ակտիվ միջամտի և իր վճռական խոսքն ասի այդ մասին։
Քիչ չեն դեպքերը, երբ սկզբնական պարտիական կազմակերպությունները
ժամանակին անհրաժեշտ հակահարված չեն տալիս դեմագոգներին ու շան-
տաժիստներին, մտածելով, որ դա կդիտվի իբրև քննադատության ճնշում։
Օգտվելով դրանից, որոշ դեմագոգների հաջողվում է վարկաբեկել ոչ միայն
ղեկավարին, այլև խանգարել ամբողջ կոլեկտիվին։ Դա հետագայում պարտիա-
կան կազմակերպությունից շատ ժամանակ է խլում աշխատանքային նորմալ
մթնոլորտ ստեղծելու համար։
Ցավն այն է, որ ղեկավարի նկատմամբ երբեմն անբարյացակամ վերա-
բերմունք են ցուցաբերում նույնիսկ առանձին պարտիական կազմակերպու-
թյունների քարտուղարներ, որոնք իրենց ամբողջ գործունեությունը տեսնում
են միայն ղեկավարներին հակադրվելու մեջ, կարծելով, թե դա «սկզբունքայ-
նություն» է։
Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական կազմա-
կերպության վերահսկողության ֆունկցիան որոշ դեպքերում վերածում են
պարտկազմակերպության քարտուղարի վերահսկողության ֆունկցիայի, որը
սխալ է ու դատապարտելի։ Եվ ի՞նչ։ Նման քարտուղարն իր պարտքն է համա-
րում լսել բոլոր նրանց, ովքեր դժգոհ են ղեկավարից։ Նա, իհարկե, պարտա-
վոր է նրանց լսել։ Բայց, որպես քարտուղար, նա միաժամանակ պարտավոր է
իր խոսքն ասել, օբյեկտիվ ու սկզբունքային վերաբերմունք ցուցաբերել և ոչ
թե հանդես գալ սոսկ լսողի և դեմագոգներին հովանավորողի դերում։ Քարտու-
ղարի նման վարքագիծը հանգեցնում է նրան, որ նա շրջապատվում է դժգոհ,
այս կամ այն պատճառով տուժած մարդկանցով, որոնք ելնելով իրենց անձ-
նական նեղ շահերից, խանգարում են կազմակերպության աշխատանքը, նրա
ուշադրությունը շեղում են հիմնական հարցերից և փորձում ղեկավար պոս-
տեր գրավել կամ էլ քիչ և հանգիստ աշխատանքով՝ շատ փող վաստակել։
Նման դեպքեր են նկատվում ոչ միայն մի քանի արտադրական ձեռնար-
կություններում, առևտրական կազմակերպություններում ու հիմնարկներում,
այլև առանձին դպրոցներում, ուր լուրջ ուշադրություն չեն դարձնում պարտ-
կազմակերպության քարտուղարի ընտրության վրա։ Այդ տեսակետից հատ-
կանշական է հետևյալ օրինակը։
1963 թվականի հունիսին Շահումյանի շրջանային կոմիտեի բյուրոն



քննարկեց № 15 գիշերօթիկ դպրոցի աշխատանքների վիճակը։ Քննարկումը
ցույց տվեց, որ դպրոցում ձախողված են ուսումնա-դաստիարակչական աշխա-
տանքները, ուսուցչական կոլեկտիվում տիրում է անառողջ, ոչ գործարար մթ-
նոլորտ։ Դպրոցի դիրեկտորի տնտեսական գծով տեղակալը և հաշվապահության
աշխատողները, օգտվելով ստեղծված վիճակից, յուրացրել էին երեխաներին
տրվող սննդի, հագուստի, ծնողներից գանձվող գումարների մի մասը և այլն։
Շրջանային կոմիտեի բյուրոն ճիշտ է վարվել, երբ ստեղծված վիճակի համար
աշխատանքից ազատել է դպրոցի դիրեկտորին, ուսումնական մասի վարիչին,
դիրեկտորի տնտեսական գծով տեղակալին, հաշվապահին և մի շարք այլ
աշխատողների։
Սակայն ի՞նչ է կատարվում հետագայում։ Սեպտեմբերին նշանակում են
նոր դիրեկտոր, ընտրում են պարտկազմակերպության նոր քարտուղար և, չան-
ցած վեց ամիս, 1964 թվականի ապրիլին դպրոցի հարցը նորից է դառնում
շրջանային կոմիտեի բյուրոյի քննարկման առարկա։ Պարզվում է, որ դպրոցի
պարտկազմակերպության քարտուղարը պայքար է սկսել դիրեկտորի դեմ։ Իր
շուրջը հավաքելով բոլոր նրանց, ովքեր դժգոհ են դիրեկտորից, նա ճարպ-
կորեն օգտագործում է դիրեկտորի ամենափոքր թերությունն ու սխալը և կո-
լեկտիվում խորացնում է խմբծանքներն ու բամբասանքները, որոնք ընդունում
են նոր ձևեր։ Շրջանային կոմիտեի բյուրոն այս անգամ Լ. Կարապետյանին
ազատում է պարտկազմակերպության քարտուղարի պարտականությունից և
պարտիական պատասխանատվության է ենթարկում նոր նշանակված դիրեկ-
տորին։ Հարց է ծագում. մի՞թե պարտիայի շրջանային կոմիտեն չգիտեր, թե
ում է հաստատում աննորմալ վիճակում գտնվող այդ դպրոցի պարտկազմա-
կերպության քարտուղար. եթե գիտեր, ապա ինչպե՞ս է Կարապետյանին հաս-
տատում պարտկազմակերպության քարտուղար։ Չէ՛ որ Թալինի և Արթիկի շրջ-
ջանների դպրոցներում աշխատելու ժամանակ նա զբաղվել է անսկզբունք
պայքարով, խառնել է ուսուցչական կոլեկտիվների գործերը, անստորագիր
նամակներով զրպարտել է մարդկանց և պարտիայի վերոհիշյալ շրջկոմների
կողմից ստացել է նկատողություն և խիստ նկատողություն՝ գրանցելով անձ-
նական քարտում։ Դրանցից դաս չառնելով, Լ. Կարապետյանն իր նույն վար-
քագիծը շարունակել է Երևանի № 15 գիշերօթիկ դպրոցում։
Այս և նման մի շարք այլ փաստեր խոսում են այն մասին, որ պարտ-
կազմակերպությունների քարտուղարների ընտրության հարցում միշտ չէ, որ
ցուցաբերվում է անհրաժեշտ սկզբունքայնություն։ Երբեմն բարձր արժանիքներ
չունեցող մարդիկ ընտրվում են պարտկազմակերպության քարտուղար, իսկ
պարտիայի շրջանային կոմիտեներն ու քաղաքային կոմիտեն երբեմն չմի-
ջամտելու իրենց քաղաքականությամբ վնաս են հասցնում պարտկազմակեր-
պությանը։
Առանց սկզբնական պարտիական կազմակերպության չի կարելի պատ-
կերացնել ղեկավար աշխատողների դաստիարակության բավարար վիճակ։
Այստեղ է, որ ղեկավար աշխատողներն անմիջական շփման մեջ են մտնում
կոլեկտիվի հետ, մասնակցում են հարցերի քննարկմանը, ծանոթանում կոմու-
նիստների առաջարկություններին, սովորում նրանցից ու սովորեցնում նրանց,
պատասխանատվություն զգում կազմակերպության առջև։ Այս առումով
պարտկազմակերպության հաջող աշխատանքը քիչ բանով կախված չէ ղեկա-
վարների՝ պարտիական կազմակերպության հանդեպ ցուցաբերած վերաբեր-

մունքից։ Նրանք իրենց պաշտոնական պարտականությունների կատարման զուգընթաց, պարտկազմակերպություններին պետք է օգնեն կադրերին համեստության, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության, սկզբունքայնության ու բարձր գաղափարայնության ոգով դաստիարակելու գործում։

Բանն այն է, որ առանձին ղեկավար ընկերներ, այդ թվում և կոմունիստներ, երբեմն մոռացության են տալիս այդ հանգամանքը և իրենց գոռոզամտությամբ, ինքնահավանությամբ ու չոր պաշտոնականությամբ հակադրվում են կոլեկտիվին, հաշվի չեն առնում նրա կարծիքը, խորհուրդները։ Այդպիսի ղեկավարներն արտաքուստ կեղծ կեցվածք ընդունելով, կարծում են, որ իրենք ամենագետ են, ընկերներից սովորելու ոչինչ չունեն, որ ամեն ինչ կարող են անել միայն կարգադրելու, հրամայելու միջոցով։

Այս կարգի ղեկավարների մասին խոսելիս չի կարելի չնշել ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի դիրեկտոր Մ. Ամիևին։ Ընկ. Ամիևի արտաքին կեցվածքին, խոսելուն, վարվելաձևին նայողը նրա մասին դրական կարծիք է կազմում։ Սակայն դա միայն արտաքին տպավորությունն է։ Իրականում նա այլ մարդ է։ Երկար տարիներ ղեկավար աշխատանքում լինելով, նա տնտեսավարություն չի սովորել և տնտեսությունը վարում է անգիտակ, կոլեկտիվում ոչ ոքի կարծիքի հետ հաշվի չի նստում։ Նրա համար կոլեկտիվ հասկացողությունը գոյություն չունի, իսկ ի դեմս պարտիական կազմակերպության տեսնում է միայն իր աշխատանքը խանգարողին։ Ընկ. Ամիևի խոսքի և գործի միջև կա հսկայական տարբերություն։ Նա ասում է մի բան, անում՝ ճիշտ հակառակը։ Միայն զարմանալ կարելի է, թե ընկ. Ամիևը ինչո՞ւ է այդքան մեծամիտ, ինչո՞ւ է այդքան անհամեստ, չէ որ նրա անտնտեսավարության պատճառով նույնիսկ որոշ վնաս է հասցվել պետությանը։ Այս բոլորից հետո ընկ. Ամիևը որևէ բարոյական իրավունք ունե՞ր թողնելու և հեռանալու պարտբյուրոյի նիստից միայն այն բանի համար, որ բյուրոյի չորս անդամները չեն համաձայնում իր կարծիքի հետ։

Դա ղեկավարին վայել վարքագիծ չէ, որը պարտիական կազմակերպության ու շրջկոմի կողմից ժամանակին ճիշտ գնահատականի չի արժանացել։ Ամեն անգամ անդրադառնալով ցուցահանդեսի գործունեությանը, նրանք նշել են միայն ընկ. Ամիևի տնտեսական գործունեության մեջ տեղ գտած թերությունները, որը, իհարկե, կարևոր է։ Բայց ղեկավարի գնահատման գործում կան նաև ուրիշ չափանիշներ, որոնք, ցավոք, դուրս են մնացել պարտկազմակերպության, շրջկոմի, ինչպես նաև քաղկոմի տեսադաշտից։

Ժամանակն է, որպեսզի մենք մարդկանց վրա նայենք ու գնահատենք ոչ միայն «արտադրական» կամ «համախառն արդյունքի» աշտարակից, այլ լենինյան պարտիայի մեծ գաղափարների բարձունքից։ Իսկ դա նշանակում է՝ մարդուն գնահատել և՛ գաղափարապես, և՛ տնտեսական-արտադրական գործունեությամբ, թե՛ նրա բարոյական կերպարի, թե՛ կոմունիստական վարք ու բարքի տեսանկյունից։ Մարդկանց լրջության արժանիքը համարելով նրանց խոսքի ու գործի ներդաշնակությունը, մենք պետք է հաշվի առնենք նաև նրանց հասարակական կշռույթը, պարտիային և ժողովրդին ծառայելու նրանց անկեղծությունն ու հոգեկան մաքրությունը։ Եթե ղեկավարն այս կամ այն չափով շրջապատի մարդկանց համար ազնվության, խելոքության և գործունակության տիպար չի հանդիսանում, եթե չի վայելում լայն մասսաների համակրանքը՝ պետք է հեռանա իր գրաված պոստից։



Ղեկավար կադրերի դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունի նրանց վարքագծի հարցը։ Նրանց դաստիարակման գործը չպետք է սահմանափակվի միայն տնտեսական հարցերի քննարկմամբ ու լուծմամբ։ Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները, շրջանային կոմիտեներն ու քաղաքային կոմիտեն առավել մեծ ուշադրություն նվիրեն ղեկավարների աշխատանքում լենինյան ոճի արմատավորմանը։ Եթե պարտիական կազմակերպության քարտուղարը, շրջկոմի և քաղկոմի հրահանգիչներն ու քարտուղարները զգում են, որ այս կամ այն ղեկավարն արդեն սկսում է մեծամտանալ, ինքնահավան դառնալ, ապա անհրաժեշտ է սրտաբաց, մտերիմ զրույց ունենալ սրա հետ. դա շատ բան կարող է փոխել և կանխել։

Մի՞թե նորմալ է, երբ քաղաքում չկա թեկուզ մեկ սկզբնական պարտիական կազմակերպություն, որը քննարկած լինի ղեկավար աշխատողների՝ գործարանի դիրեկտորի, ցեխերի, բաժինների պետերի, վարպետների դերը ոչ թե պլանների կատարման, ինչպես սովորաբար արվում է, այլ ղեկավարման լենինյան ոճի կիրառման տեսանկյունով։ Այդպիսի հարցեր հարկավոր է քննարկել ոչ միայն սկզբնական պարտիական կազմակերպություններում, այլև շրջկոմների բյուրոներում ու պլենումներում, որով լրջորեն կօգնենք ղեկավար աշխատողներին։ Այդ և մյուս միջոցառումների իրագործմամբ պետք է հասնել այն բանին, որ բոլոր ղեկավար աշխատողները, մեծ թե փոքր, ոչ միայն տիրապետեն ղեկավարման անհրաժեշտ գիտելիքների, այլև մարդկանց հետ, կոլեկտիվի հետ իրենց ամենօրյա աշխատանքում հետևողականորեն կենսագործեն կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, աշխատանքի լենինյան ոճը։

Իսկ ի՞նչ է նշանակում արմատավորել աշխատանքի լենինյան ոճը։ Դա նշանակում է՝ երբեք և ոչ մի դեպքում չգոռոզանալ և սովորել կյանքից, մասսաներից, գրքերից։ Իսկ համեստ ղեկավարը հաստատ գիտե, որ մարդու մեծագույն արժանիքը նրա խելքն է, լուրջ և հիմնավոր գիտելիքները, ժողովրդի բարօրությունը հոժարակամ և անշահախնդիր ծառայելը։ Լենինյան տիպի գործիչը ձեռներեց է և անտարբերության ու շաղակրատանքի թշնամի, թերությունների հանդեպ անհաշտ, մարդկանց թուլությունները հար շտկելու տրամադիր։ Կարգապահությամբ լինելով օրինակելի, նա օբյեկտիվ է իր դատողությունների մեջ և նորի, առաջավորի ջերմ պաշտպան։ Մերժելով և վանելով սնոտիմենտալությունը, քաղքենիությունը, լենինյան ոճի աշխատողը գիտի հակահարված տալ այն ամենին, ինչ խանգարում է կոմունիզմի կառուցման գործին. պայքարում նա անխոնջ է և սկզբունքային։

Մեր խնդիրն է մնացած բոլոր հավասար պայմաններում, ղեկավար կադրերի ընտրության ժամանակ անվերապահորեն առաջնություն տալ նրանց, որոնք ունեն պարտիականության բարձր զգացում։ Սա չափազանց կարևոր հանգամանք է, որը, դժբախտաբար, պարտիական կազմակերպությունները, շրջանային կոմիտեներն ու քաղկոմը երբեմն հաշվի չեն առնում և ղեկավար աշխատանքի են հաստատում այնպիսի մարդկանց, որոնք զուրկ են պարտիական ու պետական զգացումից։ Այդպիսի մարդիկ մեծ վնաս են հասցնում ընդհանուր գործին։

Ահա մեկ օրինակ քաղաքի 26 կոմիսարների պարտշրջկոմի գործունեությունից։ ԺՏԽ-ի բամբակագործվածքային ֆաբրիկայի թույլ, ապաշնորհ դիրեկտոր Ս. Երզնկյանի մասին պարտիայի շրջկոմը չորս անգամ ոչինչ չպարտավո-

րեցնող և հաշտվողական որոշում է ընդունել, որով փաստորեն ընթացել է վատ դիրեկտորի հետքերով։ Այդպիսի անողնաշար որոշում է հանել նաև պարտիական-պետական վերահսկողության շրջանային կոմիտեն։

Վատն այն է, որ մեր մի շարք ղեկավարների աշխատանքի ոճն է դարձել՝ ամեն ինչ անել, միայն թե տեղիք չտալ, որ իրենց մասին բողոքներ գրեն վերադաս կազմակերպություններին։ Աշխատանքի այդպիսի ոճը հանգեցնում է այն բանին, որ նրանք չեն ցուցաբերում համարձակություն, վճռականություն, չի երևում նրանց դեմքը, անգամ գործարքի մեջ են մտնում իրենց խղճի հետ, աշխատողի երեսին մի բան են ասում, բացակայությամբ՝ այլ բան։

Ինչպես սկզբնական պարտիական կազմակերպությունները, այնպես էլ պարտիայի շրջկոմներն ու քաղկոմը պետք է մշտապես ուշադրություն դարձնեն, որ ղեկավար աշխատողները միշտ անաղարտ պահեն պարտիական կյանքի լենինյան նորմերը։ Երբ ղեկավարը ցուցաբերում է անսկզբունքայնություն, անվճռականություն, երկերեսանիություն կամ աչքակապություն, ապա դա միայն նրա անձնական գործը չէ, որին մենք կարող ենք և՛ միջամտել, և՛ չմիջամտել։ Ղեկավարի վարքագիծը պարտիական և պետական գործում է մարմնանում, և մենք պարտավոր ենք միջամտելու, ճիշտ գնահատական տալու այդ գործին։ Քաղաքային և շրջանային կոմիտեներն այս կամ այն առիթով անդրադառնալով սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեությանը, ցույց տալով եղած թերություններն ու դրական աշխատանքը, մոռացության են տալիս հիմնական, կարևոր հարցերից մեկը՝ ղեկավար կադրերի հետ տարվող դաստիարակչական աշխատանքը։

Շրջանային կոմիտեները ղեկավար կադրերից պետք է պահանջեն բարձր կարգապահություն: Առանց պարտիական-պետական խստագույն կարգապահության խոսք անգամ չի կարող լինել ժողովրդական տնտեսության կառավարման մասին։ Նրանք պետք է պատասխանատվության ենթարկեն այն ղեկավարներին, որոնք չարաշահում են պարտիայի և կոլեկտիվի վստահությունը, ղեկավար պաշտոնի մեջ տեսնում են միայն իրենց բարեկեցությունը, բարձր աշխատավարձը, որոշակի արտոնությունները, իրավունքները, սակայն ոչ պարտականությունները։ Այս կարգի ղեկավարները ոչ միայն վարկաբեկում են իրենց, այլև վարկաբեկում են ղեկավարի հասկացողությունը ինչպես կոլեկտիվի աչքում, այնպես էլ շրջապատում։

Պարտիայի շրջկոմները, պարտիական ապարատի աշխատողները պետք է քաջատեղյակ լինեն պարտիական կազմակերպություններում տիրող վիճակին, բոլոր դեպքերում սկզբունքայնություն ու անհանդուրժողականություն ցուցաբերեն նրանց նկատմամբ, ովքեր չարաշահում են իրենց պաշտոնը և աշխատանքում կամայականություն ցուցաբերում։ Ավելին, պարտիայի շրջկոմները պետք է հետևեն, որ գործը տապալած, վարկաբեկված և պետությանը վնաս հասցրած առանձին մարդիկ նորից չխցկվեն ղեկավար աշխատանքում:

Քաղաքի աշխատավորությունը պարտիական կազմակերպություններից դժգոհ է առևտրում տեղ գտած լուրջ թերությունների համար։ Դրա հիմնական պատճառը պետք է փնտրել կադրերի ընտրության և դաստիարակության հարցում պարտիական կազմակերպությունների, շրջանային կոմիտեների և քաղաքային կոմիտեի անբավարար պահանջկոտության և հաշտվողականության մեջ։ Իհարկե, կան նաև ուրիշ պատճառներ։ Այսպես. պարտիական և սովետական առանձին կազմակերպություններում չկա համապատասխան, ճիշտ վե-



րաբերմունք դեպի առևտուրը։ Նույնիսկ որոշակիորեն թերագնահատվում է առևտրի աշխատողների կատարած գործը։ Մի շարք ընկերներ չգիտեն, չեն պատկերացնում առևտրի բացառիկ դժվարությունները։ Ավելին, նրանք չգիտեն, թե ինչ է կատարվում առևտրի ցանցում։ Ամեն ինչ պատկերացնելով հեշտ ու հասարակ, նրանք կարծում են, թե ամեն մարդ կարող է աշխատել առևտրի բնագավառում։ Վատ է և այն, որ պարտիական և տնտեսական օրգանների կողմից չկա միասնական վերաբերմունք, միասնական գնահատական առևտրի աշխատողների թույլ տված խախտումների և չարաշահումների նկատմամբ։

Մի՞թե նորմալ է, երբ պարտիայի շրջանային կոմիտեներն ու քաղաքային կոմիտեն քիչ են զբաղվել առևտրային կազմակերպությունների պատասխանատվությունը բարձրացնելու հարցերով, որի պատճառով նրանք ինչպես հարկն է չեն զբաղվում առևտրի էկոնոմիկայի, բազաների ստեղծման, ապրանքաշրջանառության բարելավման խնդիրներով։ Ինչի՞ էր նման քաղաքի առևտրական կազմակերպությունների վիճակն անցյալ տարի աշնանը, երբ նույնիսկ ստացված կարտոֆիլը դատարկելու, պահելու ոչ մի հնարավորություն չկար։

Աշխատավորության մատակարարման գործի անբավարար կազմակերպումը այսօրվա պայմաններում խոշոր վնաս է հասցնում նրանց քաղաքական դաստիարակությանը։ Անցել են այն ժամանակները, երբ մարդիկ հանդուրժում էին մեր թերություններն ու պակասը, որոնց համար կային օբյեկտիվ պայմաններ։ Այժմ, երբ առևտրում կան էական թերություններ, ապա դրա գլխավոր պատճառը կադրերն են, մեր անբավարար աշխատանքը։

Անհրաժեշտ է, որ պարտիայի շրջանային կոմիտեներն ու քաղաքային կոմիտեն առաջիկայում լուրջ հետևություններ անեն ստեղծված վիճակից և առևտրի ղեկավար աշխատողների դաստիարակության գործը զուգակցեն նրանց թարմացման, ամրապնդման կարևոր խնդրի հետ։ Հարկավոր է առևտրի սիստեմում ղեկավար աշխատանքի ուղարկված յուրաքանչյուր նոր աշխատողի նկատմամբ ցուցաբերել հոգատարություն, պաշտպանել նրան անհիմն ու անտեղի մեղադրանքներից, պարտական գնահատական տալ այն բոլորի վարքագծին, որոնք գիտակցաբար, թե անգիտակցաբար աննորմալ պայմաններ են ստեղծում նրա աշխատանքի համար։

Պարտիական կազմակերպությունների պահանջկոտության բացակայության արդյունք է նաև այն, որ մայրաքաղաքի որոշ ձեռնարկություններում տարիներ շարունակ ձախողվում է պետական պլանային առաջադրանքների կատարումը, թույլ են տրվում միանգամայն չարդարացվող ծախսեր, բացահայտ անտնտեսավարություն։ Այդ ձեռնարկությունների ղեկավարների հարցը բազմիցս քննարկվում է, ժամկետներ են տրվում աշխատանքները կարգավորելու համար։ Չնայած մենք համոզվում ենք, որ տվյալ ղեկավարը չի կարողանում կատարել իր վրա դրված պարտականությունները, մեր քննարկումներից ոչ մի հետևություն չի անում, այնուամենայնիվ, հանդուրժում ենք, որ նա մնա նույն աշխատանքում։ Այդ տեսակետից ակնառու է ավտոպահեստամասերի գործարանի ղեկավարների օրինակը, որոնք 1964 թվականին չկարողացան ապահովել նույնիսկ համախառն արտադրանքի տարեկան պլանի կատարումը։

Զարմանալի է, որ նման վիճակը չի անհանգստացնում ժողտնտխորհի մեքենաշինության և հաստոցաշինության վարչությանը։ Ստացվում է այնպես, որ վարչության ընկերները կարծես թե կոչված են նրա համար, որ մեղմացնեն վիճակը, պատճառաբանություններ գտնեն, պատասխանատվությունից ազա-

տեն ձեռնարկության ապաշնորհ ղեկավարներին: Ի դեպ, պետք է ասել, որ
ժողտնտխորհի որոշ վարչություններում վատ կադրերի մասին ոչ միայն
չեն ասում իրենց սկզբունքային խոսքը, այլև առանձին դեպքերում ուղղակի
հովանավորության տակ են վերցնում նրանց, առանց մտածելու, որ դրանով
խիստ վնասում են կադրերի դաստիարակությանը: Այսպես, ժողտնտխորհի
գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության վարչության
պետ ընկ. Վ. Կորոտկովը և նրա տեղակալ ընկ. Ա. Բաբայանը գտնելով, որ
«Երքաղմասի» կառավարիչ Վ. Սարգսյանը անտնտեսավարության, ֆինան-
սական կարգապահության կոպիտ խախտումների, հանցագործ տարրերին հո-
վանավորելու համար պարտիական օրգանների կողմից հանված է աշխա-
տանքից, նրան նշանակում են ավելի բարձր աշխատանքի և բազմաթիվ ահա-
զանգումներից հետո անգամ չեն շտկում իրենց թույլ տված սխալը:

Մի այլ օրինակ ևս.

Դեռևս 1952 թ. փետրվարին թեթև արդյունաբերության մինիստրության
կոլեգիայի որոշմամբ, պաշտոնական դիրքը չարաշահելու համար պլանային
բաժնի վարիչ Մ. Քոչարյանն ազատվում է աշխատանքից: 1953 թ. սկսում է
աշխատել սննդարդյունաբերության մինիստրությունում որպես պլանային
բաժնի վարիչ մինչև 1957 թ., որից հետո հրավիրվում է ժողտնտխորհի թեթև
արդյունաբերության վարչություն՝ իր նախկին պաշտոնում աշխատելու հա-
մար: Այստեղ նա նորից կապերի մեջ է մտնում հանցագործ տարրերի հետ:

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն քննարկում է այդ հարցը և թեթև արդյունաբերու-
թյան վարչությանը հանձնարարում է Քոչարյանին աշխատանքից ազատել:
Քոչարյանի հարցը պատրաստում են ժողտնտխորհում քննարկելու համար, սա-
կայն վարչությունների բաժինները վերացնելու կապակցությամբ նրա հարցը
չեն քննում, և նա շուտով աշխատանքի է անցնում կենտրոնական ապարատում
որպես սեկտորի վարիչ: Այս անգամ պարտիական կազմակերպությունը նույն-
պես «մոռանում» է Քոչարյանի հարցին անդրադառնալ: Անցած որոշ ժամա-
նակ, ճյուղային վարչություններում նորից վերականգնվում են պլանային
բաժնի վարիչի պաշտոնները, և ահա Քոչարյանը նույն վարչությունում զբա-
ղեցնում է նախկին պաշտոնը: Աշխատանքի ընթացքում նա նորից թույլ է տա-
լիս զանազան չարաշահումներ, որի համար պարտիայի Սպանդարյանի շրջկո-
մը Քոչարյանին հեռացնում է պարտիայից, իսկ գլխավոր ինժեներ Ա. Խազա-
նովին հայտարարում է խիստ նկատողություն՝ գրանցելով անձնական գոր-
ծում: Մի՞թե այս ամենից հետո վարչության պետ Ա. Տոնյանը, նրա տեղակալ
Վ. Հովհաննիսյանը, պարտկազմակերպության նախկին քարտուղար Գ. Մա-
նուկյանը չպետք է այս խայտառակ փաստը քննարկեին սկզբնական պարտ-
կազմակերպության դռնբաց ժողովում, սկզբունքային խոսակցություն ունե-
նային վարչությունում ստեղծված վիճակի մասին և դրանով բարձրացնեին
մյուս աշխատողների պատասխանատվությունը:

Արդյոք այս և նման այլ փաստերը չեն ասում այն մասին, որ ինչ-
պես սկզբնական պարտիական կազմակերպությունները, այնպես էլ շրջանա-
յին կոմիտեներն ու քաղաքային կոմիտեն պահանջվելիք ուշադրություն չեն
դարձնում տնտեսական ղեկավար աշխատողների գաղափարական դաստիարա-
կության վրա:

Ղեկավար աշխատողների դաստիարակության գործում մեծ է քաղաքական
ուսուցման դերը: Քաղաքական ուսուցման միջոցով նրանք ստանում են ան-



հրաժեշտ գիտելիքներ, գաղափարապես աճում են, ճիշտ են կողմնորոշվում
աշխատանքում, միշտ նայում են դեպի առաջ և անձնական օրինակ ցույց տա-
լիս պարտիայի առաջադրած խնդիրները հաջողությամբ լուծելու գործում: Ինչ-
պես մյուս, առավել ևս այս գործում ֆորմալիզմը անթերելի ու դատապարտելի
է: Ամեն մի պարտիական կազմակերպություն պետք է լրջորեն զբաղվի քաղ-
ուսուցման հարցով և հասնի նրան, որ այն իրոք օգնի կադրերի դաստիարակու-
թյանը:

Այս առումով անցյալ տարի պարտիայի քաղաքային կոմիտեն լսեց ֆի-
նանսների մինիստրության պարտիական բյուրոյի հաշվետվությունը: Ուսում-
նասիրությունները և քննարկումը ցույց տվեցին, որ այստեղ վատ կազմակերպ-
ված քաղաքական ուսուցումը ոչնչով չի նպաստում մինիստրության աշխատող-
ների գործունեության մեջ տեղ գտած լուրջ սխալների և թերությունների վե-
րացմանը, համերաշխ միասնական կոլեկտիվի ստեղծմանը:

Քաղաքական ուսուցման նշանակությունն է՛լ ավելի է բարձրանում, եթե
նկատի ունենանք, որ վերջին տարիների ընթացքում պարտիական և տնտեսա-
կան ղեկավար աշխատողների կազմը որոշակիորեն համալրվել է նոր մարդ-
կանցով, որոնց մի մասի գաղափարական-տեսական պաշարը դեռևս անբա-
վարար է: Տարվելով ամենօրյա աշխատանքով, ոմանք բավարարվում են այն
գիտելիքներով, ինչ տարիներ առաջ ձեռք են բերել բարձրագույն ուսումնա-
կան հաստատություններում: Մինչդեռ կյանքն առաջ է գնում և չի կարելի նույն
կետում կանգնած մնալ:

Պրակտիկան ցույց է տալիս, որ այն սկզբնական պարտիական կազմա-
կերպությունում, որտեղ քաղաքական ուսուցումը չի թողնված ինքնահոսի, որ-
տեղ պարտիական կազմակերպությունը ղեկավարների քաղաքական մակար-
դակի բարձրացումը համարում է իր սեփական, պարտիական գործը, և ոչ թե
ղեկավարի անձնականին վերաբերող հարց, այնտեղ քաղաքական ուսուցումը
մեծապես օգնում է ղեկավարների գաղափարական-քաղաքական դաստիարա-
կությանը և տալիս է գոհացուցիչ արդյունք: Սակայն չենք կարող չնշել, որ
վերջին ժամանակներում առանձին պարտիական կազմակերպություններ ու
շրջկոմներ, տարվելով տնտեսությամբ, թուլացրել են գաղափարական աշխա-
տանքը: Բայց տնտեսական գործունեությամբ սիստեմատիկաբար զբաղվելը
երբեք էլ չի նշանակում աչքաթող անել գաղափարական աշխատանքը: Ցա-
վոք, այդպես են վարվել Շահումյանի շրջանի պարտիական կազմակերպու-
թյունների մի մասը, որոնց քաղխմբակների ու սեմինարների պարապմունք-
ներն ընթանում են գաղափարական ցածր մակարդակով: Դա ցուցահանում է
պարտիայի շրջանային կոմիտեի թերությունը. հանգստանալով անցյալ տար-
վա հաջողություններով, այս տարի նա լուրջ աշխատանք չի կատարել պար-
տիական լուսավորության ցանցի գործունեությունը բարձր մակարդակի վրա
դնելու համար:

Երևանի բոլոր սկզբնական կազմակերպությունների, շրջկոմների ու քաղ-
կոմի խնդիրն է՝ հետևողական և սիստեմատիկ աշխատանք տանել ղեկավար
կադրերի գաղափարական դաստիարակության գործը արմատապես բարելա-
վելու, նրանց մարքսիզմ-լենինիզմով զինելու համար: Դա մեր պարտիայի
ծրագրի պահանջներից մեկն է, որը պետք է կատարվի ամենայն բարեխղճու-
թյամբ ու հետևողականությամբ:

Ղեկավար կադրերի դաստիարակության գործում լուրջ նշանակություն

տնի նրանց այնպիսի հատկություններով տոգորելը, ինչպիսիք են՝ ճշմարտասիրությունը, ազնվությունը, կատարված աշխատանքի օբյեկտիվ գնահատումը, քննադատության ու ինքնաքննադատության ծավալումը, թերությունների և սխալների համարձակ բացահայտումն ու վերացումը: Հարցի այս կողմերին որոշ պարտիական կազմակերպություններ հարկ եղած ուշադրություն չեն նվիրում և երբեմն կանգնում են տխուր վիճակի առջև:

Քիչ չեն դեպքերը, երբ որևէ ձեռնարկություն որոշ ժամանակ բավարար ցուցանիշներ է ունենում, պարտիական ու սովետական տեղական օրգանները սկսում են տվյալ ձեռնարկության գործերի վիճակի մասին միայն լավն ասել, անհարկի գովեստներ շռայլել և մեկ էլ հանկարծ պարզվում է, որ եղած կարծիքը խաբուսիկ է, ճշմարտությունը բոլորովին այլ է: Մի՞թե պարզ չէ, որ անտեղի գովեստներ շռայլելը, սխալների ու թերությունների առկայության դեպքում լռելը, օբյեկտիվորեն նշանակում է հովանավորել վատ աշխատողին: Նման մոտեցման դեպքում վատ աշխատողը չի դաստիարակվում, ինքնաքննադատաբար չի վերլուծում իր կատարած աշխատանքը, որի հետևանքով էլ հետզհետե թերությունները խորանում են ու նրան կանգնեցնում անելանելի վիճակի առջև: Այդպես պատահեց, օրինակ, ֆրեզերային հաստոցների գործարանի դիրեկտոր Հ. Զաքարյանի հետ: Նրան անհիմն կերպով գովեցին պարտշրջկոմի պլենումում, բայց հետո պարզվեց, որ նա դեռ արժանի չէր այդ գովեստին:

Պարտիայի քաղկոմն ու շրջկոմները ղեկավար աշխատողների գնահատման, նրանց շուրջը հասարակական կարծիքի ստեղծման հարցերում պետք է ցուցաբերեն մեծ զգուշություն և օբյեկտիվություն: Չի կարելի հանդուրժել ո՛չ լավ աշխատողին անտեղի, առանց պատճառի պախարակելը, պատժելը, ո՛չ էլ արժանիքներ չունեցողին՝ գովաբանելը: Դժբախտաբար ոչ բոլոր դեպքերում ենք այսպես վարվում, կադրերի նկատմամբ օբյեկտիվ վերաբերմունք ցուցաբերում:

Շրջանային սովետների որոշ ղեկավար աշխատողներ, չարաշահելով իրենց իրավունքներն ու հնարավորությունները, երբեմն անօրինական գործարքներ են կատարում (26 կոմիսարների շրջսովետի գործկոմի նախագահի նախկին տեղակալ ընկ. Կ. Թադևոսյան, Օրջոնիկիձեի շրջսովետի բնակարանային տնտեսության վարչության պետ ընկ. Ս. Պապոյան), իսկ պարտիայի շրջկոմները անհրաժեշտ սկզբունքայնություն հանդես չեն բերում նման մարդկանց նկատմամբ:

Այսպիսով, ինչպես ցույց է տալիս իրականությունը, ներկա ժամանակաշրջանում բավականին բարդ գործ է ղեկավար կադրերի գաղափարական-քաղաքական դաստիարակությունը: Նոր մարդու ձևավորման երկարատև պրոցեսն ավելի քան պատասխանատու է դարձնում ղեկավար կադրերի ինքնակըրթության և ինքնազարգացման սիստեմատիկ կազմակերպման գործը: Սակայն այստեղ հարցը միայն չի սպառվում ղեկավար աշխատողների մտավոր զարգացման ապահովմամբ: Ոչ պակաս կարևոր է անձնական օրինակը: Երբ ղեկավար աշխատողն իր գործունեությամբ և վարվեցողությամբ դրական օրինակ չի ծառայում շրջապատի մարդկանց համար, ապա նրա մտավոր պաշարը չի կարող իրեն հեղինակություն ապահովել:

Այստեղից հետևում է, որ ղեկավար կադրերը դաստիարակելով աշխատավորներին կոմունիստական ոգով, իրենք ևս պետք է դաստիարակված լինեն:



Բայց այդ դաստիարակության պրոցեսն անընդհատ է, տևական և պահանջում է համառ աշխատանք: Բանն այն է, որ այս բնագավառում տեղ գտած կամպանիական ոճը մեծապես խանգարում է մարդկանց նորմալ զարգացման և դաստիարակության գործին: Մարդկանց գաղափարական-քաղաքական դաստիարակությունը պետք է զուգորդված լինի տվյալ կոլեկտիվի ամենօրյա աշխատանքային-հասարակական գործունեության հետ: Նույնիսկ ղեկավարի և իր ենթակաների սովորական աննշան խոսակցությունն իր մեջ պարունակում է դաստիարակության տարրեր, մի հանգամանք, որը, դժբախտաբար, հաճախ չեն նկատում որոշ ղեկավար ընկերներ: Պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ժողովները, զանազան հավաքները, պլենումներն ու կոնֆերանսները այն ոլորտներն են, որտեղ մարդիկ անպայման դաստիարակվում են: Հետևաբար դրանց մտածված և նպատակահարմար կազմակերպումը զգալիորեն կնպաստի մեր կադրերի գաղափարական մակարդակի բարձրացմանը:

Ամբողջ դժվարությունն այն է, որ ղեկավար կադրերը, որոնք կոչված են գաղափարապես և քաղաքականապես դաստիարակելու մարդկանց, իրենք ևս պետք է դաստիարակվեն կյանքի ընթացքում: Սա ղեկավարներից պահանջում է ճիգերի կրկնակի լարում և մանկավարժական մեթոդների խելոք կիրառում:

Փաստերը ցույց են տալիս, որ ղեկավար կադրերի ընտրության ու դաստիարակության ուղղությամբ Երևանի պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ լուրջ թերություններ ու բացեր կան, որոնց վերացման համար Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմն ընդունել էր համապատասխան որոշում: Օրերս քաղկոմի պլենումը ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշման տեսանկյունով հանգամանորեն քննության առավ այդ հարցը և կոնկրետ միջոցառումներ նշեց եղած թերություններն ու սխալները վերացնելու համար: Մնում է, որ Երևանի սկզբնական պարտիական կազմակերպություններն ու շրջկոմները մինչև վերջ կենսագործեն ՀԿՊ Կենտկոմի որոշումն ու քաղկոմի պլենումի նշած միջոցառումները և արմատապես բարելավեն բոլոր ղեկավար կադրերի գաղափարական՝ դաստիարակության գործը: Դա մեր առաջնահերթ անելիքներից մեկն է, որը մշտապես պետք է դրված լինի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:



Լ. ՎԱԼԵՍՅԱՆ

Աշխարհագրական գիտությունների թեկնածու

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՑՄԱՆ ՇՈՒՐՋԸ[1]

*Արտադրողական ուժերի ճիշտ տեղաբաշխումը արտադրության զարգացման կարևորագույն պրոբլեմներից մեկն է։ Այն սերտորեն կապված է այնպիսի հարցերի լուծման հետ, ինչպիսիք են՝ հասարակական աշխատանքի արտադրողականության անշեղ վերելքի ապահովումը, արտադրության տերիտորիալ ճիշտ համամասնությունների հաստատումը երկրի ներսում, միջշրջանային տնտեսական կապերի ռացիոնալացումը, նոր բնական ռեսուրսների ներգրավումը հասարակական արտադրության ոլորտում։ Այն անմիջականորեն առնչվում է ետ մնացող շրջանների արդյունաբերական զարգացման և քաղաքի ու գյուղի միջև էական տարբերությունների վերացման պրոբլեմի հետ և դրանով իսկ ստանում նաև քաղաքական նշանակություն։*

*Արտադրության տերիտորիալ կազմակերպման, ժողովրդական տնտեսության ճյուղերի ճիշտ տեղաբաշխման հարցերը նոր նշանակություն են ձեռք բերում կոմունիստական շինարարության ներկա էտապում, երբ սովետական ժողովրդի ջանքերն ուղղված են մի այնպիսի տնտեսության ստեղծման, ուր, ինչպես պարտիայի ծրագրում է ասված՝ «բոլոր արտադրական բջիջները, բոլոր ինքնավար ասոցիացիաները ներդաշնակորեն միավորված կլինեն մեկ ընդհանուր պլանաչափ կազմակերպված տնտեսության մեջ, հասարակական աշխատանքի մեկ միասնական ռիթմի մեջ» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, Երևան, 1962, էջ 486)։*

*Արտադրության տերիտորիալ կազմակերպումը պլանային տնտեսության պայմաններում անհնար է առանց գիտականորեն հիմնավորված տնտեսական շրջանացման, որի էությունը աշխատանքի հասարակական տերիտորիալ բաժանման հետևանքով ծագած և օբյեկտիվորեն գոյություն ունեցող որոշակի շրջանների՝ արտադրողական ուժերի տարբեր մասշտաբի տերիտորիալ զուգորդումների առանձնացումն է։ Տնտեսական շրջանացումն օգնում է որոշակի, գիտականորեն հիմնավորված սիստեմով ուսումնասիրելու այդ զուգորդումները, ճանաչելու դրանք, բացահայտելու և գնահատելու տերիտորիաների բնական, դեմոգրաֆիական ու տեխնիկա-տնտեսական պոտենցիալ հնարավորությունները, ինչպես նաև կանխորոշելու և ղեկավարելու ամեն մի շրջանի տնտեսական զարգացումն ու մասնագիտացումը։*

*Տնտեսական շրջանացումը արտադրության տերիտորիալ կազմակերպման ու տնտեսության պլանավորման մի մեթոդ է, որի նշանակությունն աճում է երկրի արտադրողական ուժերի զարգացման, նրանց բարդացման համապատասխան։ Երկրի ժողովրդական տնտեսության պլանավորման գոյություն ունեցող պրակտիկայում այդ մեթոդի կիրառումը սահմանափակվում է միայն ՍՍՌՄ տնտեսական շրջաններով ու միութենական ռեսպուբլիկաներով։ Ավելի փոքր տերիտորիալ միավորները դուրս են մնում նրա ոլորտից։ Այնինչ, կասկածից վեր է, որ մարզային բաժանում չունեցող ռեսպուբլիկաների, դրանց թվում և Հայկական ՍՍՌ-ի, ժողովրդատնտեսական պլանների շրջանային մասի ուժեղացումը, նրա հատուկ մշակումը կարող են միայն ամրապնդել այդ պլանների օբյեկտիվ հիմքը, ուժեղացնել նրանց կոմպլեքսայնությունը, հետևապես և բարձրացնել արտադրողական ուժերի տեղաբաշխման գիտականությունը։*

*Հարց է ծագում, ո՞ր տերիտորիալ միավորները կարող են հիմք ծառայել ժողովրդատնտեսական պլանների շրջանային մասի համար։ Վարչա-տերիտորիալ բաժանման միավորները (առ 1-ը հունվարի 1965 թ. դրանց թիվը հասնում է 42-ի, այդ թվում՝ 33 գյուղական վարչական շրջաններ և 9 ռեսպուբլիկական ենթակայության քաղաքներ) հարմար չեն դրա համար։ Նրանք իրագործում են պետական օպերատիվ ղեկավարման որոշակի ֆունկցիաներ և չունեն տնտեսական համապատասխան հզորություն՝ ռեսպուբլիկական մասշտաբի շատ թե քիչ խոշոր միջոցառումներ իրականացնելու համար։*

*Ժողովրդական տնտեսության պլանավորման տերիտորիալ միավորներ կարող են լինել ռեսպուբլիկական տնտեսական շրջանները, որոնք առաջացել են աշխատանքի հասարակական տերիտորիալ բաժանման որոշակի էտապում և ներկայումս ապրում են նոր, բուռն զարգացում։ Այդ իսկ պատճառով այդ շրջանների հայտնաբերումը, դրանց բնական ու տնտեսական պոտենցիալի բացահայտումը, ընդհանուր իմացական նշանակությունից բացի, պետք է ունենան գործնական, կիրառական նշանակություն և ելնեն արտադրողական ուժերի տերիտորիալ տեղաբաշխման կատարելագործման ու բարելավման շահերից[1]։*

*Ռեսպուբլիկայի ընդհանուր տնտեսական շրջանացման պրոբլեմի լուծմանը շատ բանով կարող են նպաստել ճյուղային շրջանացման աշխատանքները։ Ի տարբերություն ընդհանուր տնտեսական շրջանացման, երբ տերիտորիաների գնահատման հարցում դրսևորվում է կոմպլեքսային մոտեցում, ճյուղային շրջանացման նպատակը մասնակի հարցերի լուծումն է՝ հաշվի առնելով առանձին ճյուղերի զարգացման օրինաչափությունները (գյուղատնտեսություն, տրանսպորտ, քաղաքաշինարարություն, առևտուր և այլն)։ Սրանք չփոխարինելով ընդհանուր տնտեսական շրջանացմանը, հարուստ նյութ կարող են տալ նրա հաջող մշակման համար։ Վերջինս էլ, իր հերթին, կարող է օգնել ճյուղային շրջանացման բազմաթիվ հարցերի ճիշտ լուծմանը։ Կարևոր է ընդհանուր ֆիզիկա-աշխարհագրական ու բնության առանձին տարրերի շրջանացման օգտագործումը։ Սա օգնում է, հատկապես, տնտեսական շրջանների բնական պոտենցիալի ճիշտ գնահատմանը։*

*Որոնք են այն հատկանիշները, որոնց հիման վրա կատարվող շրջանա-*

---

1 Տպագրում ենք առաջարկության կարգով։—Խմբ.

*[1] Հայկական ՍՍՌ տնտեսական շրջանացման՝ հրապարակի վրա եղած տարբերակներից հիշատակենք Գ. Ա. Քոչարյանի (1929 թ.), տնտեսագիտության ինստիտուտի մի խումբ աշխատակիցների (1955 թ.), Գ. Ա. Քոչարյանի (1956 թ.), Ս. Ի. Խրիմլյանի (1957 թ.), Հայկական ՍՍՌ ատլասի խմբագրական հանձնաժողովի (1961 թ.) առաջարկած սխեմաները։*

ցումը կարող է, մեր կարծիքով, ծառայել նաև արտադրողական ուժերի տե-
ղաբաշխման հեռանկարային պլանավորման գործին։
Ամեն մի տերիտորիա պետք է դիտվի որպես ռեսպուբլիկական տնտեսա-
կան շրջան, եթե բավարարում է (ներկայումս կամ մոտ ապագայում) հետևյալ
պահանջներին։
1. Ունի տերիտորիայի կազմակերպող տնտեսական կորիզի դեր կատարող
բավարար հզորության արդյունաբերական կենտրոն։ Վերջինս կարող է լինել
արդյունաբերական խոշոր քաղաք կամ մի քանի քաղաքներ միացնող արդյու-
նաբերական հանգույց։ Հայկական ռեսպուբլիկայի զարգացման ներկա էտա-
պում բնորոշ է արտադրության տեղաբաշխման ավելի հասուն ձևի՝ արդյունա-
բերական հանգույցների զարգացումը։ Դրանք էլ հենց հանդես են գալիս որ-
պես շրջանագոյացնող կարևոր գործոն։ Ներկայումս ռեսպուբլիկայում կա-
րելի է առանձնացնել զարգացման բավարար մակարդակի հասած կամ ձևա-
վորման սկզբնական փուլում գտնվող հետևյալ 6 արդյունաբերական հանգույց-
ները՝ Երևանի, Լենինական—Արթիկի, Կիրովականի, Ալավերդու, Հրազդան—
Սևանի, Ղափան—Քաջարանի։
2. Ունի համեմատաբար միասնական արտադրական մասնագիտացում։
Մեր լեռնային ռեսպուբլիկայում բնական պայմանների ու ռեսուրսների խիստ
բազմազանությունը դժվարացնում է համեմատաբար ընդարձակ տարածու-
թյունների միատեսակ արտադրական մասնագիտացումը՝ ստեղծելով որոշակի
խայտաբղետություն։ Արտադրական ընդհանուր մասնագիտացումը տնտեսա-
կան շրջանի այն հատկանիշներից է, որոնց հետագա զարգացմանը պետք է
նախորդի հասարակական աշխատանքի տնտեսման և ամբողջ ռեսպուբլիկայի
տնտեսական զարգացման շահերի հաշվառման վրա կառուցված լուրջ գիտա-
կան հիմնավորումը։ Այսպիսով, տնտեսական շրջանացումը պետք է ո՛չ միայն
արձանագրի տերիտորիաների արտադրական մասնագիտացման ձեռք բերած
մակարդակը, այլև բացահայտի դրա բարելավման ու նպատակահարմար զար-
գացման ուղղությունները ու հնարավորությունները։
3. Տնտեսական շրջանում պետք է առկա լինեն զարգացման բավարար
մակարդակի հասած ներքին տնտեսական կապեր։ Եթե արտաքին տնտեսական
կապերը տնտեսական շրջանների միջև աշխատանքի որոշակի բաժանման,
նրանց ռեսպուբլիկական կամ միութենական մասշտաբի մասնագիտացման
արգասիք են, ապա ներշրջանային տնտեսական կապերը արդյունք են շրջանի
կոմպլեքսային զարգացման։ Սակայն ռեսպուբլիկական տնտեսական շրջանի
կոմպլեքսային զարգացումը թե՛ քանակապես և թե՛ որակապես տարբերվում
է ՍՍՌՄ տնտեսական շրջանի կոմպլեքսային զարգացումից։ Իր բնական ու
տնտեսական ռեսուրսների սահմանափակության պատճառով այն չի կարող
հիմնական արտադրանքների գծով բավարարել իր սեփական կարիքը, որպիսի
պահանջ դրվում է ՍՍՌՄ տնտեսական շրջանի առաջ։ Բացի այդ, վերջինս
իրենից ներկայացնում է միութենական մասշտաբի տերիտորիալ-արտադրա-
կան կոմպլեքս և ընդգրկում է ժամանակակից արտադրության բոլոր հիմնա-
կան ճյուղերը։ Ռեսպուբլիկական շրջանի արտադրության ճյուղերը շատ ավելի
սակավաթիվ են։ Ընդ որում, դրանց մեծ մասը կոչված է սպասարկելու այն
1—2 արտադրությունը կամ ճյուղը, որոնք բնորոշում են տնտեսական շրջանի
մասնագիտացումը ռեսպուբլիկայում։ Այս իմաստով էլ ռեսպուբլիկական
տնտեսական շրջանի ներքին տնտեսական կապերը հիմնականում կարող են



ունենալ միջճյուղային ու, հատկապես, ներճյուղային արտադրական կոոպե-
րացիայի բնույթ։
4. Տնտեսական շրջանը պետք է ունենա շատ թե քիչ միասնական տրանս-
պորտային կողմնորոշում և ամբողջական տրանսպորտային ցանց, որը կարող
է ապահովել, մասնավորապես, շրջանի ծայրամասերի ու տնտեսական կենտ-
րոնի կապը։ Մեր ռեսպուբլիկայի լեռնային բարդ պայմաններում տրանսպոր-
տի շրջանագոյացնող դերը առանձնակի ուժով է արտահայտվում։ Ճանապար-
հային ցանցի, առաջին հայացքից նույնիսկ ոչ մեծ թվացող, լրացումը և փո-
փոխությունը կարող են զգալի հետքեր թողնել տնտեսական շրջանի կազմի,
սահմանների, արտադրական մասնագիտացման վրա։ Ուստի և տնտեսական
շրջանացում կատարելիս, ինչպես և արտադրողական ուժերի զարգացումն ու
տեղաբաշխումը պլանավորելիս այս հարցերն արժանի են հատուկ ուշադրու-
թյան։
5. Տնտեսական շրջանը պետք է ունենա ռեսպուբլիկական նշանակության
ժողովրդատնտեսական կոնկրետ պրոբլեմ, որը զարգացման տվյալ էտապում
ընդհանուր է շրջանի բոլոր տերիտորիաների կամ նրանց մեծ մասի համար։
Թե՛ ժամանակի և թե տարածական առումով, որպես կանոն, ժողովրդատնտե-
սական կոնկրետ պրոբլեմները փոխում են իրենց ծավալն ու նշանակությունը,
ներթափանցում իրար մեջ։ Այս հանգամանքը դժվարացնում է որոշել, թե
տվյալ տերիտորիայի համար զարգացման տվյալ էտապում որն է ժողովր-
դատնտեսական գլխավոր պրոբլեմը։ Բայց այդպիսի պրոբլեմի բացահայտումը
ավելի հիմնավորված է դարձնում տնտեսական շրջանացումը, հետևապես
և բարձրացնում է նրա գիտական ու գործնական նշանակությունը։
Հայկական ՍՍՌ բնական ռեսուրսների առանձնահատկությունների, տնտե-
սության տեղաբաշխման ու նրա հեռանկարային զարգացման կարևոր պրոբ-
լեմների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ռեսպուբլիկայի զարգացման
ներկա էտապում օբյեկտիվորեն գոյություն ունեն և զարգանում են ռեսպուբ-
լիկական մասշտաբի տերիտորիալ-արտադրական 5 կոմպլեքսներ, որոնք
իրենցից ներկայացնում են ռեսպուբլիկական ընդհանուր տնտեսական շրջան-
ներ։ Դրանք են՝ 1. Արարատյան, 2. Շիրակի, 3. Մերձդեբեդյան, 4. Սևան-
Աղստևի և 5. Զանգեզուրի տնտեսական շրջանները։
Եթե տնտեսական շրջանի առկայության հաստատման կամ ժխտման հիմք
են ծառայում վերոհիշյալ գլխավոր հատկանիշներն ու սկզբունքները, ապա
նրա սահմանների կոնկրետացման ու ճշտման համար հարկ է լինում գործ
ունենալ շատ ավելի մեծաթիվ, չնայած պակաս էական, գործոնների հետ։
Հայկական ՍՍՌ-ի՝ որպես լեռնային երկրի համար առաջնակարգ նշանա-
կություն ունի լեռնագրությունը, որը պայմանավորվում է արտադրության
բնական հիմքի՝ բնական պայմանների բազմազանությամբ։ Ռեսպուբլիկայի
տնտեսական շրջանների համար ընդհանուրն այն է, որ տնտեսությունը հիմ-
նականում կենտրոնացված է միջլեռնային գոգավորությունների ու լեռնահո-
վիտների ցածրավայրային գոտում։ Նրան հաջորդող միջին լեռնային գոտում
արտադրության խտությունը նկատելիորեն իջնում է, իսկ բարձր լեռնային
գոտում արդեն (ծովի մակարդակից 2500 մ. բարձր) լեռնաշղթաների մերձ-
կատարային ընդարձակ տարածությունները ամբողջովին յուրացված չեն կամ
օգտագործվում են տարվա մի քանի ամիսներին միայն։ Դրանք ռեսպուբլի-
կայի առավել դժվարամատչելի մասերն են և իրենցից ներկայացնում են յու-

րահատուկ տնտեսական «սպիտակ բծեր»: Սահմանազատելով բնակչության
արտադրական գործունեության գլխավոր կենտրոնները՝ հովտային շրջանները,
կանխորոշելով ճանապարհային ցանցի հիմնական կոնտուրները, այդ «սպիտակ
բծերն» էլ հենց, մեծ մասամբ, հանդիսանում են տնտեսական շրջանների սահ-
մանները:
Սոցիալիստական տնտեսության պայմաններում տնտեսական շրջանաց-
ման և վարչա-տերիտորիալ բաժանման միասնությունը ենթադրում է, որ
նրանց տերիտորիալ միավորների սահմանները պետք է ոչ թե հատեն միմյանց,
այլ համընկնեն: Այդ նպատակահարմար է, քանի որ տնտեսության ստորին
օղակների վարչական ղեկավարումը, ինչպես նաև պաշտոնական վիճակա-
գրությունը իրականացվում են ըստ վարչական շրջանների:
Հայկական ՍՍՌ տնտեսական շրջանացման առաջարկվող սխեման հիմնա-
կանում հետևում է այս դրույթին. այն երեսուներեք վարչական շրջաններից
միայն երկուսի (Թալին և Ապարան) սահմաններն է հատում: Նյութերի ուսում-
նասիրությունը ցույց է տալիս, որ վերջիններիս տերիտորիաների տրոհման
մասին հարցադրումը բխում է այդ շրջաններում տեղի ունեցած փոփոխու-
թյուններից և արտադրողական ուժերի զարգացման համար ստեղծված նոր
պայմաններից [1]:
Տնտեսական շրջանների սահմանների ճշտման համար էական է տերիտո-
րիայի այս կամ այն հատվածի, այսպես կոչված՝ տնտեսական հարաձգումը
(хозяйственное тяготение), որը բնորոշվում է արտադրական, կուլտուրա-
կան, առևտրական, կենցաղային սպասարկման և այլ կապերով: Հայկական
ՍՍՌ յուրահատուկ պայմաններում, երբ մեկ արդյունաբերական ու կուլտու-
րական կենտրոնի՝ մայրաքաղաքի, բացարձակ գերակշռությունը մնացած տե-
րիտորիաների նկատմամբ ակնհայտ է, անհրաժեշտ է դառնում ներռեսպուբ-
լիկական տնտեսական կապերի գոյություն ունեցող խմբերի մանրամասն
վերլուծությունը: Պարզվում է, որ Երևան քաղաքի տնտեսական դերի համեմատ
նրա և ռեսպուբլիկայի շրջանների ու մյուս քաղաքների միջև ստեղծված կապե-
րը շատ ավելի էական են, բովանդակալից ու բազմազան, քան շրջաններն
իրար միացնող կապերը: Առաջին խումբը ներկայացնող կապերն ընդգրկում
են ռեսպուբլիկայի ամբողջ տերիտորիան, վերածելով այն մի տնտեսական
ամբողջության: Եթե դրանք կոչենք ներռեսպուբլիկական առաջին կարգի տըն-
տեսական կապեր, ապա ռեսպուբլիկայի առանձին մասերում տեղական ֆունկ-
ցիաներ կատարող կապերը կլինեն ներռեսպուբլիկական երկրորդ կարգի կամ
ներշրջանային տնտեսական կապեր: Հենց այս վերջիններս էլ այն կապերն են,
որոնք պետք է հաշվի առնել տնտեսական շրջանների սահմանները որոշելիս:
Հիմք ունենալով տնտեսական շրջանացման վերը քննարկված սկզբունքնե-

1 Թալինի ջրանցքի կառուցման կապակցությամբ Թալինի շրջանի հարավային կեսը (շըր-
ջանի տարածության $1/_3$-ը և բնակչության $1/_{10}$-ը) վերածվում է խաղողագործության ու այ-
գեգործության կենտրոնի: Այդ իմաստով էլ այն Արարատյան դաշտի շարունակությունն է և
խիստ տարբերվում է շրջանի հյուսիսային կեսից: Վերջինս իր արտադրական մասնագիտաց-
մամբ (անասնապահական-հացահատիկային) մտնում է Շիրակի տնտեսական շրջանի մեջ:
Ապարանի շրջանը իր բնական պայմաններով ու տնտեսության մասնագիտացմամբ Շիրակի
շարունակությունն է կազմում, սակայն Ապարանի ջրամբարի, որպես Արարատյան միասնական
ոռոգման սիստեմի մի օղակի, կառուցումը և այդ առնչությամբ ակնկալվող տնտեսական հետև-
վանքները ավելի նպատակահարմար են դարձնում Ապարանի վարչական շրջանը տրոհել Շիրակի
ու Արարատյան տնտեսական շրջանների միջև:



րը՝ այժմ փորձենք հիմնավորել Հայկական ՍՍՌ տնտեսական շրջանները և
տալ դրանց համառոտ բնութագիրը:
Արարատյան տնտեսական շրջան: Առաջատար դիրք է գրավում Հայկա-
կան ՍՍՌ տնտեսության տերիտորիալ կառուցվածքի մեջ և հանդիսանում է
ռեսպուբլիկայի արտադրական կոմպլեքսի կորիզը: Արտադրողական ուժերի
զարգացման մակարդակով ու ծավալով, տնտեսության կառուցվածքի բարդու-
թյամբ ու ավարտվածության աստիճանով նա գերազանցում է մնացած բոլոր
տնտեսական շրջանները [1]:
Շրջանի համար տերիտորիայի կազմակերպչի, շրջանի տնտեսական կորիզի
դեր է կատարում ռեսպուբլիկայի մայրաքաղաքը:
Չնայած շրջանի տնտեսության բարդությանն ու բազմակողմանիությանը,
այն ունի որոշակի արտահայտված ռեսպուբլիկական ու միութենական մասնա-
գիտացում: Հատկանշական է, որ Սովետական Միության աշխատանքի հասա-
րակական տերիտորիալ բաժանման սիստեմում Հայկական ՍՍՌ արտադրա-
կան դեմքը որոշող 6 ճյուղերից (քիմիական արդյունաբերություն, մեքենաշի-
նություն, սնունդի, տեքստիլ-տրիկոտաժ, շինանյութերի արդյունաբերություն և
գունավոր մետալուրգիա) առաջին 4-ը հանդիսանում են Արարատյան տնտե-
սական շրջանի մասնագիտացման ճյուղեր: Այստեղ է կենտրոնացված այդ
ճյուղերի ամբողջ արտադրանքի 60-ից 90 տոկոսը: Զգալի է շրջանի բաժինը
նաև մնացած երկու ճյուղերի գծով:
Զարգացման ներկա փուլում, ինչպես նաև տեսանելի հեռանկարում, շըր-
ջանի համար գլխավոր պրոբլեմներ են՝ ջրամատակարարումը և նոր հողա-
տարածությունների յուրացումը: Առաջին պրոբլեմն ընդգրկում է շրջանի բա-
ցարձակապես բոլոր տերիտորիաները և միատեսակ հետաքրքրություն է ներ-
կայացնում ժողովրդական տնտեսության ջուր սպառող ու ջուր օգտագործող
բոլոր ճյուղերի (գյուղատնտեսության, արդյունաբերության, կոմունալ տնտե-
սության, հիդրոէներգետիկայի, կուրորտային ու սպորտային գործի, բնակ-
չության մասսայական հանգստի կազմակերպման) համար: Սրա կարևոր
բաղկացուցիչ մասերն են հանդիսանում Սևանի պրոբլեմի նոր լուծումը, շրջա-
նի մակերեսային ջրային ռեսուրսների տարածական վերաբաշխումը և նրա
ստորերկրյա ջրային պաշարների ռացիոնալ օգտագործումը:
Նոր տերիտորիաների յուրացումը անմիջականորեն կապված է շրջանի
գյուղատնտեսության արտադրական մասնագիտացման հետագա խորացման
հետ: Յուրացման ենթակա հողատարածություններում՝ Արարատյան գոգավո-
րության ցածրավայրային ու նախալեռնային գոտում լավագույն պայմաններ
կան խաղողագործության, պտղա-բանջարաբուծության հետագա զարգաց-
ման համար: Մասնավորապես նոր հողերի յուրացման հետ է կապված Արա-
րատյան տնտեսական շրջանի այն բացառիկ վիճակը (համեմատած մյուս
շրջանների հետ), երբ քաղաքային բնակչության արագ աճի հետ մեկտեղ տե-

1 Նրան բաժին է ընկնում ռեսպուբլիկայի տարածության միայն 21, բայց բնակչության 47,
արդյունաբերության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների 60 տոկոսը, արդյունաբերա-
կան համախառն արտադրանքի $3/_4$-ը, ոռոգվող հողատարածությունների կեսը, բազմամյա
տնկարկների $3/_4$-ը: Գյուղատնտեսական արտադրանքի գծով նույնպես Արարատյան շրջանը տի-
րապետող դիրք է գրավում ռեսպուբլիկայում: Այստեղ է կենտրոնացված խաղողի այգիների
ընդհանուր տարածության 90, պտղատու այգիների 47 տոկոսը, բանջարաբոստանային կուլտու-
րաների արտադրության 9/10-ը, բամբակի ամբողջ արտադրությունը, շերամի արտադրության
40 տոկոսը:

ղի է ունենում և գյուղական բնակչության զգալի աճ ի հաշիվ հարևան տնտե-
սական շրջանների: Կարևոր է նաև շրջանի հարթավայրային մասում նոր
արդյունաբերական շինարարության սահմանափակումը՝ գյուղատնտեսության
կողմից օգտագործվող հողատարածությունների հետագա կրճատումը կանխելու
նպատակով:
Արարատյան տնտեսական շրջանի զարգացման հիմնական ուղղություն-
ները պայմանավորող բնական ու տնտեսական նախադրյալներից հարկ է նշել
որակյալ բանվորական ուժը, ընդերքի հարուստ ու բազմազան հանքային ռե-
սուրսները, բարձրորակ գյուղատնտեսական հումքը և, վերջապես, արդեն
ստեղծված նյութատեխնիկական արտադրական հզոր բազան: Սրանք այն
ազդակներն են, որոնց շնորհիվ Արարատյան տնտեսական շրջանը դեռ ապա-
գայում էլ պահպանելու և ավելի է ուժեղացնելու իր դիրքերը ռեսպուբլիկայի
թե՛ արդյունաբերական և թե գյուղատնտեսական արտադրության բնագավա-
ռում:
**Շիրակի տնտեսական շրջան:** Իր տնտեսական պոտենցիալով այն երկրորդն
է ռեսպուբլիկայում, բայց շատ է ետ մնում Արարատյան տնտեսական շրջա-
նից[1]: Արտադրության բնական հիմքը՝ բնական պայմաններն ու ռեսուրսները
այստեղ, ռեսպուբլիկայի մյուս տնտեսական շրջանների հետ համեմատած,
ավելի միատարր ու աղքատ են: Արդյունաբերության զարգացման համար
դրանք բավարար բազա չեն կարող լինել: Առաջին պլան են մղվում տնտե-
սական գործոնները, մասնավորապես աշխատանքային ռեսուրսները և տրանս-
պորտային բարենպաստ դիրքը: Շրջանն ապահովված է երկաթուղային ու
խճուղային ճանապարհների բավարար ցանցով, որը նպաստում է նրա ներ-
քին և, հատկապես, արտաքին տնտեսական կապերի զարգացմանը: Աշխա-
տանքային ռեսուրսների համար բնորոշն այն է, որ քաղաքային բնակչության
տեսակարար կշիռը և բնակչության, հատկապես, գյուղատնտեսական բնակ-
չության, զբաղվածության մակարդակը ավելի ցածր են ռեսպուբլիկայի հա-
մապատասխան ցուցանիշներից:
Հիմնականում այս երկու գործոններն են, որ դեպի Շիրակ են ձգում ար-
դյունաբերության մի շարք աշխատատար ճյուղեր և շինանյութերի հարուստ
պաշարների հետ միասին կանխորոշում են նրա ինդուստրիալ զարգացման
ուղղությունը:
Տնտեսության ժամանակակից կառուցվածքի և նրա զարգացման պայ-
մաններից ելնելով Շիրակի տնտեսական շրջանի համար կարելի է առանձ-
նացնել մասնագիտացման հետևյալ ճյուղերը. ունիկալ շինանյութերի արդյու-
նահանում և դրանց մասնակի վերամշակում (պեմզա, պերլիտ, հրաբխային
խարամ, տուֆ), տեքստիլ և տրիկոտաժեղենի արդյունաբերություն, աշխատա-
տար և ոչ մետաղատար մեքենաշինություն, անասնաբուծություն (հյուսիսում՝
կաթնատու, հարավում՝ մսա-բրդատու): Դաշտավարության մեջ ապագայում
էլ իրենց առաջատար նշանակությունը կպահպանեն շաքարի ճակնդեղի ու ցո-
րենի մշակությունը:
Որոշակի արտահայտված արտադրական մասնագիտացումից ու միասնա-

1 Շիրակի տեղը ռեսպուբլիկայում բնութագրվում է հետևյալ ցուցանիշներով՝ ըստ տարա-
ծության՝ 18, բնակչության թվի՝ 17, արդյունաբերության համախառն արտադրանքի՝ ավելի քան
10, ըստ ընդհանուր ցանքատարածությունների, խոշոր ու մանր եղջերավոր անասունների
գլխաքանակի՝ 25, խոտհարքների ու արոտավայրերի տարածության՝ 15 տոկոս:



կան տրանսպորտային հարաձգումից բացի Շիրակի համար կարևոր շրջանա-
գոյացնող գործոն է նաև Լենինական—Արթիկի արդյունաբերական հանգույցը,
որն իր նշանակությամբ երկրորդն է մեր ռեսպուբլիկայում և տնտեսական
առումով ի մի հավաքելով շրջանի բոլոր տերիտորիաները, խոր կնիք է թող-
նում դրանց ինդուստրիալ զարգացման վրա:
**Մերձերեվանյան շրջան:** Ռեսպուբլիկայի տնտեսական շրջանների մեջ իր
տնտեսական հզորությամբ գրավում է միջին տեղ[1]: Տնտեսության բնորոշ
կողմերից մեկն այն է, որ նա ռեսպուբլիկայի տերիտորիալ-արտադրական
կոմպլեքսի հետ արտադրական ավելի սերտ կապերի մեջ է գտնվում, քան
մյուս տնտեսական շրջանները, բացառությամբ Արարատյանի:
Մերձերևանյան տնտեսական շրջանն աչքի է ընկնում նաև զարգացման
բարձր տեմպերով, որի համար բարենպաստ նախադրյալներ են ստեղծում
բնական ռեսուրսների հարուստ կոմպլեքսի առկայությունը և տնտեսա-աշխար-
հագրական, մասնավորապես, տրանսպորտային հարմար դիրքը:
Տնտեսական շրջանի համար կազմակերպող կորիզի դեր են կատարում
Կիրովականի ու Ալավերդու արդյունաբերական հանգույցները, որոնք բացի
այն որ հարևաններ են, ընկած են մեկ ընդհանուր ջրամատակարարման աղ-
բյուրի՝ Դեբեդ գետի մոտ և ունեն էլեկտրաէներգիայի ու բնական գազի մա-
տակարարման միասնական սխեմ: Շրջանի ամբողջ տերիտորիայի նկատ-
մամբ առանցքային դիրք ունի մագիստրալային երկաթուղագիծը, որն իրար է
միացնում նաև նշված արդյունաբերական հանգույցները:
Զարգացման բարձր մակարդակի հասած արտադրական մասնագիտացման
հետագա խորացման համար այստեղ կան ամենաբարենպաստ պայմաններ:
Ապագայում էլ շրջանի ինդուստրիալ դեմքը որոշելու են պղնձի ու քիմիական
արդյունաբերության ճյուղերը: Չնայած դրանք ունեն ավարտվածության
բարձր աստիճանի հասած տեխնոլոգիական ցիկլ, ակնհայտ են արտադրու-
թյան նոր ճյուղեր ծնելու հնարավորությունները: Նոր ճյուղերի առաջացումը
համապատասխանում է գոյություն ունեցող արտադրությունների շահավետու-
թյան հետագա բարձրացման, ինչպես նաև ամբողջ ռեսպուբլիկայի տնտեսա-
կան առաջընթացի շահերին:
Բնական պայմանների բարդ կոմպլեքսը կանխորոշում է բազմազան գյու-
ղատնտեսության զարգացումը, որտեղ, սակայն, հեռանկարային են կաթնա-
մսատու ուղղության անասնապահությունը և պտղաբուծությունը:
Մերձերևանյան շրջանի տնտեսական զարգացման համար առաջնակարգ
նշանակություն ունեցող պրոբլեմներն են՝ պղնձի արդյունաբերության հում-
քային բազայի ընդլայնումը, նոր տեսակի հանքավայրերի արդյունաբերական
օգտագործումը, Դեբեդի ջրային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործումը
էլեկտրաէներգիայի ստացման և ոռոգվող հողատարածությունների ընդարձակ-
ման համար:
**Սևան—Աղստևի տնտեսական շրջան:** Ռեսպուբլիկայի նոր ձևավորվող ու
հեռանկարային շրջաններից մեկն է, իր տարածությամբ ամենաընդարձակը
(ռեսպուբլիկայի տերիտորիայի 27 տոկոսը), ուր բնակվում է, սակայն, ռես-

1 Զբաղեցնում է Հայկական ՍՍՌ տերիտորիայի մոտ 15 տոկոսը. բնակչության տեսակա-
րար կշիռը քիչ ավելի պակաս է՝ մոտ 14 տոկոս: Այստեղ է կենտրոնացված ռեսպուբլիկայի ար-
դյունաբերական արտադրանքի մոտ 1/10-ը, արոտների ու խոտհարքների ընդհանուր տարածու-
թյան մոտ 1/5-ը և պտղատու այգիների մինչև 1/4 մասը:

պուբլիկայի բնակչության 15 տոկոսից էլ պակաս։ Արդյունաբերության զարգացման այսօրվա մակարդակով տնտեսական շրջանների շարքում գրավում է վերջին տեղը, տալով ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի մոտ 3 տոկոսը։ Գյուղատնտեսության ասպարեզում նրա տեսակարար կշիռը շատ ավելի բարձր է[1]։

Սակայն ռեսպուբլիկայի տերիտորիալ-արտադրական կոմպլեքսում Սևանա լճի ու Աղստև գետի ավազանների արդի վիճակը բնութագրող այս թվերը և գյուղատնտեսության զարգացման առանձնահատկությունները չեն, որ հիմնավորում են նշված տերիտորիաները մեկ տնտեսական շրջանի մեջ միավորելու նպատակահարմարությունը։ Այդ տերիտորիաներից յուրաքանչյուրը, առանձին վերցրած, ռեսպուբլիկայի տերիտորիալ արտադրական կոմպլեքսում որևէ ինքնուրույն դեր չի կատարում, զարգացման տենդենցները ևս այդպիսի հույս չեն ներշնչում, հետևապես, մինչև օրս պակասում է այն օբյեկտիվ հիմքը, որն իրավունք է տալիս դրանք դիտել իբրև ռեսպուբլիկական առանձին շրջաններ։ Կարելի է ենթադրել, որ հենց այս նկատառումից էլ դրդված Ս. Ի. Խրիմլյանը իր 4 մասից բաղկացած բաժանման մեջ Աղստևի ավազանը՝ կից տերիտորիաներով միացնում էր Դեբեդի ավազանի հետ, իսկ Սևանի ավազանը՝ Արարատյան շրջանի հետ։ Բայց այս դեպքում առաջանում է տնտեսական շրջանների շատ խիստ արտահայտված անհամաչափություն և, որ գլխավորն է, այդ մեծացված շրջանների սահմաններում ամբողջականություն գոյություն չունի։

Վերջին 5—10 տարում ռեսպուբլիկայի կենտրոնական ու հյուսիս-արևելյան շրջանների արտադրողական ուժերի զարգացման մեջ կատարված տեղաշարժերը ծնունդ տվեցին շրջանագոյացնող մի շարք գործոնների, որոնք ստիպում են այդ տերիտորիաների դերը ռեսպուբլիկայի տնտեսական շրջանացման մեջ գնահատել նոր դիրքերից։ Տնտեսության արդի վիճակը ելակետ ունենալով և առանձնահատուկ նշանակություն տալով նրա հեռանկարային զարգացմանը, դժվար չէ նկատել այն 2 գլխավոր գործոնները, որոնք բավարար օբյեկտիվ հիմք են հանդիսանում Սևան—Աղստևի տնտեսական շրջանի առանձնացման համար։ Դրանք են՝ ա. Հրազդան—Սևան արդյունաբերական հանգույցը իբրև տնտեսական շրջանի կազմակերպիչ կորիզ և բ. շրջանի հիմնական կենտրոններով անցնող ու ծայրամասային տերիտորիաները դեպի իրեն ձգող կարևոր տրանսպորտային տրակտը, որն ունի նաև տրանզիտային նշանակություն։ Հատկանշական է, որ շրջանագոյացնող թե՛ առաջին և թե երկրորդ գործոնը որպես այդպիսիք ապրում են իրենց ձևավորման դեռևս սկզբնական փուլը և ապագայում դրանց դերը՝ շրջանի տնտեսական զարգացման գործում, ավելի վճռական է դառնալու։

Սևան—Հրազդան հանգույցը իր աշխարհագրական դիրքի շնորհիվ Սևանի և Աղստևի ավազանները տարածական տեսակետից շաղկապում է իրար։ Տվյալ հանգույցում են հանդիպում այդ ավազաններից դուրս եկող և դեպի ռեսպուբլիկայի մայրաքաղաքը տանող ճանապարհները։ Վճռական մոմենտ է նաև հետևյալը։ Մոտավոր հաշվումները ցույց են տալիս, որ առաջիկա 15—20 տարում Հրազդան—Սևան արդյունաբերական հանգույցի բնակչությունը կհաս-

[1] Շրջանին բաժին է ընկնում ցանքատարածությունների, արոտների ու խոտհարքների ավելի քան 1/4-ը, խոշոր ու մանր եղջերավոր անասունների՝ 1/4-ը, խոզերի՝ 30 տոկոսը։



նի 150 հազարի։ Նկատի ունենալով, որ Արարատյան և Մերձդեբեդյան շրջաններն իրենք են հարևան շրջաններից ձգում բնակչության զանգվածներ, պետք է ենթադրել, որ Հրազդան—Սևան հանգույցի բնակչության այդպիսի արագ աճ կարող է տեղի ունենալ ի հաշիվ Սևանի և Աղստևի ավազանների։ Այս հանգամանքը ավելի է հիմնավորում հանգույցի, որպես շրջանի տնտեսական կենտրոնի, առաջատար դերը։

Հայկական ՍՍՌ գլխավոր տրանսպորտային տրակտներից մեկը՝ Երևան—Դիլիջան—Ղազախ (Ադրբեջանական ՍՍՌ) խճուղին իր մեծ մասով անցնում է Սևան—Աղստև տնտեսական շրջանի տերիտորիայով՝ միացնելով Հրազդան—Սևան հանգույցը Աղստևի հովտի հետ։ Շրջանի տերիտորիայի մյուս կեսը՝ Սևանա լճի ավազանը, ճիշտ է, ընկած չէ գլխավոր ավտոտրակտի վրա, բայց ամբողջապես հարում է նրան (շուրջլճյա խճուղու միջոցով)։ Շրջանագոյացնող տրանսպորտային գործոնի դերը ավելի կմեծանա, երբ կառուցվի Հրազդան—Իջևան—Աղստաֆա երկաթուղագիծը։ Իսկ նրա ճյուղավորման շարունակումը դեպի Սևանա լճի ավազանի խորքը և դրան հաջորդող մի շարք արտադրությունների ստեղծումը կարող է հանգեցնել ավելի բարձր կարգի կապերի՝ արտադրական-տեխնոլոգիական կապերի առաջացման։

Օրըստօրե ավելի ակնհայտ են դառնում այն նախադրյալները, որոնք կանխորոշում են շրջանի արտադրական մասնագիտացման հիմնական ուղղությունները՝ քիմիական արդյունաբերությունը, գունավոր ու սև մետալուրգիան։

Գյուղատնտեսության մասնագիտացման ճյուղերն առաջիկայում էլ մնալու են ծխախոտագործությունն ու անասնապահությունը։

Մեծ են շրջանի հնարավորությունները կուրորտային գործի զարգացման բնագավառում։ Հեռանկարային պլանով ռեսպուբլիկական ու միութենական նշանակության հանգստի գոտի է ստեղծվում Ծաղկաձոր—Հանքավան—Դիլիջան—Կրասնոսելսկ—Շորժա—Սևան բազմանկյան մեջ ընկած տարածության վրա։

Զանգեզուր Հայկական ՍՍՌ ամենից ավելի քիչ յուրացված, բայց արդյունաբերական զարգացման լայն հնարավորություններ ունեցող տնտեսական շրջանն է։ Այն դեպքում, երբ նրա տարածությունը կազմում է ռեսպուբլիկայի տարածության 23 տոկոսը, ըստ բնակչության քանակի նրա տեսակարար կշիռը հազիվ հասնում է 9 տոկոսի։ Զանգեզուրի տնտեսական շրջանը մոլիբդենի, պղնձի և երկաթի պաշարներով ռեսպուբլիկայում գրավում է առաջին տեղը։ Մեծ է նրա բաժինը ռեսպուբլիկայում հիդրոէներգետիկ ռեսուրսների (մոտ 1/3 մասը), բնական կերահանդակների (արոտավայրերի ու խոտհարքների տարածության 1/5-ը) ու անասնապահության գծով (մանր եղջերավոր անասունների գլխաքանակի 22, խոշոր եղջերավոր անասունների՝ 20 տոկոսը)։

Չնայած Զանգեզուրում կատարված խոշոր մասշտաբի արդյունաբերական շինարարությանը և մեծ կապիտալ ներդրումներին (ներկայումս գործող արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 90 տոկոսը կառուցվել է սովետական իշխանության տարիներին), այնուամենայնիվ այն մնում է որպես ռեսպուբլիկայի ամենից ավելի թույլ յուրացված շրջանը։ Դրա հիմնական պատճառները նրա արդի տնտեսա-աշխարհագրական դիրքը (հեռավորությունը ռեսպուբլիկայի գլխավոր տնտեսական կենտրոններից և տրանսպորտային անհարմար դիրքը) և անբարենպաստ բնական պայմաններն են (մակերևույթի

խիստ կտրտվածությունը, լանջերի մեծ թեքությունները, վարելահարմար հողերի ընդարձակ զանգվածների բացակայությունը, կլիմայական պայմանների չորությունը և այլն):

Բնական ու տնտեսա-աշխարհագրական անբարենպաստ պայմանների նման զուգորդումը ապագայում ևս իր որոշ արգելակող դերը կպահպանի, բայց ամբողջ ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի բուռն վերելքի պայմաններում տնտեսական գործոններն ավելի են մղվում առաջին պլան և Զանգեզուրի զարգացման տեմպերի արագացման գործում դառնում բախտորոշ:

Զանգեզուրի տնտեսության մասնագիտական ճյուղի՝ լեռնահանքային արդյունաբերության զարգացումն այնպիսի ծավալներ է ընդունել, որ արդեն օրակարգի հարց է դարձել նրա մեջ լուրջ «ճշտումներ» մտցնելը: Խոսքը պղնձա-մոլիբդենային արդյունաբերության «ըստ խորության» զարգացման, հանքաքարի արդյունահանման ու հարստացման առկա բազայի վրա, տեղում հանքաքարի ձուլման և մի շարք քիմիական նյութերի արտադրությունը կազմակերպելու մասին է:

Զանգեզուրի արդյունաբերության մեջ նոր որակական փոփոխություն կլինի Տաթևի հիդրոէլեկտրակայանի, ապա Որոտանի ամբողջ կասկադի շինարարության ավարտումը: Կասկադի էժան էլեկտրաէներգիայի և, հատկապես, նրա շինարարությունից հետո մնացած աշխատանքային ռեսուրսների, շինարարական ու նյութատեխնիկական բազայի վրա անխուսափելիորեն կծագեն վերամշակման արդյունաբերության կենտրոններ[1], որոնց (հաշվի առնելով նաև Սվարանցի երկաթի հանքավայրի օգտագործման հեռանկարները) շնորհիվ Որոտանի ավազանում կարող է ստեղծվել ու զարգանալ արդյունաբերական նոր հանգույց: Որոտանի ապագա արդյունաբերական հանգույցը, առայժմ գոյություն ունեցող Ղափան—Քաջարան հանգույցի հետ միասին, կդառնա Զանգեզուրի շրջանի այն կազմակերպիչ կորիզը, որը տնտեսական-արտադրական իմաստով մեկ ամբողջության մեջ կմիավորի Վարդենիսի լեռնաշղթայից հարավ և հարավ-արևելք ընկած տերիտորիաները:

Տրանսպորտային դիրքորոշման առումով Զանգեզուրը տակավին միասնական չէ: Ապագայում Սևանա լճի ավազան—Ղափան երկաթուղագծի կառուցումը արմատական փոփոխություն կմտցնի Զանգեզուրի ինչպես տրանսպորտային դիրքի, այնպես էլ նրա ներքին շրջանների տրանսպորտային ապահովվածության մեջ: Կուժեղանա տրանսպորտի՝ որպես Զանգեզուրի շրջանագոյացման գործոնի դերը:

Գյուղատնտեսության ընդարձակման հնարավորությունները ոչ մի շրջանում այնքան սահմանափակ չեն, ինչպես Զանգեզուրում: Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման համար ևս բնական լուրջ խոչընդոտներ կան: Չի լուծված դեռևս հողագործական աշխատանքների մեքենայացման պրոբլեմը, մեծ դժվարություններ կան գյուղատնտեսության ջրամատակարարման գործում: Առկա համեստ հնարավորությունները, ամենայն հավանականությամբ, կօգտագործվեն մերձքաղաքային գյուղատնտեսության, ոչխարաբուծության, այգեգործության ու ջերմապահության հետագա զարգացման համար: Հենց այդ ճյուղերն էլ կարտացոլեն Զանգեզուրի գյուղատնտեսության մասնագիտացումը:

1 Հայկական ՍՍՌ-ում հիդրոէլեկտրակայանների շինարարությանը հաջորդող արդյունաբերական կենտրոնների առաջացման լավագույն օրինակ է Հրազդան գետի շրջակայքը:



***

Ինչպես ընդարձակ տերիտորիաներ զբաղեցնող պետությունների, այնպես էլ փոքր տարածություն ունեցող ռեսպուբլիկաների տնտեսական շրջանացումը գիտական խոշոր ու բարդ պրոբլեմ է, որը, հասարակության զարգացման ու տեխնիկայի առաջընթացին համապատասխան, կրում է էական փոփոխություններ: Մեր ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի հետագա զարգացման ու ճիշտ տեղաբաշխման շահերը պահանջում են անհապաղ ձեռնամուխ լինել այդ հասունացած պրոբլեմի լուծմանը:

Տնտեսական շրջանացման պրոբլեմի գիտական մշակումն ու կենսագործումը հնարավոր է գիտության տարբեր ճյուղերի ներկայացուցիչների, պլանավորող ու ժողովրդական տնտեսության ղեկավար օրգանների, տեղերի պրակտիկ աշխատողների համատեղ ուժերով միայն:

Անհատների կողմից ներկայումս կատարվող ուսումնասիրությունները կարող են ունենալ լոկ նախապատրաստական աշխատանքների և գիտական հիպոթեզների նշանակություն: Հայկական ՍՍՌ տնտեսական շրջանացման պրոբլեմի այդ կողմերի վրա հասարակության ուշադրության հրավիրումը և կոմունիստական արտադրության տերիտորիալ կազմակերպման համար նրա նշանակության բացահայտումը կազմում է սույն հոդվածի հիմնական նպատակը:

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՈՎ

Կար ժամանակ, երբ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների
Միությունը աշխարհում միակ սոցիալիստական երկիրն էր, որն ապավինելով
իր ուժերին, տիտանական ջանքերի գնով հաղթահարում էր ցարիզմից ժառան-
գություն ստացած տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, եռ
վանում իմպերիալիստական տերությունների ու ներքին կոնտրռևոլյուցիայի
կատաղի գրոհները և մեծագույն դժվարությունների ու զրկանքների գնով, մեն-
մենակ սոցիալիզմ կառուցում։

Միջազգային բուրժուազիան, ռեակցիոն բոլոր ուժերն ամեն ինչ անում
էին ՍՍՌՄ-ին մեկուսացնելու, սոցիալիզմը վարկաբեկելու, երկրի երեսից
«կարմիր վարակը» վերացնելու և հողագնդում կապիտալիզմի անբաժան տի-
րապետությունը ամրապնդելու համար։ Բայց նրանց հաշիվները կառուցված
էին ավազի վրա։ Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստական պարտիայի ղե-
կավարությամբ հաղթանակած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևո-
լյուցիայի գործն ապրում էր ու առաջ ընթանում։ Այն հասարակության օրինա-
չափ զարգացման արդյունքն էր, պատմության անկասելի առաջընթացի ար-
գասիքը։

Հակառակ կապիտալիստական պետությունների կամքին ու ցանկության,
հակառակ նրանց «գիտուն» տեսաբանների գուշակությունների ու կոնտրռևո-
լյուցիայի ամենասարսափ դավերի ու ակնկալությունների, աշխարհում առաջին
սոցիալիստական պետությունը՝ ՍՍՌՄ-ը ոչ միայն պահպանեց իր ինքնուրույ-
նությունը, այլև արագորեն աճող իր հզորությամբ տապալեց կապիտալիստա-
կան տերությունների կազմակերպած տնտեսական բլոկադան և դուրս եկավ
միջազգային ասպարեզ։ Այն ցույց տվեց, թե ինչի են ընդունակ ազատագրված
և իշխանությունն իրենց ձեռքը վերցրած ժողովրդական մասսաները, որոնք
ընթանալով անծանոթ ճանապարհներով, պատմական ամենակարճ ժամանա-
կամիջոցում հրաշքներ գործեցին ժողովրդական տնտեսության, գիտության ու
կուլտուրայի զարգացման բոլոր բնագավառներում։ Ավելին, նրանք բազմա-
պատկեցին իրենց սոցիալիստական հայրենիքի փառքը, պատմության մեջ
առաջինը կառուցեցին սոցիալիզմը և դրանով իսկ կապիտալիստական աշ-
խարհի ճնշված մարդկությանը ցույց տվին շահագործողների դարավոր լծից
ազատագրվելու միակ ճիշտ ուղին։





Երկրորդ համաշխարհային պատերազմում ՍՍՌՄ վճռական դերի շնոր-
հիվ գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի ջախջախումը Եվրո-
պայի ու Ասիայի մի շարք երկրների ժողովուրդների համար նպաստավոր
պայմաններ ստեղծեց շահագործողական դասակարգերին տապալելու, իշխա-
նությունն իրենց ձեռքը վերցնելու և սոցիալիզմի ուղիով ընթանալու համար։
Այդ երկրների ժողովուրդները Սովետական Միության հետ միասին կազմեցին
սոցիալիզմի ճամբարը։

Եվրոպայի և Ասիայի երկրներում հաղթանակած սոցիալիստական ռևո-
լյուցիաները, որոնք 1917 թվականի Հոկտեմբերից հետո համաշխարհային
պատմական ամենախոշոր իրադարձություններն են, նոր, հզոր հարված հասց-
րին իմպերիալիզմի դիրքերին։ Իմպերիալիզմը պարտություն կրեց նաև Լա-
տինա-Ամերիկյան երկրներից մեկում՝ հերոսական Կուբայում, որի ազատա-
բաղձ ժողովուրդը փայլուն հաղթանակով պսակեց սոցիալիստական ռևոլյու-
ցիան և հաստատորեն կանգնեց սոցիալիզմի ուղու վրա։ Այսպիսով սոցիալիզ-
մը, որի հաղթանակի անխուսափելիությունը գիտականորեն կանխագուշակել
էին Մարքսն ու Էնգելսը, որի կառուցման պլանը կանխատեսել էր Լենինը,
դուրս եկավ մեկ երկրի շրջանակներից և վերածվեց համաշխարհային սիստե-
մի, որը մեր դարաշրջանի գլխավոր գիծն է։ Այժմ սոցիալիստական երկրների
բնակչությունը կազմում է մարդկության 35,6 տոկոսը։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմն իր էությամբ ու նպատակնե-
րով միանգամայն հակադիր է կապիտալիստական սիստեմին։ Այն «...սոցիա-
լական, տնտեսական ու քաղաքական համագործակցությունն է ազատ, սու-
վերեն ժողովուրդների, որոնք ընթանում են սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով,
միավորված են շահերի ու նպատակների ընդհանրությամբ, միջազգային սո-
ցիալիստական համերաշխության սերտ կապերով» (ՍՄԿՊ XXII համագումարի
նյութերը, էջ 440)։ Այդ սիստեմը դարձել է արդի ռևոլյուցիոն շարժման, մարդ-
կության առաջընթաց զարգացման վճռական գործոնը։ Ինչպես ընդգծված է
կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվ-
վականի խորհրդակցության Հայտարարության մեջ, այժմ մարդկային հասա-
րակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, գլխավոր
ուղղությունը և գլխավոր առանձնահատկությունները որոշվում են համաշխար-
հային սոցիալիստական սիստեմով, իմպերիալիզմի դեմ, հասարակության սո-
ցիալիստական վերակառուցման համար պայքարի ուժերով։

Համաշխարհային ասպարեզում սոցիալիստական նոր պետությունների
երևան գալն արմատական փոփոխություններ առաջացրեց միջազգային հարա-
բերություններում, ժողովուրդների կյանքում։ Իր դեմ-հանդիման ունենալով
սոցիալիզմի հզոր ճամբարը, իմպերիալիստներն այլևս չեն կարողանում ուզածին
պես տնօրինել տարբեր երկրների ժողովուրդների բախտը, իրենց շահերի հա-
մեմատ ձևել աշխարհի քարտեզը, շարունակել գաղութակալության խայտառակ
քաղաքականությունը։ Ստեղծված նոր իրադրության պայմաններում համաշ-
խարհային զարգացման վճռական գործոն է դարձել ոչ թե իմպերիալիզմն իր
ռազմաշունչ ու հակամարդկային հակումներով, այլ սոցիալիզմը՝ խաղաղու-
թյան, դեմոկրատիայի ու առաջադիմության իր վեհ իդեաներով։

Առաջանալով նոր պայմաններում և դառնալով արդիականության ռևոլյու-

ցիոն վճռական գործոնը, համաշխարհային սոցիալիստական սիստեմը կապիտալիստականի նկատմամբ դրսևորում է իր գերազանցությունը և համաշխարհային զարգացման վրա ներգործում է էկոնոմիկայի, քաղաքականության և գաղափարախոսության բոլոր բնագավառներում։

Համառոտակի ցույց տանք դրանք առանձին-առանձին։

Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ իշխանությունը նվաճելուց հետո սոցիալիստական երկրների բանվոր դասակարգը, կոմունիստները համաշխարհային ռևոլյուցիայի զարգացման վրա գլխավոր ազդեցությունը գործում են իրենց տնտեսական քաղաքականությամբ, սոցիալիստական շինարարության բնագավառում ձեռք բերած հաջողություններով։

Կենսագործելով լենինյան այդ ցուցումը, սոցիալիստական լագերի կոմունիստական ու բանվորական պարտիաները աշխատավորներին պայքարի հանեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը զարգացնելու, նյութական բարիքների արտադրությունը բազմապատկելու և այդ բազայի վրա ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու համար։

Օգտագործելով սոցիալիստական կարգերի ընձեռած առավելությունները, նրանց հաջողվեց ամենից առաջ արագացած տեմպերով զարգացնել արդյունաբերությունը՝ երկրի էկոնոմիկայի հիմքերի հիմքը։ Սոցիալիստական լագերի բոլոր երկրներն էլ կարճ ժամանակամիջոցում խոշոր հաջողությունների հասան այդ բնագավառում։ Բավական է ասել, որ նրանք 1960 թվականին, 1937 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրության ծավալն ավելացրել էին 6,8 անգամ, մինչդեռ կապիտալիստական երկրները՝ 2,5 անգամից էլ պակաս։

Միմյանց եղբայրական, անշահախնդիր օգնություն ցույց տալու, ժողովրդական հոծ զանգվածների ստեղծագործական նախաձեռնությունը ծավալելու, արտադրությունը պլանային կարգով վարելու և իրենց ունեցած միջոցները ռացիոնալ կերպով օգտագործելու շնորհիվ սոցիալիստական սիստեմի երկրները կարողացան արագորեն հաղթահարել երկրորդ համաշխարհային պատերազմի պատճառած անասելի ավերածությունները և իրենց ձեռք բերած հաջողություններով առաջնակարգ տեղ գրավել։ Ժողովրդական Լեհաստանը, բուրժուական Լեհաստանի համեմատությամբ, վերջին 20 տարում արդյունաբերական պոտենցիալը մեկ շնչի հաշվով ավելացրել է 10 անգամ, իսկ 100 հեկտարին ընկնող գյուղատնտեսական արտադրանքը՝ երկու երրորդով։ Արդյունաբերության մեջ քառապատկվել են բանվոր դասակարգի շարքերը, իսկ ինժեներական կադրերը ավելացել են 8 անգամ։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան 1950 թվականից մինչև 1963 թվականը արգյունաբերության համախառն արտադրանքն ավելի քան եռապատկել է։ Այն ներկայումս դասվում է արդյունաբերական տեսակետից աշխարհի առավել զարգացած տասը երկրների շարքը։

Արդյունաբերության ու գյուղատնտեսության բնագավառներում կատարված սոցիալիստական վերափոխությունների շնորհիվ սոցիալիզմի երկրների էկոնոմիկայում տիրապետող դիրք է գրավում սոցիալիստական սեկտորը։ Այսպես. Բուլղարիայում արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ սոցիալիստական սեկտորի բաժինը 1961 թվականին կազմում էր 99,2, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 98,2 տոկոս։ ՍՍՌՄ-ում համապատասխանորեն՝ 100,0:99,9, Ռումինիայում՝ 99,0:84,5, Հունգարիայում (1960 թ.)՝ 97,5:95,6,



Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում (1962 թ.)՝ 88,7։ 93,2, Կուբայում (1963 թ.)՝ 95,0։ 70,0 տոկոս և այլն։

Այս ամենը սոցիալիստական պետություններին հնարավորություն տվեց զգալիորեն բարձրացնելու աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Լեհաստանի միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար Վլադիսլավ Գոմուլկան նշում է, որ «Շահագործող դասակարգերից ազատագրված լեհ ժողովուրդը լայնորեն օգտվում է իր անձնվեր աշխատանքի պտուղներից. ազգային եկամտի եռապատիկ ավելացումը ոչ միայն ապահովեց արդյունաբերական, բնակարանային և սոցիալ-կուլտուրական շինարարության մեծ թափ, այլև թույլ տվեց զգալիորեն բարձրացնել բնակչության կենսամակարդակը, ավելացնել նյութական բարիքների սպառումը և լայնորեն օգտվել կուլտուրայի, գիտության ու լուսավորության նվաճումներից»։

Այդ երևույթն ընդհանուր է սոցիալիստական բոլոր երկրներում և առավել բարձր զարգացման հասած ՍՍՌՄ-ում, որն իր օրինակով ցույց է տալիս, թե սոցիալիզմի կառուցումն ինչպիսի բարիքներ է պարգևում աշխատավոր ժողովրդին։

Սոցիալիստական երկրների ձեռք բերած այդ հաջողությունները ներգործում են համաշխարհային զարգացման վրա, կապիտալիստական երկրների աշխատավորների մտքի ու սրտի վրա։ Հանձինս սոցիալիստական լագերի երկրների , նրանք պարզ կերպով տեսնում են, որ սոցիալիզմը ազատագրում է աշխատանքը հանուն մարդու բարօրության, բոլորին ոգեշնչում ու թևավորում է այնպիսի սխրագործությունների, որոնք մինչև այդ անհայտ էին մարդկությանը։

Ունենալով բազմակողմանիորեն զարգացած էկոնոմիկա և հենվելով դրա վրա, սոցիալիստական երկրները պատվով են կատարում իրենց ինտերնացիոնալ պարտքը։ Նրանք անշահախնդիր, եղբայրական օգնություն են ցույց տալիս գաղութային լծից ազատված ու ազգային վերածննդի ուղին բռնած երկրներին՝ տնտեսական լիակատար անկախություն ձեռք բերելու և իմպերիալիստների գիշատչական շահագործումից վերջնականապես ազատագրվելու համար։ Սոցիալիստական լագերի երկրները ազատագրված երկրներում կառուցում են մոտ 900 արդյունաբերական ձեռնարկություններ և այլ օբյեկտներ, այդ թվում ՍՍՌՄ-ի օգնությամբ՝ 480, Չեխոսլովակիայի, ԳԴՌ-ի, Լեհաստանի, Բուլղարիայի, Հունգարիայի, Ռումինիայի օգնությամբ՝ ավելի քան 400։ Սովետական Միությունը տնտեսական ու տեխնիկական օգնություն է ցույց տալիս Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի 23 երկրների։ Մինչև 1961 թ. վերջերը Չեխոսլովակիան տեխնիկական օգնություն էր ցույց տալիս 15, Լեհաստանը՝ 12, Հունգարիան՝ 9, Բուլղարիան՝ 8, Ռումինիան՝ 6 երկրների։

Նոր զարգացած երկրներին Սովետական Միության հատկացրած վարկերը, որոնք բաց են թողնված առավել արտոնյալ պայմաններով, քան կապիտալիստական երկրների բաց թողածը, կազմում են 3 միլիարդ ռուբլի (նոր դրամով), իսկ Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Ռումինիայի, ԳԴՌ-ի, Բուլղարիայի, Հունգարիայի բաց թողած վարկերը (1953—1961 թվականներին)՝ վեց հարյուր միլիոն ռուբլի։

Սոցիալիստական լագերը ազատագրված երկրներին լայն օգնություն է ցույց տալիս նաև ազգային կադրերի պատրաստման ուղղությամբ։ Միայն

*ՍՍՌՄ-ում սովորում են երիտասարդ սուվերեն պետություններից եկած ավելի քան 12 հազար ուսանող։*

*Նման բազմակողմանի օգնության շնորհիվ ազատագրված երկրներն ստեղծում են իրենց պետական արդյունաբերությունը՝ երկրի տնտեսական անկախության պատվարը։ Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի երկրների հետ սոցիալիստական լագերի տնտեսական կապերի աճման ու ամրապնդման շնորհիվ սարքավորումների մատակարարման ու վարկերի բացթողման ասպարեզում վերացվեց իմպերիալիստական տերությունների մենաշնորհը, նրանց ձեռքից խլվեց տնտեսական շրջափակման զենքը, կրճատվեց կապիտալիստական մոնոպոլիաների գործողության շառավիղը։*

*Սոցիալիզմի լագերի երկրները համաշխարհային զարգացման վրա ներգործում են նաև քաղաքականության բնագավառում։ Կառուցելով սոցիալիզմ ու կոմունիզմ, դրանց բուն իսկ էությանը համապատասխան նրանք վարում են ժողովուրդների բարեկամության, պետությունների միջև վեճերը բանակցությունների միջոցով լուծելու, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, յուրաքանչյուր երկրի սուվերենությունը և տերիտորիալ ամբողջականությունը հարգելու, ընդհանուր զինաթափում անցկացնելու, տնտեսական ու կուլտուրական համագործակցությունը իրավահավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա զարգացնելու քաղաքականություն։*

*Ելնելով Վ. Ի. Լենինի ցուցումներից և ՍՄԿՊ XX համագումարի տեսական դրույթներից, սոցիալիստական լագերի երկրները պաշտպանել ու պաշտպանում են հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականությունը, որը մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությունն է։ Ուստի, պատահական չէ, որ մեր ժողովուրդների հետ միասին արտասահմանյան ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը, տարբեր պարտիաներ ու կազմակերպություններ, կառավարություններ ու պետական գործիչներ, անկախ իրենց քաղաքական համոզմունքներից ու իմպերիալիստական ռեակցիոն ուժերի ցանկությունից, պաշտպանում են խաղաղ գոյակցության քաղաքականությունը։*

*«Սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականությունը,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— որի հիմքում դրված են ժողովուրդների խաղաղության, իրավահավասարության, ինքնորոշման, բոլոր երկրների անկախությունը և սուվերենությունը հարգելու սկզբունքները, ինչպես նաև սոցիալիստական դիվանագիտության ազնիվ, մարդասիրական մեթոդները, հարաճուն ազդեցություն են գործում համաշխարհային իրադրության վրա։ Այն պայմաններում, երբ իմպերիալիզմը դադարել է միջազգային հարաբերություններում գերակշռող դեր խաղալուց, և գնալով ավելի մեծ դեր է խաղում սոցիալիստական սիստեմը, երբ համաշխարհային քաղաքականության մեջ խիստ աճել է ազգային անկախություն նվաճած պետությունների և կապիտալիստական երկրների ժողովրդական մասսաների ազդեցությունը, ռեալ հնարավորություն է ստեղծվում, որպեսզի սոցիալիզմի առաջ քաշած նոր սկզբունքները հաղթանակ տանեն իմպերիալիստական ագրեսիվ քաղաքականության սկզբունքների նկատմամբ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 478)։*

*Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև միջազգային մասշտաբով տեղի է ունենում խաղաղ տնտեսական մրցություն։ Այդ մրցությանը հիմք է ծառայում խաղաղ գոյակցությունը, որը, միաժամանակ, սոցիալիզմի և կապիտալիզմի*



*միջև մղվող դասակարգային պայքարի յուրահատուկ ձև է։ Խաղաղ գոյակցության պայմաններում սոցիալիստական երկրների դիրքերի ամրապնդման հետ միասին ավելի նպաստավոր հնարավորություններ են ստեղծվում կապիտալիստական երկրների ճնշված և շահագործվող ժողովուրդների պայքարի ու ազատության համար։*

*Պաշտպանելով ու իրենց քաղաքականության կուրսը համարելով հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, սոցիալիստական երկրների պետությունները, կոմունիստական ու բանվորական պարտիաները միաժամանակ հայտարարում են, որ խաղաղ գոյակցություն չի կարող լինել գաղափարախոսության բնագավառում և դա հասկանալի է։ Տարբեր հասարակական սիստեմները՝ սոցիալիզմն ու կապիտալիզմը ունեն միանգամայն հակադիր, մեկը մյուսին բացասող գաղափարախոսություն, որոնց մեջ միշտ եղել է, կա ու կմնա անհաշտ պայքար։*

*Արդի դարաշրջանում միջազգային բուրժուազիան չունի այնպիսի գաղափարներ, որոնք ունակ լինեն հրապուրելու աշխատավոր մասսաներին։ Ի հակադրություն նրա մարդատյաց գաղափարախոսության, որը բոլոր միջոցներով փորձում է գունազարդել, այսպես կոչված, «ազատ աշխարհը» և հակակոմունիզմի դրոշի ներքո հրահրել իմպերիալիստական շնագայլերի ավազակությունները, սոցիալիզմի գաղափարախոսությունը ժողովուրդներին բերում է Ազատություն, Եղբայրություն, Բարեկամություն ու Հավասարություն։ Այն իր համամարդկային վեհ իդեալներով դեպի իրեն է ձգում բազում ժողովուրդների հարյուր միլիոնավոր մարդկանց և նրանց պայքարի տանում հանուն աշխատանքի ազատության թագավորության՝ սոցիալիզմի ու կոմունիզմի։*

*Հակակոմունիզմը դարձել է բուրժուազիայի գաղափարական զենքը, որին ի սպաս են դրված նրա ծախու մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, պետական ամբողջ ապարատը։ Ուստի, մեր կարևորագույն խնդիրն է՝ հարձակողական, անհաշտ պայքար մղել ընդդեմ բուրժուական գաղափարախոսության, մինչև վերջ մերկացնել նրա կեղծիքը, սուտն ու հակաժողովրդական էությունը։ Պրակտիկայում կոմունիզմի մեծ գաղափարների իրագործումը, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության հաջողությունները բուրժուական ռեակցիոն գաղափարախոսության վերջնական ջախջախման վճռական պայմանն են։*

*Համաշխարհային զարգացման վրա սոցիալիստական լագերի ակտիվ ներգործությունը, ազատագրված երկրների զարգացումն ու ինքնուրույն քաղաքականությունը, բնականաբար, հանգստություն չեն տալիս իր մայրամուտն ապրող իմպերիալիզմին, որը լրտեսական, դիվերսիոն ու կոնտրռևոլյուցիոն նենգ դավեր է նյութում նրանց դեմ և երբեմն դիմում բացահայտ ռազմական ավանտյուրաների։ Հիշենք իմպերիալիստների կողմից Հունգարիայում բարձրացրած հակառևոլյուցիոն խռովությունը և հարձակումը Եգիպտոսի վրա, ինտերվենցիան Լիբանանում ու Հորդանանում, 1961 թ. վարձկան բանդաների հարձակումը Կուբայի վրա և սուր լարվածության ստեղծումը Կարիբյան ծովի շրջանում, ամերիկյան ռազմա-ծովային ու ռազմա-օդային ուժերի կողմից Տոնկինյան ծոցում վերջերս ձեռնարկած բացարձակ ավանտյուրան և հարձակումը Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի խաղաղ քաղաքների ու գյուղերի վրա, արյունահեղությունը Կիպրոսում, Կոնգոյում և այլն։ Այդ բոլորը կարող էին համաշխարհային նոր, պատմության մեջ չտեսնված աղետալի պատերազ-*

մի վերածվել, եթե չլիներ սոցիալիստական հզոր լագերը, նրա առաջատար ուժ հանդիսացող ՍՍՌՄ-ը, որն իր ամբողջ ուժով ագրեսորներին զգուշացրեց ու ետ պահեց խելահեղ գործողություններից: Դա սոցիալիստական սիստեմի կողմից ողջ մարդկությանը մատուցած մեծագույն ծառայությունն է, բանականության հաղթանակը, որն իր ակտիվ ներգործությունն ունեցավ համաշխարհային ամբողջ զարգացման վրա:

Խաղաղության համար պայքարում կարևոր ավանդ հանդիսացավ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի՝ անցած ամսին կայացած խորհրդակցությունը: Խորհրդակցության ընդունած կոմյունիկեում ասված է, «որ իմպերիալիստական սպառնալիքի հանդեպ սոցիալիստական երկրները լիովին միաբան են ու համերաշխ, և որ այդ համերաշխությունը խարխլելու իմպերիալիստական շրջանների փորձերը ձախողման են դատապարտված»:



Համաշխարհային սոցիալիզմի լագերի առաջացումն ու զարգացումն իր հետ բերեց սոցիալիստական պետությունների հարաբերություններն ու համագործակցությունը նոր սկզբունքներով կազմակերպելու պրոբլեմը: Եղբայրական կոմունիստական պարտիաները միասնական ջանքերով լուծեցին այդ պրոբլեմը ևս: Ելնելով կյանքի օբյեկտիվ պահանջներից, նրանք գտան միջազգային փոխհարաբերությունների՝ տնտեսական, քաղաքական ու կուլտուրական համագործակցության այնպիսի նոր ձևեր, որոնք իրենց առաջադիմական էությամբ ռևոլյուցիոն ազդեցություն են գործում ամբողջ համաշխարհային զարգացման վրա:

Եթե կապիտալիզմի համաշխարհային սիստեմը ստեղծվել ու զարգացել է նրա մեջ մտնող պետությունների կատաղի պայքարով, ուժեղների կողմից թույլերին ճզմելու, շահագործելու, ամբողջ մայրցամաքներ իմպերիալիստական մետրոպոլիաների գաղութների վերածելու միջոցով, ապա համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծումն ու զարգացումը տեղի է ունեցել դրան ուղղակի հակադիր օրենքներով: Համաշխարհային սոցիալիստական սիստեմը կազմակերպվել է սուվերենության, լիակատար կամավորության և իրավահավասարության հիման վրա, որն ապահովում է այդ սիստեմի մեջ մտնող բոլոր երկրների էկոնոմիկայի անշեղ, պլանաչափ աճը:

Զերծ լինելով հակամարտ հակասություններից, համաշխարհային սոցիալիստական հզոր սիստեմը զարգանում է վերընթաց ուղիով և ապահովում է ինչպես յուրաքանչյուր երկրի, այնպես էլ ամբողջ սոցիալիստական լագերի էկոնոմիկայի բուռն աճը: Հենց դա էլ լիակատար պայմաններ է ստեղծում կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ վերջնական հաղթանակի հասնելու համար:

Սերտ համագործակցության ու եղբայրական փոխօգնության շնորհիվ սոցիալիստական երկրներն այդ ուղղությամբ նշանակալից հաջողությունների են հասել և կապիտալիզմին նեղում են առավել վճռական ոլորտում՝ նյութական



արտադրության բնագավառում: Եղած փաստերն ակնառու կերպով ցույց են տալիս, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմի էկոնոմիկան զարգանում է ավելի արագ տեմպերով, քան կապիտալիզմինը: Ահա համապատասխան տվյալներ:

**Արդյունաբերության աճման տեմպերը**

| Տարիները | Սոցիալիստական երկրներ | Կապիտալիստական երկրներ |
|---|---|---|
| 1937—1963 | համարյա 8 անգամ | 2,9 անգամ |
| 1950—1962 [1] | համարյա 4 անգամ | 1,8 անգամ |

[1] Այդ թվում՝ տնտեսական փոխօգնության երկրներում՝ 3,64 անգամ, «ընդհանուր շուկայի» երկրներում՝ 2,39 անգամ:

Հատկանշական է նաև այն, որ համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ սոցիալիստական լագերի բաժինը եթե 1937 թ. կազմել է 10, 1955 թ.՝ 27, ապա 1963 թ. կազմում էր 38 տոկոս: Արդյունաբերական արտադրության մի շարք կարևոր տեսակների (ածխի, չուգունի, մետաղի և այլն) արտադրանքի բացարձակ ծավալով սոցիալիզմի երկրներն առաջ են անցել կապիտալիստական երկրներից: Այժմ նրանք առավել ուժեղ թափով են զարգացնում իրենց էկոնոմիկան, որպեսզի ամբողջ արտադրության բացարձակ ծավալով առաջ անցնեն կապիտալիստական երկրներից:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարության խնդիրները լուծում են ոչ թե անջատ-անջատ, այլ եղբայրական միասնական ընտանիքում: Նրանցից յուրաքանչյուրի ազգային տնտեսական զարգացումը զուգորդվում է սոցիալիզմի ամբողջ լագերի կենսական շահերի հետ, որը համաշխարհային սոցիալիստական տնտեսության հետագա վերելքի կարևոր պայմանն է, գլխավոր ուղին: Այդ տեսակետից անգնահատելի դեր է խաղում Տնտեսական փոխօգնության խորհուրդը, որն ապահովում է սոցիալիստական համագործակցության երկրների ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, աշխատանքի սոցիալիստական բաժանումը և այլն:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը միջազգային տնտեսական ու քաղաքական հարաբերությունների նոր տիպ է, որը լիովին համապատասխանում է այդ սիստեմի բոլոր երկրների ժողովուրդների կենսական շահերին և յուրաքանչյուրին հնարավորություն տալիս ռացիոնալ ձևով օգտագործելու իր ունեցած ռեսուրսները, ընդարձակելու նյութական բարիքների արտադրությունը և բարձրացնելու աշխատավորների կենսամակարդակը: Կատարելով իրենց ինտերնացիոնալ առաջնակարգ պարտքը, նրանք կառուցում են սոցիալիզմ և կոմունիզմ, որով ըստ ամենայնի զարգացնում են արտադրողական ուժերը, ծավալում եղբայրական կապերը, նպաստում ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկմանն ու փոխհարստացմանը, սոցիալիստական հասարակության մարդու ինտերնացիոնալիստական գծերի ձևավորմանը: Այդ ամենով նրանք իրենց արժանավայել ավանդն են մուծում համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման գործում:

Սոցիալիստական լագերն ամեն կերպ ամրապնդելու, սոցիալիզմի երկր-

ների բարեկամական փոխհարաբերությունը զարգացնելու, նրանց մարտական համախմբվածությունն ուժեղացնելու և միջազգային իմպերիալիզմի դեմ համատեղ պայքար տանելու ուղղությամբ մեծ ու անգնահատելի աշխատանք է կատարում Սովետական Միության կոմունիստական պարտիան։ Նա պրակտիկայում հետևողականորեն կենսագործում է սոցիալիստական երկրների հետ քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կապերն ուժեղացնելու բնագավառում իր առջև դրված այն խնդիրները, որոնք գրի են առնված XXII համագումարի որոշումներում ու պարտիայի նոր ծրագրում։

Հաշվի առնելով համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապընդման ու զարգացման գործում միջազգային կոմունիստական ու բանվորական պարտիաների սերտ միասնության, մարքսիզմ-լենինիզմի հիման վրա նրանց գործողությունների կոորդինացման ու համատեղ ծավալման վճռական նշանակությունը, Սովետական Միության կոմունիստական պարտիան ամեն ինչ անում է այդ ուղղությամբ ծագած դժվարությունները հաղթահարելու, եղբայրական պարտիաների անխախտ միասնությունն ապահովելու համար։ Հետևողականորեն կենսագործելով XX, XXI, XXII համագումարների որոշումները և պարտիայի նոր ծրագիրը, նա ամենայն հաստատակամությամբ պայքարում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների և եղբայրական կոմու- նիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների կողմից կոլեկտիվ կերպով մշակված 1957 թվականի Դեկլարացիայի և 1960 թվականի Հայտարարության հիման վրա պահպանելու և ուժեղացնելու միջազգային կոմու- նիստական շարժման միասնությունն ու համախմբվածությունը։

Բոլորը տեսնում են, թե ինչպես մեր պարտիան անդադրում կերպով ուժե- ղացնում ու ամրապնդում է եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների հետ ունեցած իր կապը, ապահովում է արդիականության հա- սունացած ակտուալ հարցերի համատեղ քննարկումը, սերտ կոնտակտների հաստատումը, փորձի փոխանակումը և այլն։ Մեր պարտիան վառ օրինակ է ցույց տալիս իր ինտերնացիոնալ պարտքի կատարման ուղղությամբ, որն արտահայտվում է կոմունիզմի կառուցման նրա մեծ ու կոնկրետ գործերում, ընդհանուր թշնամու՝ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։

«Կոմունիստները,— գրում է «Պրավդան»,— բոլոր սովետական մարդիկ մարքսիզմ-լենինիզմին հավատարմությունը, օպորտունիզմի բոլոր ձևերի նըկատմամբ լենինյան անհաշտությունը, սոցիալիստական համագործակցության երկրների միասնությունն ու եղբայրական համագործակցությունը, համաշխարհային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման համախմբումը համարում են խաղաղության, դեմոկրատիայի, ազգային ան- կախության և սոցիալիզմի, համայն մարդկության պայծառ ապագայի՝ կո- մունիզմի ճանապարհին նվաճվելիք նոր հաղթանակների երաշխիքը»։

Այժմ, երբ համաշխարհային սոցիալիզմի ու համաշխարհային իմպերիալիզմի միջև անզիջում պայքար է ընթանում, սոցիալիզմի լագերի, որպես ար- դիականության բոլոր ռևոլյուցիոն ուժերի հենակետի ամրապնդումը, այդ լա- գերի երկրների սերտ համագործակցության պահպանումը հանդիսանում է եղ- բայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների ինտերնացիոնալ սրբազան պարտականությունը։

---

Ա. ԴԱՎԹՅԱՆ

# ԸՆԴԴԵՄ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԿԵՂԾԱՐԱՐՆԵՐԻ

«Արթնացիր, Ամերիկա՛։ Բացիր աչքերդ կոմունիզմի վտանգի հանդեպ կամ մի գեղեցիկ առավոտ դու կարող ես առհասարակ չարթնանալ»,— այսպիսի բոթագույժ կոչով լույս տեսավ «Նյու-Յորք Թայմս» թերթի 1961 թ. նոյեմբերի 3-ի առավոտյան համարը։

Սակայն այս դեպքը ԱՄՆ-ում բացառություն չէ, այլ իմպերիալիզմի պրոպագանդիստական սովորական տրյուկներից մեկը։

Մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կենսահաստատությունը, որը համաշխարհային մասշտաբով նորանոր դիրքեր է նվաճում, միջազգային կոմունիստական շարժման հաղթարշավը, սոցիալիստական լագերի երկրների ակնառու նվաճումները, գաղութային սիստեմի փլուզումը իմպերիալիստներին ստիպում է դեն նետել գաղափարական պայքարի բոլոր շղարշները և դիմել բացահայտ կովի զենքին։

«Իմպերիալիզմի գաղափարական-քաղաքական գլխավոր զենքը,— ասված է պարտիայի ծրագրում,— ճակակոմունիզմն է, որի հիմնական բովանդակությունն է սոցիալիստական կարգերը զրպարտելը, կոմունիստական պարտիաների քաղաքականությունն ու նպատակները, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը կեղծելը»։

Սոցիալիզմի և կոմունիզմի, խաղաղության և դեմոկրատիայի ուժերի դեմ իր գաղափարական պայքարում միջազգային ռեակցիան կարևորագույն տեղ է հատկացնում պատմական գիտությանը։ Պաշտոնական տվյալներով արտասահմանյան պրոպագանդային ԱՄՆ-ը տարեկան հատկացնում է կես միլիարդ դոլար։ Այդ գումարի զգալի մասը ծախսվում է պատմական-կեղծարարական գրականության ստեղծման և տարածման վրա։ Այդ նպատակով հսկայական գումարներ են ծախսվում նաև երկրի ներսում՝ ԱՄՆ-ում։ Այժմ ԱՄՆ-ում գործում են 150 հետազոտական կենտրոններ, որոնք զբաղվում են Սովետական Միության և կոմունիստական պարտիայի պատմության ուսումնասիրությամբ։ Նման «գիտահետազոտական աշխատանք» և ՍՍՌՄ պատմության դասավանդումը տարվում են ԱՄՆ-ի գրեթե բոլոր խոշոր համալսարաններում։ Այնտեղ գոյություն ունեն սովետական էկոնոմիկայի ուսումնասիրման 40, սովետական գրականության՝ 170, ՍՍՌՄ արտաքին քաղաքականության՝ 23 ամբիոններ։

Իմպերիալիզմի միջնաբերդի՝ ԱՄՆ-ի և մյուս իմպերիալիստական պետությունների՝ Անգլիայի, ԳՖՌ-ի, Ֆրանսիայի, Թուրքիայի և այլ երկրների խոշոր մոնոպոլիաները առատորեն ֆինանսավորում են զանազան «հետազոտա-

կան կենտրոնների» ստեղծումն ու նրանց աշխատանքը, խոշոր պարգևներ են սահմանում գիտության այն ռեակցիոներների համար, որոնց աշխատություններում ՍՍՌՄ և սոցիալիզմի լագերի մյուս երկրների պատմության կեղծարարությունն առավել մեծ չափերի է հասնում։ Դրամական խոշոր պարգևներ և անգամ լաուրեատի կոչում են ստանում այն աշխատությունների հեղինակները, որոնցում «մեծ բիզնեսի» տերերը և մոնոպոլիաները պատկերվում են որպես երկրի «շարժիչ ուժ»։ Իմպերիալիզմի ջատագովությունը հակակոմունիզմի հակառակ երեսն է, «իմպերիալիզմի լաուրեատների»՝ բուրժուական պատմաբանների հոգատարության կարևորագույն առարկան։

Կապիտալիստական մի շարք երկրներում հսկայական գումարներ են վատնում սոցիալիստական լագերի վիթխարի նվաճումները վատաբանելու նպատակով։

Արդի ռեակցիոն բուրժուական պատմագրության, մասնավորապես «սովետագիտության», լեյտմոտիվն այն է, որ ՍՍՌՄ բոլոր ժողովուրդները, հատկապես ազգային ռեսպուբլիկաները բռնությամբ են սովետականացվել, որ նրանք սուվերեն չեն և հանդիսանում են «բոլշևիկյան Ռուսաստանի գաղութները», որ կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականությունը ցարիզմի գաղութային քաղաքականության շարունակությունն է և այլն։

Ազգային հարցի լուծումը ՍՍՌՄ-ում և նրա օրինակի ուժը գաղութակալության լծից ազատագրված և դեռևս չազատագրված ժողովուրդների վրա իր դեմ է հանում մեռնող իմպերիալիզմի և նրա սպասարկուների զայրույթը։

ՍՍՌՄ Միութենական ռեսպուբլիկաների սուվերենությունը ժխտող բուրժուական պատմաբանների մոտ, ամենից առաջ, աչքի է զարնում ՍՍՌՄ-ի՝ որպես միասնական տնտեսական օրգանիզմի և սուվերեն ազգային ռեսպուբլիկաների քաղաքական սերտ դաշինքի փաստի անտեսումը։ Նրանք Միութենական ռեսպուբլիկաների սուվերենության հարցին մոտենում են ֆեդերացիայի մեջ չմտնող պետությունների չափանիշով։

Հանրահայտ է, որ ամեն մի դաշինք, միություն ենթադրում է նրա մեջ մտնող կողմերի իրավունքների միահյուսում։ Սակայն, եթե, օրինակ, Անգլիայի գաղութային տիրապետության և «Ազգերի Բրիտանական համագործակցության» մեջ ոտնահարվում են գաղութների և կախյալ երկրների շահերը՝ հօգուտ անգլիական իմպերիալիզմի, ապա սովետական ազգերի եղբայրական համագործակցության մեջ ընդհանուր-միութենական շահերը սերտորեն համակցվում են առանձին սովետական ռեսպուբլիկաների կենսական շահերին։

Կամավոր կերպով մտնելով մեկ միության մեջ, սովետական ազգային ռեսպուբլիկաները որոշ հարցերի լուծումը (օրինակ, արտաքին առևտուրը, դրամական և վարկային սիստեմի ղեկավարությունը, երկրի զինված ուժերի ղեկավարումը և այլն), որոնք նախատեսված են ՍՍՌՄ կոնստիտուցիայով (հոդված 14), կամովի կենտրոնացրել են Միության օրգանների ձեռքում։ Այդ սահմաններից դուրս, ինչպես նշված է կոնստիտուցիայի 15-րդ հոդվածում, «յուրաքանչյուր Միութենական ռեսպուբլիկա իրականացնում է պետական իշխանությունն ինքնուրույնաբար»։

Միութենական ամեն մի ռեսպուբլիկա, որպես Սովետական Միության իրավահավասար անդամ և սուվերեն պետական միավոր, մի կողմից՝ լուծում է ռեսպուբլիկայի սահմաններում իր իրավասությանը ենթակա բոլոր տեսակի հարցերը, մյուս կողմից՝ ակտիվորեն մասնակցում է ամբողջ Միության մաս-



տաբով պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության կարևորագույն բոլոր հարցերի քննարկմանը։

Սովետական ռեսպուբլիկաների սուվերենությունը բնորոշվում է ամեն մի պետական միավորմանը հատուկ թե արտաքին հատկանիշներով և թե նրա գործունեության բովանդակությունը կազմող ռեալ՝ սահմանադրական, օրենսդրական, դիվանագիտական, վարչական և այլ կարգի ակտերով։

Յուրաքանչյուր Միութենական ռեսպուբլիկա ունի իր գերբը, դրոշը, մայրաքաղաքը, հիմնը՝ իրենց սուվերենության սիմվոլները։ Նրանք ունեն իրենց պետական լեզուն, իրենց տերիտորիան՝ սուվերենության նյութական հիմքը, պետական ինքնուրույնության ամենաակնառու վկայությունը, ամեն մի պետության գոյության ու սուվերենության օբյեկտիվ պայմանը։ ՍՍՌՄ կոնստիտուցիայի 18-րդ հոդվածում սահմանված է, որ ՍՍՌՄ պետական օրգաններն իրավունք չունեն փոփոխության ենթարկել ռեսպուբլիկաների տերիտորիաները՝ առանց նրանց համաձայնության։

Ոչ մի պետություն չի կարող կոչվել անկախ և սուվերեն, եթե նա չունի իր քաղաքացիությունը։ Սովետական ռեսպուբլիկաների Գերագույն սովետներն իրենք են շնորհում քաղաքացիության իրավունքը։ Այդպես է տեղի ունենում, օրինակ, սփյուռքահայ բազմաթիվ այն աշխատավորներին ՍՍՌՄ քաղաքացիություն շնորհելու պրոցեսը, որոնք սովետական կառավարության հոգատարության շնորհիվ վերադառնում են մայր Հայաստան։

Սովետական ռեսպուբլիկաների սուվերենությունն ապահովվում է նրանց տրվող բազմաթիվ այլ, որոշակի իրավական երաշխիքներով։

Միութենական ռեսպուբլիկաների ռեալ, ոչ ձևական սուվերենության արտահայտություն է այն փաստը, որ նրանցից յուրաքանչյուրն ունի իր կոնստիտուցիան՝ ռեսպուբլիկայի շրջանակներում գործող հիմնական օրենքը, որն ընդունում է ամեն մի ռեսպուբլիկայի Գերագույն սովետը և որը հաստատման ենթակա չէ այլևս ոչ մեկի, այդ թվում ՍՍՌՄ վերադաս օրգանների կողմից։ Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա ունի իր ինքնուրույն սահմանադիր իշխանությունը, ինքն է մշակում իր կոնստիտուցիան՝ համաձայն ՍՍՌՄ կոնստիտուցիայի, և ինքն էլ հետևում է նրա կենսագործմանը։ Նա ունի իր պետական օրգանները՝ ռեսպուբլիկայի սուվերենության կրողն ու նրա գերագույն իշխանությունը՝ Գերագույն սովետը, որից բարձր իշխանություն ռեսպուբլիկայի սահմաններում գոյություն չունի, նրա նախագահությունը, Մինիստրների սովետը, մինիստրությունները և այլն։

Ռեսպուբլիկայում է մշակվում նրա շրջանակներում գործող օրենսդրությունը, ստեղծվում դատական օրգանները, այդ թվում ռեսպուբլիկայի գերագույն դատարանը։ Արդարադատության սեփական օրգանների առկայությունը միութենական ռեսպուբլիկաներում՝ նրանց սուվերենության իրավական ապացույցներից մեկն է։ Ռեսպուբլիկայի արդարադատության օրգաններն անկախ են և ենթարկվում են միայն օրենքին։ Նրանք վճիռները կայացնում են միայն իրենց ռեսպուբլիկայի անունից։

Ժողովրդական տնտեսության և ֆինանսական հարցերի բնագավառում ռեսպուբլիկաներն իրականացնում են ժողովրդատնտեսական պլանի հաստատումը, բյուջեի տնօրինումը, ՍՍՌՄ օրենսդրության հիման վրա պետական և տեղական հարկերի սահմանումը, ապահովագրական և խնայդրամարկղների, բանկային գործերի, ռեսպուբլիկական ենթակայության արդյունաբերական,

գյուղատնտեսական և առևտրական ձեռնարկությունների ու կազմակերպությունների կառավարումը, միութենական-ռեսպուբլիկական ենթակայության արդյունաբերության և շինարարության օբյեկտների նկատմամբ ղեկավարությունը, բնակարանային և կոմունալ շինարարության, ռեսպուբլիկական ենթակայության կապի ու տրանսպորտի նկատմամբ ղեկավարությունը և այլն։

Սոցիալ-կուլտուրական շինարարության բնագավառում ռեսպուբլիկաներն իրականացնում են գիտական, կուլտուրայի, լուսավորական, առողջապահության, սոցիալական ապահովության, ֆիզկուլտուրայի հիմնարկների և սպորտի գործերի ղեկավարությունը։

Միութենական ռեսպուբլիկաներն իրենք են կատարում իրենց տերիտորիայի շրջանակներում վարչական բաժանումները, ստեղծում են տնտեսական շրջաններ։ Միաժամանակ նրանք տեղերում հսկում են ՍՍՌՄ օրենքների կատարմանը, սովետական օրինականության պահպանմանը։ Ռեսպուբլիկայի այն քաղաքացիներին, որոնք դատված են, ներում շնորհում է ռեսպուբլիկայի Գերագույն սովետը։

ՍՍՌՄ ազգային ռեսպուբլիկաների իրավահավասարության և նրանց սուվերենության մասին է վկայում նաև այն փաստը, որ նրանք մասնակցում են ՍՍՌՄ պետական իշխանության օրգանների կազմավորմանը և անմիջականորեն ներկայացնում են դրանք՝ իրենց ներկայացուցիչների միջոցով։

Լինելով սովետական ֆեդերացիայի իրավահավասար անդամը, միութենական ռեսպուբլիկան իրավունք ունի պահանջելու, որպեսզի հրավիրվի ՍՍՌՄ Գերագույն սովետի արտակարգ սեսիա, անցկացվի համամիութենական, համաժողովրդական հարցում (ռեֆերենդում)։ Ռեսպուբլիկաների Գերագույն սովետի նախագահության նախագահները միաժամանակ Միության Գերագույն սովետի նախագահության նախագահի տեղակալներն են և անհրաժեշտության դեպքում լիիրավ կերպով փոխարինում են նրան։

Բացի այդ, ռեսպուբլիկայի բազմաթիվ ներկայացուցիչներ, որպես ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատներ մասնակցում են նրա սեսիաներում ՍՍՌՄ միջազգային ու ներքին կյանքի բազմաթիվ հարցերի լուծմանը։ Յուրաքանչյուր ռեսպուբլիկա, անկախ նրա ազգաբնակչության թվից, Ազգությունների սովետ է ուղարկում 25 դեպուտատ։

Սովետական ռեսպուբլիկաների, կամավորության և հավասարության հիման վրա մեկ միության մեջ մտնելն արդեն իսկ վկայությունն է նրանց ազատության և սուվերենության։ Վերջինս իր արտահայտությունն է գտնում նաև կոնստիտուցիայի 17-րդ հոդվածով նրանց վերապահվող՝ միությունից դուրս գալու իրավունքի մեջ, որն արձանագրված է ոչ միայն ՍՍՌՄ, այլև յուրաքանչյուր ռեսպուբլիկայի կոնստիտուցիայի մեջ։ Նման բանի մենք չենք հանդիպի բուրժուական ոչ մի ֆեդերացիայի կոնստիտուցիայում։ Պատճառն այն է, որ դրանք ոչ թե կամավոր միություններ են, այլ բռնի անեքսիայի հետևանք։ Օրինակ, ԱՄՆ-ում նահանգներն ստեղծվեցին 1861—1865 թթ. քաղաքացիական պատերազմի հետևանքով, ոչ թե ազգային կամ այլ հատկանիշով, այլ այս կամ այն տերիտորիան գրավելուն համեմատ։ Նույն կերպ՝ 1847 թ. ստեղծվեց Շվեյցարական կոնֆեդերացիան։

Սովետական ռեսպուբլիկաների սուվերենության մյուս կարևորագույն ապացույցը՝ օտար պետությունների հետ անմիջական հարաբերությունների մեջ մտնելու ՍՍՌՄ կոնստիտուցիայով նրանց վերապահված իրավունքն է։



Սովետական Միութենական ռեսպուբլիկաները հանդիսանում են միջազգային իրավունքի ինքնուրույն սուբյեկտներ և ակտիվորեն մասնակցում են ռեսպուբլիկայի, ամբողջ Միության արտաքին քաղաքականության և միջազգային կարևորագույն հարցերի լուծմանը։ ՍՍՌՄ կառավարության հետևողական պնդմամբ Ուկրաինական և Բելոռուսական ՍՍՌ-ները դարձան ՄԱԿ-ի անդամներ։ Նրանք միաժամանակ բազմաթիվ միջազգային կազմակերպությունների անդամներ են և այս տեսակետից ավելի լայն հնարավորություններ ունեն։ Մյուս սովետական ռեսպուբլիկաները ՄԱԿ-ի գործունեությանը մասնակցություն են ցույց տալիս ՍՍՌՄ դելեգացիայում իրենց ներկայացուցիչների միջոցով։ Վերջին տարիներս, օրինակ, ՍՍՌՄ դելեգացիաների կազմում ՄԱԿ-ի սեսիաներին մասնակցել են ՌՍՖՍՌ-ի, Հայկական (ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի 13-րդ և 14-րդ սեսիաներին), Ղազախական, Լատվիական, Վրացական, Ուզբեկական և սովետական այլ ռեսպուբլիկաների արտաքին գործերի մինիստրները։ Այժմ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XIX սեսիայի սովետական պատվիրակության կազմում է Կիրգիզական ՍՍՌ արտաքին գործերի մինիստր Ս. Բ. Բեգմատովան։

Միութենական ռեսպուբլիկաները ակտիվորեն իրենց ավանդն են ներդնում նաև ընդհանուր խաղաղության պաշտպանության համար մղվող պայքարում, հանդես են գալիս կոնկրետ առաջարկություններով, հայտարարություններով։ Օրինակ, 1956 թ. Եգիպտոսի դեմ Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի ձեռնարկած ագրեսիան կանխվեց ՍՍՌՄ, սոցիալիստական լագերի մյուս երկրների հետ միասին, նաև ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինական, Բելոռուսական, Վրացական, Հայկական, Ադրբեջանական և մյուս սովետական ռեսպուբլիկաների կառավարությունների վճռական դիրքի շնորհիվ։

Միութենական ռեսպուբլիկաները ոչ միայն մասնակցում են միջազգային կարևորագույն հարցերի քննարկմանը, այլ նաև հաճախ դրանց նախաձեռնողներ ու կենտրոններ են դառնում։ Օրինակ, ՄԱԿ-ի որոշումը գերմանական ռազմական հանցագործներին պատժելու մասին ընդունվեց ԲՍՍՌ պատվիրակության առաջարկով։

Անցյալ տարվա ապրիլին Երևանում տեղի ունեցավ ՄԱԿ-ին առընթեր առողջապահության համաշխարհային կազմակերպության սեմինարը, որին մասնակցում էին Անգլիայի, Արգենտինայի, Շվեյցարիայի, ԳՖՌ-ի, Ճապոնիայի, Հարավսլավիայի և այլ երկրների բժշկական աշխատողներ։ Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների համերաշխության երկրորդ կոնֆերանսը անցկացվեց Բաքվում, 1964 թ. մայիսին։ Այստեղ էին ժամանել Ասիայի և Աֆրիկայի 18 երկրներից եկած հյուրեր. կոնֆերանսը կարևոր դեր խաղաց Աֆրիկա-ասիական համերաշխության շարժումն ամրապնդելու գործում, ինտերնացիոնալիզմի գաղափարների տարածման համար մղվող պայքարում։

Միութենական ռեսպուբլիկաները, օգտագործելով իրենց սուվերեն իրավունքները, իրենց արտաքին գործերի մինիստրությունների, արտասահմանյան երկրների հետ բարեկամության և կուլտուրական կապերի ընկերությունների, ակադեմիաների, տնտեսական կազմակերպությունների միջոցով բազմակողմանի դիվանագիտական, տնտեսական, կուլտուրական և գիտական կապեր են հաստատել սոցիալիստական լագերի երկրների, կապիտալիստական և չեզոք երկրների հետ։ ԲՍՍՌ-ն մասնակից է շուրջ 80 միջազգային պայմանագրերի, համաձայնագրերի, կոնվենցիաների։

Լայն միջազգային գործունեություն է ծավալել Ադրբեջանական ՍՍՌ-ն, որի արդյունաբերական արտադրանքի 280 տեսակներ արտահանվում են աշխարհի 56 երկրներ։ Ադրբեջանի ժողտնտխորհի կազմակերպությունները միայն 1959—1961 թթ. մասնակցել են 54 միջազգային ցուցահանդեսների ու տոնավաճառների։ Ադրբեջանում կրթություն են ստանում աշխարհի 24 երկրների ուսանողներ։ Վրացական ՍՍՌ-ն իր արդյունաբերության արտադրանքն արտահանում է աշխարհի 50-ից ավելի երկրներ։ Հայկական ՍՍՌ-ն տնտեսական կապերի մեջ է աշխարհի 57 երկրների հետ, որոնց մատակարարում է իր արդյունաբերական արտադրանքի 100 տեսակներ։ Նախկին հետամնաց Կիրգիզական ՍՍՌ-ն, այժմ իր արդյունաբերության արտադրանքն է ուղարկում աշխարհի 34 երկրներ, այդ թվում՝ Ֆրանսիա, Բելգիա, Չեխոսլովակիա, Ալժիր և այլն։

Սովետական իշխանությունը ոչ միայն լայն սուվերեն իրավունքներ է վերապահում միութենական ռեսպուբլիկաներին, այլ նաև ռեալ երաշխիքներ։ ՍՍՌՄ-ը պաշտպանում է բոլոր միութենական ռեսպուբլիկաների սուվերենությունը հնարավոր հարձակումներից։

Սովետական ռեսպուբլիկաների սուվերենության կարևորագույն երաշխիքն է Սովետական Միության կոմունիստական պարտիայի ղեկավարությունը ՍՍՌՄ քաղաքական կյանքում և տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Պարտիայի վարած լենինյան ազգային քաղաքականությունն ուղղված է բոլոր ազգային ռեսպուբլիկաների սուվերեն իրավունքների հարաճուն ընդլայնմանը, մի բան, որ հակադարձ համեմատական է կապիտալիստական ֆեդերատիվ երկրների կյանքում տեղի ունեցող պրոցեսին։ Օրինակ՝ 1954 թ. դեկտեմբերին ԱՄՆ-ում ստեղծվեց հատուկ կոմիտե, որն ուսումնասիրելու էր ամերիկյան ֆեդերացիայի պրոբլեմները։ 1956 թ. այդ կոմիտեի կողմից պրեզիդենտին ներկայացրած զեկուցագրի եզրակացություններից մեկն էլ այն էր, որ նահանգների իրավասությունը, հատկապես օրենսդրության բնագավառում, անընդհատ սահմանափակվում է ԱՄՆ-ի ֆեդերալ կառավարության կողմից։

Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը հետպատերազմյան ժամանակաշրջանում, մի շարք միջոցառումներ ձեռնարկեցին և իրականացրին շատ բնագավառներում միութենական ռեսպուբլիկաների իրավասության շրջանակներն ընդլայնելու, ՍՍՌՄ կյանքի և գործունեության բոլոր ասպարեզներում նրանց դերը էլ ավելի մեծացնելու ուղղությամբ։

Ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը և նրանց նախաձեռնության բարձրացումը նույնպիսի բարերար ազդեցություն ունեցավ նաև նրանց կյանքի այլ բնագավառներում։ Այժմ արդեն միութենական ռեսպուբլիկաների պետական իշխանության և կառավարման օրգաններն իրենք են կազմում ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման պլանները, ելնելով միաժամանակ համապետական շահերից։ ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1957 թ. օգոստոսի 29-ի «Տնտեսական և կուլտուրական շինարարության մի քանի հարցերի լուծումը լրացուցիչ կերպով միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների սովետներին հանձնելու մասին» որոշման հիման վրա եռամսյակի պլաններից ավելի արտադրած լայն սպառման արդյունաբերական ապրանքները և այլ բազմաթիվ արտադրանքի տեսակներ մնում են ռեսպուբլիկայի տնօրինության տակ։

1959 թ. հոկտեմբերի 30-ի «ՍՍՌ Միության և Միութենական ռեսպուբլի-



կաների բյուջետային իրավունքների մասին» օրենքով և նրան նախորդած մի շարք որոշումներով զգալիորեն ընդլայնվեցին միութենական ռեսպուբլիկաների ֆինանսական գործունեության շրջանակները։ Այդ օրենքի համաձայն Միութենական ռեսպուբլիկաները, ելնելով ՍՍՌՄ ժողովրդատնտեսական պլանից և ռեսպուբլիկաների պլաններից, իրենք են կազմում իրենց բյուջեների նախագծերը։ Ռեսպուբլիկաների բյուջեները հաստատվում են ռեսպուբլիկաների Գերագույն սովետների կողմից։

Ազգային ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական շինարարության պահանջները բազմակողմանիորեն հաշվի առնելու և բավարարելու գործում հսկայական է պարտիայի XX համագումարի ցուցումով Ազգությունների սովետի տնտեսական հանձնաժողովի ստեղծման նշանակությունը։ Այն միջռեսպուբլիկական օրգան է, որն ընտրվում է ՍՍՌՄ Գերագույն սովետի կողմից, յուրաքանչյուր ռեսպուբլիկայից՝ 2 հոգի։ Պետական բյուջեները քննարկելիս տնտեսական հանձնաժողովը երկրի բոլոր ազգերի և ազգությունների շահերից ելնելով կոնկրետ առաջարկություններ է մտցնում և շտկումներ է կատարում բյուջեների նախագծերում։

Ազգությունների սովետի տնտեսական հանձնաժողովների ստեղծումը լիովին բխում է լենինյան ազգային քաղաքականության ակունքներից։

Վերջին տարիներս Միութենական ռեսպուբլիկաներն զգալիորեն լայն իրավունքներ ստացան նաև օրենսդրության բնագավառում։

ՍՍՌՄ չորրորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ սեսիան 1957 թ. փետրվարի 11-ին որոշեց Միութենական ռեսպուբլիկաների իրավասությանը հանձնել Միութենական ռեսպուբլիկաների դատարանակազմության և դատավարության վերաբերյալ օրենսդրությունը, ինչպես նաև քաղաքացիական և քրեական օրենսգրքերի ընդունումը։

Միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման ուղղությամբ պարտիայի և սովետական կառավարության միջոցառումների ամբողջ կոմպլեքսը, որն այստեղ բերել հնարավոր չէ, ելնում է այն բանից, որ մի կողմից՝ Միութենական ռեսպուբլիկաներում տեղի են ունեցել սոցիալ-տնտեսական այնպիսի տեղաշարժեր, այնպիսի աննախընթաց վերելք, որ բոլոր ռեսպուբլիկաներն ի վիճակի են լուծելու ոչ միայն տեղական, այլ նաև Միության ամբողջ կյանքին վերաբերող բազմաթիվ հարցեր։ Մյուս կողմից, այդ նշանակում է, որ Միութենական ռեսպուբլիկաների վարած քաղաքականությունը լիովին համընկնում է պարտիայի վարած ազգային քաղաքականությանը և առանձին ազգային ռեսպուբլիկաների շահերն ու ամբողջ Միության շահերը ներդաշնակ կերպով զուգակցվում են իրար։

Ընդհանուր միութենական և առանձին ռեսպուբլիկաների շահերի զուգակցման պայմաններում, պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ բոլոր ազգային ռեսպուբլիկաներն իրենց տնտեսության և կուլտուրայի զարգացման բնագավառում աննախընթաց վերելքի են հասել։ Այս տեսակետից զավեշտական է բուրժուական շատ պատմաբանների ուղղակի անեկդոտի հասնող այն պնդումը, թե՝ եթե սովետական ռեսպուբլիկաներն ինքնուրույն են, հապա ինչո՞ւ Միության կազմից դուրս չեն գալիս. «Սովետական կոնստիտուցիան երաշխավորում է դուրս գալու (Միությունից—Ա. Դ.) իրավունք,— գրում է Վ. Կոլարցը,— բայց ոչ մի ռեսպուբլիկա-

չի օգտվել դրանից» («Handbuch des Weltkommunismus», Freiburg, Munchen. *1958*, s. *266*)։ Զուր հույսեր են, պարոն Կոլարց։

*Պաշտպանելով սովետական ռեսպուբլիկաների պատիվը Կանադայի պրեզիդենտ Դիֆենբեյկերի անվայել հարձակումներից, ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XV սեսիայում Ուկրաինական ՍՍՌ պատվիրակության ղեկավար ընկ. Ն. Վ. Պոդգոռնին Ուկրաինական ՍՍՌ-ի օրինակով ցույց տվեց պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հոյակապ արդյունքները։*

*Սովետական ընթերցողներին, ինչպես նաև կապիտալիստական աշխարհի անկանխակալ կարծիքի ընթերցողներին հայտնի է, որ ոչ պակաս հաջողությունների են հասել նաև միութենական մյուս ռեսպուբլիկաները, ամբողջ աշխարհին ցուցադրելով դարավոր հետամնացությունից դեպի գիտության, տեխնիկայի, կուլտուրայի և ժողովրդական մասսաների բարեկեցության բարձր մակարդակին հասնելու ամենակարճ ուղին։*

*Դեռևս Ֆ. Էնգելսն իր ժամանակին ցույց է տվել, որ բուրժուազիայի էությունը, նրա գոյության պայմաններն այնպիսիք են, որ նրան հատուկ է բոլոր ապրանքները կեղծելը, նա կեղծում է նաև պատմությունը։ Չէ՞ որ բուրժուական հասարակարգում «բոլորից լավ վարձատրվում է այն երկը, որի մեջ պատմության կեղծումը ամենից ավելի է համապատասխանում բուրժուազիայի շահերին»* (Архив К. Маркса и Ф. Энгельса, т. X, М. 1948 г., стр. 104)։



# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

**ՎԵՑԵՐՈՐԴ ԹԵՄԱ**

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՄԿՊ ԾՐԱԳՐՈՒՄ

**ПОЛИТИЧЕСКОЕ САМООБРАЗОВАНИЕ**

*Այս թեման բավական ընդարձակ է։ Եվ իրոք, չէ որ սոցիալիստական պետության մասին ուսմունքի ստեղծագործական զարգացումը ՍՄԿՊ ծրագրում պատկերացնելու համար անհրաժեշտ է, թեկուզև ընդհանուր գծերով, ուսումնասիրել այդ ուսմունքը ամբողջովին և այնուհետև ցույց տալ պարտիայի ծրագրում եղած այն նորը, ինչ կա տվյալ հարցի շուրջը։ Ընդ որում, խնդիրն այն է, որ սոցիալիստական պետության մասին մարքս-լենինյան ուսմունքը ըմբռնվի որպես մի ներդաշնակ, ամբողջական ուսմունք, որը հիմնըված է հասարակական կյանքի դիալեկտիկա-մատերիալիստական մեկնաբանության վրա։*

*Խորհուրդ է տրվում սեմինարներում, տեսական կոնֆերանսներում քննարկել հետևյալ հիմնական հարցերը.*

1. Պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտությունը։ Պրոլետարական դիկտատուրան նոր, սոցիալիստական տիպի պետություն է։

2. Պրոլետարիատի դիկտատուրայի վերածումը համաժողովրդական պետության՝ օրինաչափ պրոցես է։

3. Կոմունիզմը կառուցում է ժողովուրդը, ժողովրդի համար ամենադեմոկրատական ուղիով։

*Այս թեման ուսումնասիրվում է ոչ միայն սեմինարներում, այլև այնպիսի խմբակներում, ուր, սովորաբար, պարապում են տեսականորեն պակաս պատրաստականություն ունեցողները։ Խորհուրդ է տրվում խմբակներում զրույցն անցկացնել հիմնականում երկու պրոբլեմների շուրջ՝ պրոլետարիատի դիկտատուրայի վերածումը համաժողովրդական սոցիալիստական պետության, կոմունիզմի շինարարությունը և սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը։ Ընդ որում, պրոպագանդիստը նկատի ունենալով իր խմբակի կազմի առանձնահատկությունները, կարող է նախօրոք հիշյալ պրոբլեմները բաժանել կոնկրետ հարցերի, դրանք հնարավորին չափ ավելի մատչելի դարձնել խմբակի յուրաքանչյուր անդամին։ Ցանկալի է, որ պրոպագանդիստը զրույցի ընթացքում պատասխանի նաև ունկնդիրների այն հարցերին, որոնք հետաքրքրում են բոլորին ու նպաստում թեմայի ավելի խոր յուրացմանը։ Ներքոշարադրյալ նյութերը, այս կամ այն ձևով, կարող են օգտագործել նաև խմբակների ղեկավարները։*

### ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԴԻԿՏԱՏՈՒՐԱՅԻ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆԸ։ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԴԻԿՏԱՏՈՒՐԱՆ ՆՈՐ, ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԻՊԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ Է

*Էականը, որ պետք է ամենից առաջ յուրացվի տվյալ հարցը ուսումնասիրելիս, հետևյալն է. ինչպիսի պատմական պայմաններում և ինչպիսի հանգամանքներում է ծնունդ առնում պրոլետարիատի դիկտատուրան, ինչու է պրոլե-*

տարական դիկտատուրան նոր տիպի պետություն, որն է պրոլետարիատի դիկտատուրայի հիմնական դերը, որոնք են նրա գլխավոր խնդիրները: Հիշյալ հարցերի սպառիչ պատասխանները ունկնդիրները կարող են ստանալ միայն այն դեպքում, եթե ինքնուրույն կարդան ու խորապես ուսումնասիրեն մարքսիստական գրականությունը՝ Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները: Հատկապես կարևոր է մանրազնին ուսումնասիրել Մարքսի ու Էնգելսի Կոմունիստական պարտիայի մանիֆեստի համապատասխան բաժինները, ուր առաջին անգամ արտահայտված է պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը, Պետություն և ռևոլյուցիա աշխատությունը, որտեղ Լենինը տալիս է պետության մասին Մարքսի ու Էնգելսի հայացքների սիստեմատիկ շարադրանքը, պատմական նոր պայմաններում զարգացնում պետության ու ռևոլյուցիայի մասին ուսմունքը, ինչպես և Լենինի Պետության մասին դասախոսությունը: Բացի հարուստ տեսական բովանդակությունից այդ դասախոսությունը ռևոլյուցիոն տեսության բավական բարդ պրոբլեմների կենդանի, հանրամատչելի շարադրանքի մի փայլուն օրինակ է: Հատկապես այս ելույթում է Լենինը պետության հարցը անվանել ամբողջ քաղաքականության հիմնական, արմատական հարցը, ընդգծել այդ հարցին յուրովի մոտենալու հմտության կարևոր նշանակությունը: «Միայն այն ժամանակ, երբ դուք կսովորեք ինքնուրույնաբար գլուխ հանել այս հարցից,— ասում է նա,— այն ժամանակ միայն դուք կարող եք ձեզ բավականաչափ հաստատ համարել ձեր համոզմունքներում, և դրանք բավականաչափ հաջող պաշտպանել ում հանդեպ էլ ուզում է լինի և երբ էլ ուզում է լինի» (Երկեր, հ. 29, էջ 580): Այս դրույթը առանձնապես կարևոր է նրանով, որ բացահայտում է լենինյան մոտեցման էությունը տեսության ուսումնասիրմանն ընդհանրապես:

Պետության մասին մարքսիստական աշխատություններում ուշադրություն է նվիրվում հասարակական երևույթների վերլուծության պատմական հայացքի անհրաժեշտությանը: Լենինը սովորեցնում է, որ այս կամ այն հարցին գիտական տեսանկյունից մոտենալ նշանակում է՝ «Չմոռանալ հիմնական կապը, յուրաքանչյուր հարցին նայել այն տեսակետից, թե ինչպես է որոշ երևույթ պատմության մեջ ծագել, իր զարգացման ընթացքում ինչ գլխավոր էտապներ է անցել այդ երևույթը, և նրա այդ զարգացման տեսակետից նայել, թե տվյալ բանն ինչ է դարձել այժմ» (նույն տեղը, էջ 582): Ինքը՝ Լենինը հետևողականորեն հենվում էր մատնանշված մեթոդոլոգիական պահանջների վրա ինչպես նախասոցիալիստական պետության զարգացման հարցը լուսաբանելիս, այնպես էլ պրոլետարիատի դիկտատուրայի էության, նրա հիմնական խնդիրների վերլուծության ժամանակ: Դրանում կարելի է հեշտությամբ համոզվել կարդալով Պետություն և ռևոլյուցիա գիրքը և Պետության մասին դասախոսությունը:

Պետության մասին թեմայի ուսումնասիրման մի քանի առանձնահատկությունների բնութագրումից հետո այժմ քննարկենք, թե ինչպիսի պատմական պայմաններում հանդես եկավ պրոլետարիատի դիկտատուրան: Այս հարցի ուսումնասիրությունը, սովորաբար, մեծ դժվարություններ չի առաջացնում, քանի որ մեր գրականության մեջ պրոլետարիատի դիկտատուրայի հարցը մանրակրկիտ լուսաբանված է:

Գոթայի ծրագրի քննադատություն աշխատության մեջ Մարքսը գիտության և ռևոլյուցիոն պրակտիկայի համար հույժ կարևոր հետևություն արեց այն մասին, որ կապիտալիստական ու կոմունիստական հասարակությունների միջև ընկած է մի ժամանակաշրջան, երբ առաջինը ռևոլյուցիոն ձևով վերաճում է երկրորդին: Այդ ժամանակաշրջանին համապատասխանում է նաև անցման քաղաքական ժամանակաշրջան: Այդ ժամանակաշրջանի պետությունը կարող է լինել միայն պրոլետարիատի ռևոլյուցիոն դիկտատուրան (տե՛ս, Կ. Մարքս, Գոթայի ծրագրի քննադատություն, Հայպետհրատ, 1941, էջ 49):

Մարքսիզմի կլասիկները սովորեցնում են, որ կոմունիստական ու բանվորական պարտիաների ղեկավարությամբ բանվոր դասակարգի և նրա շուրջը համախմբված քաղաքի ու գյուղի աշխատավորական մասսաների կողմից



իրագործվող սոցիալիստական հեղաշրջումը հանգեցնում է պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն ձևի հաղթանակին: Պատմական փորձը լրիվին հաստատում է այդ: Միջազգային բանվոր դասակարգի առաջին այդպիսի հաղթանակը Փարիզի կոմունան էր, որը ծագեց ֆրանսիական պրոլետարիատի հերոսական պայքարի շնորհիվ XIX դարի երկրորդ կեսին: Էնգելսն այդ հաղթանակի մասին ոգեշնչված գրել է. «Նայեցեք Փարիզի կոմունային: Այդ պրոլետարիատի դիկտատուրան էր» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, Հայպետհրատ, 1950, էջ 589): Թեև ֆրանսիական բանվորների կոմունան կարճ ապրեց, այնուհանդերձ, այն ամենախորունկ հետքեր թողեց ռևոլյուցիոն շարժման և պրոլետարիատի գիտակցության վրա:

Մի քանի տասնամյակ անց, 1917 թվականի հոկտեմբերին, պրոլետարիատի դիկտատուրան հաղթանակեց Ռուսաստանում: Սոցիալիստական ռևոլյուցիան նախապատրաստված էր մեր երկրի զարգացման ամբողջ ընթացքով, հասարակության զարգացմամբ իմպերիալիզմի դարաշրջանում և իրականացավ մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո՝ Լենինի ստեղծած կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ: Այդ արդեն Ռուսական պրոլետարիատի, միջազգային բանվոր դասակարգի հաստատուն հաղթանակն էր. այս հաղթանակի հաստատունությունը, ի դեպ, բացատրվում է նաև նրանով, որ մաքսիմալ չափով հաշվի էր առնված Փարիզի կոմունարների փորձը:

Նոր պայմաններում Վ. Ի. Լենինը, ստեղծագործական մարքսիզմի խոշորագույն տեսաբանն ու ռևոլյուցիոն շարժման պրակտիկը, մեծ ներդրում կատարեց պետության մասին Մարքսի ու Էնգելսի ուսմունքի մեջ: Այստեղ, ամենից առաջ, կարևոր է նշել, որ Լենինը բացահայտեց սովետների էությունը և հիմնավորեց դրանց նշանակությունը որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևի, որոնք պատմության մեջ առաջին անգամ ստեղծվել էին Ռուսաստանի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ստեղծագործ ջանքերով: Լենինը հետագայում ձևակերպեց պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը, որի էությունը բանվոր դասակարգի դաշինքն էր գյուղացիության հետ՝ բանվոր դասակարգի ղեկավար դերի պայմաններում: Այդ դաշինքը, ըստ նրա, անհրաժեշտ է կապիտալի լիակատար տապալման, բուրժուազիայի դիմադրության և նրա կողմից վերականգնման փորձերի լիակատար ճնշման նպատակով, սոցիալիզմի վերջնական ստեղծման ու ամրապնդման նպատակով (տե՛ս, Երկեր, հ. 29, էջ 465, 514): Լենինի վիթխարի ծառայությունը պրոլետարական, սոցիալիստական դեմոկրատիայի, որպես պատմության մեջ նմանը չունեցող, բարձրագույն տիպի դեմոկրատիայի մասին, նոր կարգի հաղթանակի համար սոցիալիստական դեմոկրատիայի ստեղծագործական դերի մասին ուսմունքն է:

Պրոլետարիատի դիկտատուրայի պատմական կոչումը, կարճ ասած, այն է, որ նա ամրապնդի ու զարգացնի սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը, ապահովի սոցիալիզմի՝ կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի առաջին փուլի հաղթանակը: Անցման ժամանակաշրջանում, որը, ինչպես մատնանշվել է, վրա է հասնում սոցիալիստական հեղաշրջման իրականացումից հետո, տեղի է ունենում հին հասարակարգի ռևոլյուցիոն վերաճումը նորի, սոցիալիստականի՝ տնտեսական-քաղաքական կյանքի, կուլտուրայի, կենցաղի բնագավառներում, աշխատավորության գիտակցության մեջ խոր փոփոխությունների ու վերափոխումների հիման վրա: Այդ վերափոխումները սովորաբար կատարվում են հին շահագործողական աշխարհի ուժերի ու տրադիցիաների դեմ մղվող սուր, երբեմն դասակարգային անողոք պայքարի պրոցեսում (կախված յուրաքանչյուր երկրի կոնկրետ իրադրությունից և արտաքին պայմաններից): Վերը հիշատակված վերափոխումները իրականացնում է նոր իշխանությունը՝ պրոլետարական դիկտատուրայի պետությունը, ժողովրդի անմիջական մասնակցությամբ: Մեր երկրի, սոցիալիստական մի քանի այլ երկրների փորձը ցույց է տալիս, որ տապալված շահագործողները համառորեն փորձում են վերադարձնել «իրենցից խլված դրախտը», վերականգնել հին կարգերը:

«Ապահովելով սոցիալիզմի՝ կոմունիզմի առաջին փուլի լրիվ ու վերջնական հաղթանակը և հասարակության անցումը կոմունիզմի ծավալուն կառուցմանը, պրոլետարիատի դիկտատուրան կատարեց իր պատմական միսիան և ներքին զարգացման խնդիրների տեսակետից դադարեց ՍՍՌՄ-ում անհրաժեշտ լինելուց։ Պետությունը, որ առաջ եկավ որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետություն, նոր, ժամանակակից փուլում վերածվեց համաժողովրդական պետության, դարձավ ամբողջ ժողովրդի շահերն ու կամքն արտահայտող օրգան» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962, էջ 522—523)։

Ուրեմն, պարտիայի ծրագիրը՝ լիովին համապատասխան սոցիալիստական պետության մասին Մարքսի և Լենինի ուսմունքին, բացահայտում է և կոնկրետացնում պրոլետարիատի դիկտատուրայի պետության գործունեության հիմնական բովանդակությունը (սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի ապահովումը և հասարակության անցումը կոմունիզմի ծավալուն կառուցմանը), որոշում այդ հիմնական բովանդակությունից բխող նրա գործունեության պատմական շրջանակները, համաժողովրդական պետության վերածվելու պայմանները։ (Այդ մասին մանրամասն տես Գ. Գլեզերմանի «Возникновение и сущность общенародного государства» կոնսուլտացիոն հոդվածում. «Политическое самообразование» ամսագիր, 1964, № 12)։

Կյանքը ցույց է տալիս, որ պրոլետարիատի դիկտատուրայի գոյության և սոցիալիստական պետականության պատմական սահմանները ժամանակի տեսակետից չեն համընկնում. պրոլետարիատի դիկտատուրան, իր խնդիրները կատարելուց հետո, դադարեցնում է իր գոյությունը, դադարում անհրաժեշտություն լինելուց, իսկ սոցիալիստական պետականությունը մնում է և նոր պայմաններում բազմակողմանի զարգանում։

Որոշ պրոպագանդիստներ գտնում են, որ պրոլետարիատի դիկտատուրան երկրի ներսում լիովին սպառել է իրեն, իսկ արտաքին աշխարհի նկատմամբ, և ամենից առաջ կապիտալիստական աշխարհի նկատմամբ նա, իբր, դեռևս գոյություն ունի։ Այս, իհարկե, սխալմունք է։ Չի կարելի պետության օրգանապես, փոխադարձորեն կապակցված ու պայմանավորված արտաքին ու ներքին ֆունկցիաներն անջատել իրարից։ Համաժողովրդական պետությունը սովետական բոլոր մարդկանց, ողջ աշխարհում սոցիալիզմի գործի շահերից ելնելով, հաջողությամբ կատարում է ինչպես իր ներքին, այնպես էլ արտաքին ֆունկցիաները։

Սեմինար պարապմունքում համաժողովրդական պետության հարցը քննարկելիս կամ այդ առնչությամբ գրականությունն ինքնուրույն կարդալիս անհրաժեշտ է պարզաբանել այն հանգամանքը, որ պրոլետարիատի դիկտատուրան և համաժողովրդական սոցիալիստական պետությունը առանձնացված, մեկուսացված չեն, դրանք անբաժանելի օղակներ են, մեծ փուլեր՝ սոցիալիստական պետության պատմության մեջ. «Համաժողովրդական պետությունը հակադրված չէ և չի հակադրվում պրոլետարիատի դիկտատուրայի պետությանը, որը երկրում գործում էր սոցիալիստական շինարարության առավել վաղ էտապներում, այլ նրա բնական պատմական շարունակությունն է, այն գլխավորի լիակատար զարգացումը, որը պրոլետարիատի դիկտատուրայի մեջ եղել է հենց սկզբից՝ լայն դեմոկրատիա աշխատավորների համար» (Կոմունիզմ կառուցողների մեծ դրոշը, «Правда», 1 նոյեմբերի, 1964 թ.)։ Նա կատարում է սովետական ողջ ժողովրդի կամքը, պաշտպանում նրա շահերը։ Եթե պրոլետարիատի դիկտատուրայի պետության գլխավոր խնդիրը սոցիալիզմի կառուցումն է, ապա համաժողովրդական պետության հիմնական խնդիրը՝ բանվոր դասակարգի գլխավորությամբ ամբողջ ժողովրդի ուժերի մոբիլիզացումն է ՍՄԿԿ-ի մշակած կոմունիստական հասարակության ստեղծման մեծ ծրագրի իրականացման համար։ Իսկ սոցիալիզմն ու կոմունիզմը, ինչպես հայտնի է, միասնական կոմունիստական ֆորմացիայի փուլերն են, աստիճանները։

Պրոլետարիատի դիկտատուրայի պետության վերածումը համաժողովրդական պետության ոչ թե կամայականորեն «սահմանված» պրոցես է, այլ



սոցիալիզմի պայմաններում բնական հարաճման, համընդհանուր սոցիալիստական դեմոկրատիայի առանձնահատկությունների հարստացման պրոցես, որոնք, ինչպես արդեն ասվել է, բխում են պրոլետարիատի դիկտատուրայի բուն էությունից։ Այսպիսի վերափոխությունը ռեալ իրողություն է դառնում այն ժամանակ, երբ հասարակության մեջ ստեղծվում են նյութական ու հոգևոր համապատասխան նախադրյալներ, կան արտաքին ու ներքին որոշակի պայմաններ՝ արտադրության բնագավառում (սոցիալիզմի արտադրողական ուժերի զարգացման բարձր մակարդակ, համաշխարհային սոցիալիզմի տնտեսական հզորության աճ), սոցիալ-տնտեսական բնագավառում (շահագործող դասակարգերի լիկվիդացում, սոցիալիստական սեփականության, սոցիալիստական արտադրական հարաբերությունների անբաժան տիրապետություն), քաղաքական ու հոգևոր բնագավառում (հասարակության բարոյա-քաղաքական միասնություն, ժողովուրդների բարեկամության ամրապնդում, մարքսիզմ-լենինիզմի վերածումը ամբողջ հասարակության գաղափարախոսության, հասարակության անդամների կուլտուրական բարձր մակարդակ)։ Պետության մարքս-լենինյան տեսությունը, ինչպես ամեն մի տեսություն, նշագծում է հիմնականը, ընդհանուրը, մոտենում բազմաբարդ այն պրոցեսի ընդգրկմանը, որն այժմ ծավալվում է սոցիալիստական բոլոր երկրներում։ Դրանով իսկ այն պարտիային ու ժողովրդին զինում է կոմունիստական ֆորմացիայի ձևավորման օրինաչափությունների, սոցիալիստական պետության զարգացման օրինաչափությունների ճանաչողությամբ և հնարավորություն է տալիս պարտիայի քաղաքականությունը, հասարակության պրակտիկ գործունեությունը վարել մաքսիմալ չափով հաշվի առնելով այդ օրինաչափությունները։

Համընդհանուր սոցիալիստական դեմոկրատիայի այդ ո՞ր գծերի ու հատկանիշների մասին է այստեղ խոսքը, հատկանիշներ, որոնք հատուկ են մեր պետությանը նրա կյանքի առաջին իսկ օրերից։ Խմբակի պարապմունքներում, սեմինարներում դրանք պետք է քննարկել, նկատի ունենալով հետևյալ հանգամանքները։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ սոցիալիստական պետության ուժի ու անպարտելիության հիմնական աղբյուրը բանվորների և գյուղացիների դաշինքն է՝ բանվոր դասակարգի ղեկավարությամբ։ Նա հենց այդպես էլ ասում էր. սովետական իշխանությունը հենվում է աշխարհում ամենահրաշալի ուժի՝ բանվորների ու գյուղացիների ուժի վրա։ Այդ դաշինքը, որի ամրապնդմանն ու զարգացմանը կոմունիստական պարտիան միշտ վճռական նշանակություն է տվել ու այժմ էլ տալիս է, համախմբում է ամբողջ աշխատավորությանը, ժողովրդի մեծամասնությանը, որոնց շահերը իր գոյության հենց սկզբից էլ արտահայտել է պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը։

Այնուհետև։ Սոցիալիզմի դրոշը, որ իր ռևոլյուցիոն ավանգարդի գլխավորությամբ վեր բարձրացրեց բանվոր դասակարգը, այն դրոշն է, որի ներքո համախմբվեցին աշխատավորության լայն մասսաները։ Սոցիալիզմի կառուցումը, նրա լիակատար ու վերջնական հաղթանակը մեր երկրում ձեռք են բերվել իբրև «իշխող դասակարգ կազմավորված» բանվոր դասակարգի ղեկավարությամբ։ Այս ամենը համապատասխանում է բանվորների ու գյուղացիների, ամբողջ աշխատավորների արմատական կենսական շահերին, համաժողովրդական շահերին, ու այդ հաղթանակի պտուղները ճաշակում է ողջ ժողովուրդը։

Վերջապես, խոսելով համընդհանուր սոցիալիստական դեմոկրատիայի բնորոշ գծերի մասին, որոնք հատուկ են պրոլետարիատի դիկտատուրային, կարևոր է ընդգծել, որ սոցիալիստական պետությունն իր գոյության առաջին քայլերից սկսած զարգացել է հասարակական կյանքի առավել դեմոկրատացման ուղիով, երկրի կառավարման գործում բանվորների, գյուղացիների, ժողովրդական ինտելիգենցիայի վրա ակտիվ ներգործելու ուղիով։ Հայտնի է, որ այս պրոցեսի բեղմնավոր զարգացմանը տարիներ շարունակ լրջորեն խանգարել է Ստալինի անձի պաշտամունքը, բայց և անձի պաշտամունքը չկարողացավ այն կանգնեցնել։ ՍՄԿԿ XX, XXI և XXII համագումարների պատմական

«Սոցիալիստական պետականության զարգացումը,— նշվում է ՍՄԿՊ ծրագրում,— աստիճանաբար կհանգեցնի այն բանին, որ նա կվերափոխվի հասարակական կոմունիստական ինքնավարության, որի մեջ կմիավորվեն սովետները, արհեստակցական, կոոպերատիվ ու աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունները» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962, էջ 532)։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ պետության լրիվ մահացման համար պահանջվում է ոչ միայն զարգացած կոմունիստական հասարակության կառուցում, այլև միջազգային ասպարեզում սոցիալիզմի հաղթանակ և ամրապնդում։

Կոմունիստական հասարակության կառուցումը սովետական յուրաքանչյուր մարդուց, ինչ պաշտոնում էլ որ նա լինի, պահանջում է մեծ եռանդ, նախաձեռնություն ու գիտակցականություն։ Մեր քաղաքացիական ու հասարակական պարտքն է՝ ազնվորեն աշխատել ընդհանուրի բարօրության համար, մտածել հասարակության ու պետության շահերի մասին՝ ինչպես սեփականի, խստորեն պահպանել պետական ու հասարակական կարգապահությունը, պատասխանատվության մեծ զգացում, հայրենասիրական նախաձեռնություն ու ստեղծագործական ակտիվություն հանդես բերել կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ Կոմունիզմի համար իրենց աշխատանքում սովետական մարդիկ անդադրում ամրապնդում են ՍՍՌՄ տնտեսական հզորությունն ու պաշտպանունակությունը, ժողովուրդների համաշխարհային սոցիալիստական համագործակցությունը, իրենց ինտերնացիոնալ պարտքն են կատարում ամբողջ աշխարհի աշխատավորների հանդեպ։

### ՀԻՄՆԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Կ. Մարքս և Ֆ. Էնգելս — *Կոմունիստական պարտիայի մանիֆեստը, Ընտիր երկեր, հ. I, էջ 16—37։*

Կ. Մարքս — *Գոթայի ծրագրի քննադատությունը, Հայպետհրատ, 1941, էջ 49։*

Վ. Ի. Լենին — *Պետություն և ռևոլյուցիա, Երկեր, հ. 25, էջ 491—642։*

Վ. Ի. Լենին — *«Դեմոկրատիայի» և դիկտատուրայի մասին, Երկեր, հ. 28, էջ 475—481։*

Վ. Ի. Լենին — *Ողջույն հունգարական բանվորներին, Երկեր, հ. 29, էջ 474—480։*

*Ленин В. И.* — О работе советского государственного аппарата, Госполитиздат, 1955.

*Ленин В. И.* — О привлечении масс к управлению государством, Госполитиздат, 1962.

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *մաս II, հատված III,* § *1—2։*

ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, *Հայպետհրատ, 1962։*

Մ. Ա. Սուսլով.— *Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ պայքարի մասին. զեկուցում ՍՄԿՊ ԿԿ պլենումում 1964 թվականի փետրվարի 14-ին, էջ 80—92։*

*За сплоченность международного коммунистического движения.* Документы и материалы. Политиздат, 1964, стр. 102—110.

ՍՄԿՊ լենինյան անսասան գլխավոր գիծը, *Լենինյան ուղիով, № 10, 1964 թ.։*

Կոմունիզմ կառուցողների մեծ դրոշը, «Правда», *1 նոյեմբերի, 1964 թ.։*




*Օժանդակ, լրացուցիչ գրականությունը հանձնարարվում է տեսական սեմինարների և խմբերի ղեկավարների կողմից։*



## ՅՈԹԵՐՈՐԴ ԹԵՄԱ

# ՊԱՐՏԻԱՅԻ ՄԱՍԻՆ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԸ Ե ՆՐԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՄԿՊ ԾՐԱԳՐՈՒՄ

Արդի դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունն է՝ մարդկության անցումը կապիտալիզմից սոցիալիզմին, անքակտելիորեն կապված է Սովետական Միության կոմունիստական պարտիայի հերոսական պատմության հետ։ Մեծ Լենինի ստեղծած կոմունիստական պարտիան մեր երկրի ժողովուրդներին հասցրեց համաշխարհային պատմական նվաճումների։ Պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը Ռուսաստանում, սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը ՍՍՌՄ-ում, Սովետական Միության անցումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանին նշանավորեցին կարևոր ուղենիշեր, որոնք ցույց են տալիս պարտիայի՝ որպես նոր հասարակության ստեղծման համար մղվող պայքարին ուղղություն տվող, ղեկավարող ու կազմակերպող ուժի մասին մարքս-լենինյան ուսմունքի հաղթանակը։ Սովետական մարդիկ պարտիայի ղեկավարության մեջ են տեսնում կոմունիզմի կառուցման պլանների հաջող կենսագործման գրավականը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հատուկ նշանակություն է ստանում պարտիական ղեկավարության հետագա բարելավումը տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում, պարտիական ու պետական կյանքում լենինյան սկզբունքների ու նորմերի հետևողական կենսագործումը։ Այս տեսակետից կարևոր դեր են խաղում ՍՄԿՊ Կենտկոմի հոկտեմբերյան ու նոյեմբերյան (1964 թ.) պլենումները. Նրանց որոշումները վկայում են մեր պարտիայի ուժի, միաձնության մասին, նրա լենինյան մոտեցումը կյանքի վերլուծությանը, տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման գործնական աշխատանքի գնահատմանը։

Պարտիայի մասին մարքս-լենինյան ուսմունքը, որն ստեղծագործական զարգացում ստացավ ՍՄԿՊ ծրագրում, հնարավորություն է տալիս ավելի խոր ըմբռնելու այն օբյեկտիվ պրոցեսները, որոնք հատուկ են պարտիայի կյանքի ու գործունեության արդի շրջանին, նրա դերը կոմունիզմի բարձրագույն փուլի կառուցման գործում։ Ներկա թեմայի ուսումնասիրմանը առաջարկվում է նվիրել երեք պարապմունք, հետևյալ պլանով.

Լենինյան ուսմունքը պարտիայի մասին։ ՍՄԿՊ դերի աճումը կոմունիստական շինարարության գործում։

Պարտիայի լենինյան գլխավոր գիծը կոմունիզմի հաջող կառուցման անսասան հիմքն է։

Պարտիական կյանքի լենինյան նորմերը ՍՄԿՊ գործունեության մեջ։

*Ստորև հրապարակվում են յոթերորդ թեմայի վերաբերյալ գրականությունը և առաջին պարապմունքի մեթոդական խորհուրդները։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱՄԲՈՂՋ ԹԵՄԱՅԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ


Կ. Մարքս և Ֆ. Էնգելս — *Կոմունիստական պարտիայի մանիֆեստը, Ընտիր երկեր, հ. 1, Հայպետհրատ, 1950, էջ 27—38, 50—52։*

*Маркс К. и Энгельс Ф.* — Резолюции конференции делегатов Международного Товарищества Рабочих, состоявшийся в Лондоне с 17 по 23 сентября 1871 года. Соч., т. 17, стр. 426—427.

*Маркс К.* — Письмо Вильгельму Блосу (21 февр. 1874 г.). Маркс К. и Энгельс Ф. Соч., т. 33, стр. 518—519.

Ֆ. Էնգելս — *Կոմունիստների միության պատմության շուրջ, Ընտիր երկեր, հ. 2, էջ 432—456։*

*Энгельс Ф.* — Письмо Г. Триру от 18 декабря 1889 г. Избранные письма. Госполитиздат, 1953, стр. 416—417.

յան սկզբունքների կենսագործման, պարտիական ղեկավար օրգաններում նոր ուժերի ընդգրկման, հին ու նոր կադրերի ճիշտ զուգակցման գրավականն է։

Ներպարտիական կյանքի կատարելագործման, նրա ղեկավար դերի մեծացման ճանապարհին կարևոր ուղենիշ են ՍՄԿՊ ԿԿ հոկտեմբերյան ու նոյեմբերյան (1964 թ.) պլենումները։ Կոմունիստական շինարարության գործում պարտիայի ու նրա տեղական օրգանների ղեկավար դերի բարձրացման, յուրաքանչյուր մարզի, երկրամասի և ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական զարգացման խնդիրների բարեհաջող լուծման նպատակով Կենտկոմի նոյեմբերյան պլենումը անհրաժեշտ համարեց վերադառնալ պարտիական կազմակերպությունների ու նրանց կազմակերպական օրգանները ըստ տերիտորիալ արտադրական հատկանիշների կառուցելու սկզբունքին, որը դարձավ պարտիայի XXII համագումարում ընդունված ՍՄԿՊ կանոնադրության կարևորագույն բաղկացուցիչ մասը։

Ներպարտիական դեմոկրատիայի հետագա զարգացման մեջ է պարտիան տեսնում կոմունիստական ազնիվ գաղափարների իրականացման համար կոմունիստների ակտիվության աճի ու նրանց պատասխանատվության բարձրացման վճռական պայմաններից մեկը։ Պարտիան ձգտում է ստեղծել այնպիսի իրադրություն, որտեղ մաքսիմալ չափերով զարգանար յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության զգացումը երկրի ու պարտիայի գործերի համար։

Պատմությունը ցույց տվեց, որ մեր պարտիայի փորձը, նրա ողջ գործունեությունը, որը կառուցվում է մարքսիստական-լենինյան ուսմունքի հիմքի վրա, միջազգային կոմունիստական շարժման համար ունի սկզբունքային նշանակություն։

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի նոյեմբերին կայացած խորհրդակցության Հայտարարության մեջ ասվում է. «Մարքսիստական-լենինյան պարտիաները պարտիական կյանքում իրենց պարտադիր օրենքն են համարում լենինյան նորմերի անշեղ պահպանումը դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների հիմունքներով, գտնում են, որ անհրաժեշտ է աչքի լույսի պես պահպանել պարտիայի միասնությունը, խստորեն հետևել պարտիական դեմոկրատիայի և կոլեկտիվ ղեկավարման սկզբունքին... մերժել անհատի պաշտամունքը, որը կաշկանդում է կոմունիստների ստեղծագործական մտքերի ու նախաձեռնությունների աճը, ամեն կերպ մեծացնել կոմունիստների ակտիվությունը, իրենց շարքերում զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը (Программные документы борьба за мир, демократию и социализма, стр. 80);

Տվյալ թեմային վերաբերող կոնկրետ նյութերը այս կամ այն չափով ծանոթ են ունկնդիրներին։ Ժամանակին նրանք ուսումնասիրել են պարտիայի XX, XXI, XXII համագումարների որոշումները, ՍՄԿՊ նոր ծրագիրը։ Այս բոլորը հնարավորություն է տալիս պարապմունքներում մաքսիմալ չափով օգտագործելու ունկնդիրների գիտելիքները, կենդանի, հետաքրքիր, գաղափարական-տեսական բարձր մակարդակով անցկացնելու զրույցը։

Սեմինարներում պրոպագանդիստը կարող է սահմանափակվել միայն ներածական խոսքով ու եզրափակմամբ, իսկ մի քանի ընկերների փոքրիկ զեկուցումներ հանձնարարել պարապմունքի թեմայի առանձին հարցերի շուրջ։ Այստեղ կարող են քննության առնվել մոտավորապես այսպիսի հարցեր. սովետական հասարակական կյանքի սոցիալ-տնտեսական տեղաշարժերը՝ որպես ՍՄԿՊ-ն ամբողջ ժողովրդի պարտիա դառնալու գլխավոր նախադրյալ. ՍՄԿՊ շարքերի աճը և մասսաների հետ պարտիայի կապերի ամրապնդումը. պարտիան գոյություն ունի ժողովրդի համար, ժողովրդին ծառայելու մեջ է նա տեսնում իր գործունեության իմաստը. կոմունիստական շինարարության գործում պարտիայի դերի բարձրացման օբյեկտիվ պայմանները. լենինյան կուրսի հիման վրա ներպարտիական դեմոկրատիայի զարգացումը ՍՄԿՊ XX համագումարում և այլն։ Ցանկալի է, որ այս հարցերը քննարկելիս, ունկնդիրները լայնորեն օգտվեն նաև տեղական նյութերից։ Օրինակ, խոսելով ՍՄԿՊ շարքերի



աճի ու մասսաների հետ պարտիայի կապերի ամրապնդման մասին, կարելի է վերլուծել իրենց պարտկազմակերպության կազմը, քննության առնել աշխատավորների հետ նրա ունեցած կապի ձևերը, ցույց տալ, թե կոլեկտիվում կոմունիստներն ինչպիսի աշխատանք են կատարում և այլն։

Պարապմունքներին նախապատրաստվելու համար առաջարկվում է օգտվել հետևյալ գրականությունից. Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, մաս երկրորդ, հատված VII. Սովետական Միության կոմունիստական պարտիայի կանոնադրությունը. Սովետական Միության կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի հաշվետվության առթիվ, հատված III. 1959—1965 թվականների ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման կոնտրոլ թվերը, հատված VII. Սովետական Միության կոմունիստական պարտիայի XXII համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի հաշվետվության առթիվ, հատված III, Անհատի պաշտամունքի ու նրա հետևանքների հաղթահարումը։ ՍՄԿՊ ԿԿ 1956 թվականի հունիսի 30-ի որոշումը. Արդյունաբերական և գյուղական մարզային, երկրամասային պարտիական կազմակերպությունների միացման մասին։ ՍՄԿՊ ԿԿ նոյեմբերյան (1964 թվական) պլենումի որոշումը. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարին։ 1964 թ. նոյեմբերի 6-ի հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառը, կոմունիստական պարտիան՝ սովետական ժողովրդի մարտական ավանգարդն է, հատվածը։

Պարապմունքներում կարելի է օգտագործել նաև Боевой авангард советского народа դիտողական ձեռնարկը (Պետքաղհրատ, 1962), մի շարք սխեմաներ ու աղյուսակներ։ ՍՄԿՊ կազմի մասին թվական ու փաստական շատ նյութեր կգտնեն պրոպագանդիստները Партийная жизнь, № 1, 1962, Коммунист № 2, 1962, Политическое самообразование № 7, 1963, ամսագրերում հրապարակված հոդվածներում։

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏ ՍՈՒՍԱՆՆԱ ՏԻԳՐԱՆՅԱՆԸ



*Մեկ ու կես տասնամյակ է անցել այն օրից, երբ սև ու խոշոր աչքերով, արտահայտիչ դիմագծերով մի կենսուրախ աղջիկ, ավարտելով Երևանի Թեթև արդյունաբերական տեխնիկումը, ոտք դրեց Երևանի՝ Կլարա Ցետկինի անվան կարի ֆաբրիկան։ Վստահ ու համարձակ էին նրա քայլերը. երիտասարդ էր նա, անսպառ եռանդով լի, տեխնիկումում ձեռք բերած գիտելիքներով զինված։*

*Կենսաթրթիռ ու վառվռուն այդ աղջիկը հենց առաջին օրից սիրեց ֆաբրիկան, զգալով, որ այն պետք է դառնա ոչ միայն իր երկրորդ՝ աշխատանքային ընտանիքը, այլև իր նոր դպրոցը, կյանքի դպրոցը։*

*Ֆաբրիկայի բակում ամենից առաջ նրա ուշադրությունը գրավեց պատվո տախտակը։ Մոտենալով դրան, աղջիկն սկսեց դիտել ցուցափեղկում փակցված լուսանկարները, ցանկանալով գեթ մի ծանոթ դեմք գտնել այնտեղ։ Բայց այդպիսին չկար. պատվոտախտակից իրեն նայող յուրաքանչյուր անծանոթի մեջ նա տեսնում էր վաղվա իր ծանոթին, բարեկամին, աշխատանքային ընկերոջը։*

*— Երանի՜ նրանց. ահա թե ինչպիսի պատվի ու հարգանքի է արժանանում աշխատանքի մարդը... Տեսնես իմ նկարն էլ երբևէ այստեղ կլինի՞,— մտածեց աղջիկը և փորձեց մտքով առաջ սլանալ ու տեսնել իր վաղվա օրը։*

*Նա թեթևակի ժպտաց՝ անժամանակ, անակնկալ և մի փոքր էլ անպատեհ ու անհամեստ մտորումների համար։ «Ես այնպես կաշխատեմ, որ հասնեմ նրանց», մտովի վճռեց նա և, հեռանալով պատվո տախտակից, շտապեց կադրերի բաժին՝ աշխատանքի նշանակվելու։*

Սուսաննա Տիգրանյանն *էր նա։*

*Հաջորդ օրը նա արդեն աշխատում էր որպես խոտանող։ Կարի տեխնոլոգիայի վերաբերյալ նրա գիտելիքները և ուշիմությունը օգնեցին նրան՝ հաջողությամբ կատարելու իր պարտականությունները։ Եվ այսպես աշխատում, իր գործում հմտանում էր նա։*



*Մի օր էլ, ֆաբրիկայի գլխավոր ինժեներն ու պարտկազմակերպության քարտուղարը, արտադրամասերի աշխատանքն ուսումնասիրելուց և ստուգելուց հետո, մոտեցան Սուսաննային։ Գլխավոր ինժեները, որ ընդհանրապես դեմ էր երիտասարդ ու նոր աշխատողի հասցեին գովեստի խոսքեր շռայլելուն, մտածելով, որ գովեստը կարող է վնասել՝ չկարողացավ անտարբեր մնալ Սուսաննայի աշխատանքի հանդեպ։ Կարված զգեստները նրա հայացքի տակ զննվում էին այնպես, ինչպես կենդանի բջիջը՝ լաբորանտի մանրադիտակի տակ։*

*— Ապրես, աղջիկս, լավ ես աշխատում,— ասաց նա, ավելի քաջալերելով աղջկան։*

*— Կաշխատեմ միշտ էլ արդարացնել ինձ,— ասաց աղջիկը կես ամոթխածությամբ և կես հպարտությամբ, որպիսին հատուկ է սկսնակներին։*

*— Չէի՞ր ցանկանա մասնակցել քաղպարապմունքներին,— հարցրեց պարտկազմակերպության քարտուղարը՝ Սուսաննային։*

*— Սիրով,— պատասխանեց աղջիկը և նայեց քարտուղարին։ «Ո՞վ չի ցանկանա սովորել, իմացածի վրա մի բան էլ ավելացնել»,— ասում էր նրա հայացքը։*

*Պարտկազմակերպության քարտուղարը Սուսաննայի անունը գրեց քաղխմբակներից մեկի ցուցակում, հայտնեց պարապմունքի օրերը և գլխավոր ինժեների հետ միասին դուրս գնաց։*

*— Խելացի աղջիկ է երևում, լավ ապագա կունենա,— ասաց գլխավոր ինժեները Սուսաննայի մոտից հեռանալուց հետո։*

*— Մեզ էլ հենց այդպիսիներն են հարկավոր,— ասաց պարտկազմակերպության քարտուղարը, և նրանք դուրս եկան արտադրամասից։*

*Այս խոսակցությունից հազիվ մեկ տարի անց, Սուսաննան առաջ քաշվեց և նշանակվեց ագրեգատի վարպետ. ևս մի երկու տարի և նա փորձնական բաժանմունքի ու լաբորատորիայի վարիչն էր։ Բայց մշտապես պրպտող, որոնող, գիտելիքների ծարավ աղջիկը չէր կարող բավարարվել իր գիտեցածով։ Տեխնիկական գիտելիքների հարստացման ու գործնական աշխատանքի հմտության շնորհիվ, նա շուտով դարձավ ֆաբրիկայի գլխավոր ինժեները։*

*Սուսաննան աճեց նաև գաղափարապես։ Շարքային ունկնդրից նա դարձավ պրոպագանդիստ։ Սովորեցնելու, ունկնդիրների մտահորիզոնի բազմակողմանի լայնացման համար հարկավոր էր այսօր ավելին իմանալ, քան երեկ։ Եվ նա, առանց արտադրությունից կտրվելու, ձեռք բերեց տնտեսագիտական բարձրագույն կրթություն։ Դրանից հետո նա իր գործերը ներկայացրեց ռեսպուբլիկայի Տեխնիկայի տան՝ հասարակական հիմունքներով գործող ասպիրանտուրան։ Սուսաննան չէր ուզում կանգնած մնալ միևնույն տեղում։ Ինչքան շատ էր սովորում, սովորելու ցանկությունն այնքան մեծանում էր։*

*Նա արդեն հանձնել է մինիմումները՝ փիլիսոփայությունից ու օտար լեզվից և այժմ աշխատում է «Կարի արտադրության տեղաբաշխման հիմնական սկզբունքները» դիսերտացիոն թեմայի վրա։*

*Ֆաբրիկայի գլխավոր ինժեների և դիսերտանտ-ասպիրանտի աշխատանքային ծանրաբեռնվածությունը, իսկ տանը՝ օրինակելի տնտեսուհու և երջանիկ մոր բազմաթիվ ու բազմապիսի պարտականությունները չեն խանգարում Սուսաննա Տիգրանյանին՝ զբաղվելու նաև հասարակական պարտականությունների կատարմամբ։ Երկար տարիների փորձված պրոպագանդիստ է նա և մեծ սիրով է կատարում այդ աշխատանքը։*

— Ինչպե՞ս եք հասցնում այդ ամենը,— հարցնում եմ Սուսաննա Տիգրանյանին։

Նա կազմում էր իր առաջիկա քաղպարապմունքի կոնսպեկտը։

— Ճշմարիտն ասած, այդ հարցը ոչ ոք երբեք չի տվել ինձ, և այդ ուղղությամբ ես երբեք չեմ մտածել։ Բայց մի բան ինձ համար պարզ է, որ նա, ով սիրում է իր գործը, որքան էլ շատ ու դժվար լինի այն, այնուամենայնիվ կըկատարի։ Ես սիրում եմ ոչ միայն պաշտոնական, ոչ միայն ընտանեկան ու անձնական, այլև հասարակական գործը։ Ահա հասարակական հիմունքներով գործող մեր ասպիրանտուրան, ուր շատ գիտնականներ բազմաթիվ ասպիրանտներ են աճեցնում։ Դա ինձ պարտավորեցնում է, որ ես էլ նույնպիսի հոգատարություն ցուցաբերում աշխատանքի իմ ընկերների գիտելիքների հարստացման նկատմամբ։ Եվ տեսնում եմ, որ ունկնդիրների գաղափարական ու տեխնիկական զինվածությունը նպաստում է ֆաբրիկայի առջև դրված խնդիրների հաջող լուծմանը։ Օգնելով նրանց, ես փաստորեն թեթևացնում եմ իմ՝ ֆաբրիկայի գլխավոր ինժեների գործը։ Եվ, վերջապես, սովորեցնելով նրանց, ինքս էլ ավելի շատ բան եմ սովորում, մարդկանց եմ ճանաչում։



«Առաջավոր վարպետի դպրոց» — այսպես է կոչվում այն խմբակը, որի հետ պարապում է Սուսաննա Տիգրանյանը։ Նրա ունկնդիրների թիվը հասնում է 25-ի։ Նա կարողանում է անցնելիք թեմաների շուրջ հարց ու պատասխանի ակտիվ զրույցներ կազմակերպել, դրանց մասնակից դարձնել գրեթե բոլորին։ Ծրագրային թեմաները միշտ պարապմունքի ժամանակ կապվում են արտադրական առաջադրանքների կատարման հետ։ Այսպես, ասենք թե անցնում են «Ինքնարժեքի իջեցման եղանակները» թեման։ Նա ոչ միայն տեսականորեն բացատրում է, թե ինչ տարրերից է գոյանում ինքնարժեքը և ինչպես կարելի է այն իջեցնել, այլև նշում է, թե իրենց մոտ՝ ֆաբրիկայում, կարող բանվորուհիներն ու վարպետները ինչպես են իրենց սովորածը կենսագործում։ Այսպիսով, քաղպարապմունքում ունկնդիրներն իրենց գաղափարական մակարդակի բարձրացման հետ միասին, բարձրացնում են նաև իրենց վարպետությունն ու տեխնիկական զինվածությունը։ Ունկնդիրներ Օֆելյա Հակոբյանի, Լուսիկ Մայիլյանի, Իսկուհի Աղատյանի, Կլարա Գրիգորյանի, Վահրամ Վարդանյանի, Հրաչյա Ղահրամանյանի լավագույն օգնականը, տնտեսագիտական հարցերում բանիմաց խորհրդատուն իրենց պրոպագանդիստն է։ Հենց այդ ուշիմ ունկնդիրներն էլ կազմում են ֆաբրիկայի գործերը առաջ մղող և կոլեկտիվի անունը բարձրացնող թեև ոչ միակ, բայց կարևոր ու վճռական մի ջոկատ։

Սուսաննա Տիգրանյանի ղեկավարած խմբակի ակտիվ ունկնդիր, Սիրիայից հայրենիք վերադարձած Վահրամ Վարդանյանը հանգամանորեն ուսումնասիրելով պարտիայի ծրագիրը և թեմատիկ պլանով նախատեսված մյուս նյութերը, ամեն կերպ ձգտում է առավելագույն չափով օգտակար լինել հայրենիքին, օգնել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։ Նրա արած ռացիոնալիզատորական մի քանի առաջարկությունները ֆաբրիկային արդեն բերել են մոտ երկու հարյուր հազար ռուբլու օգուտ։ Իսկ այդ բանում քիչ ջանքեր չի թափել նաև Սուսաննա Տիգրանյանը։

— Հանգամանքների բերումով ես ուշ եմ մասնակցել մեր հայրենիքի ծաղկման ու բարգավաճման գործին,— ասում է Վահրամ Վարդանյանը,— բայց մեր ընկերների և, հատկապես, մեր



պրոպագանդիստ Սուսաննա Տիգրանյանի օգնությամբ, ես կջանամ ավելի լավ աշխատել, որպեսզի կարճ ժամանակում հասնեմ ընկերներիս...

Սուսաննա Տիգրանյանը դեռ երիտասարդ է և ունի ոչ միայն հարուստ գիտելիքներ, այլև գործնական աշխատանքի մեծ փորձ։ Այդ գիտելիքներն ու փորձը նա սիրով տալիս է իր ունկընդիրներին, որպեսզի նրանք ավելի լավ ու արդյունավետ աշխատեն և ակտիվորեն մասնակցեն կոմունիզմի կառուցմանը։

Գ. ՀԱԿՈԲՅԱՆ

## ՏԵՂ ԳՅՈՒՂԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

Խրախուսելի է Գորիսի շրջանի Տեղ գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության անցած տարվա կատարած աշխատանքը։ 1964 թվականի սկիզբն էր։ Զանգեզուրի լեռնաշխարհում նման սաստիկ ձմեռ վերջին տասը տարում գրեթե չէր եղել։ Ինչպես շատ, այնպես էլ Տեղ գյուղի կոլտնտեսության 5000 գլուխ ոչխարները հեռագնաց ձմեռանոցում էին, որտեղ պետք է մնային մինչև գարուն։ Դեռ չէր լրացել մեկ ամիսը, երբ ձմեռանոցից լուր ստացվեց, թե ձյան շերտն անչափ հաստ լինելու և սաստիկ ցրտի պատճառով հոտը հնարավոր չէ դուրս բերել արոտ, իսկ կեր բոլորովին չկա։

Ուշացնել՝ նշանակում է ձեռք քաշել ոչխարների մեծ մասից։ Իսկ ինչպե՞ս կեր հասցնել, երբ ձյունաշատ բուքը փակել էր ճանապարհները։

Պարտիական կազմակերպության բյուրոյի՝ այդ հարցը քննող նիստին մասնակցում էին 25 կոմունիստներ։ Ձմեռանոցում ստեղծված ծանր վիճակի մասին պարտբյուրոյի քարտուղար Ապետնակ Բաղդասարյանի հաղորդումն անհանգստացրեց, հուզեց բոլորին։

— Ես տրակտորով կբացեմ ձմեռանոցի ճանապարհները, իսկ ավտովարորդները թող շղթայեն անիվները և կեր փոխադրեն,— առաջարկեց մեխանիզատոր Վոլոդյա Ծոնվերանցը։

— Իսկ ես կբեռնեմ խոտը, ավտոմեքենայով կգամ,— պատրաստակամություն հայտնեց Կոլյա Իսունցը։

Նրանց միացան և ուրիշներ։

Բյուրոյի նիստից հետո 25 կոմունիստներն էլ անցան գործի։ Տրակտորիստ Վոլոդյա Ծոնվերանցը իր օգնականի հետ տրակտորով 7 ժամում բաց արեց ճանապարհները, իսկ խոտով բեռնված 4 ավտոմեքենաներ արշալույսի հետ հայտնվեցին ձմեռանոցում։ Հովիվները զարմացան։

— Էդ ինչպե՞ս կարողացաք հասնել...

— Հո ձեզ չէինք թողնի այդ վիճակում։ Երեկ դուք լուր ուղարկեցիք, այսօր արդեն ձեզ մոտ ենք,— պատասխանեցին օգնության հասած կոմունիստները։

Եվ այսպես, 15 օր շարունակ, գիշեր ու ցերեկ ձմեռանոցի ճամփան բռնեցին կոմունիստ-մեխանիզատորները՝ այնտեղ տեղափոխելով ավելի քան 150 տոննա կեր։ Բացի այդ, դաշտավարական բրիգադներում աշխատող 15 կոմունիստ բարձրացան ձմեռանոց՝ ոչխարների լավ խնամքն ու կերակրումն ապահովելու, ծինը հաջող անցկացնելու համար։

Եկավ գարունը, վերոհիշյալ միջոցառումների և կոմունիստների նախաձեռնության շնորհիվ 1,2 տոկոս կազմեց ոչխարների անկումը, իսկ ծինն անցկացվեց գրեթե անկորուստ։ Կոմունիստ հովիվներ Սուրեն Շիրինյանը,

— Ինչպե՞ս եք հասցնում այդ ամենը,—հարցնում եմ Սուսաննա Տիգրանյանին։

Նա կազմում էր իր առաջիկա քաղպարապմունքի կոնսպեկտը։

— Ճշմարիտն ասած, այդ հարցը ոչ ոք երբեւէ չի տվել ինձ, և այդ ուղղությամբ ես երբեք չեմ մտածել։ Բայց մի բան ինձ համար պարզ է, որ նա, ով սիրում է իր գործը, որքան էլ շատ ու դժվար լինի այն, այնուամենայնիվ կըկատարի։ Ես սիրում եմ ոչ միայն պաշտոնական, ոչ միայն ընտանեկան ու անձնական, այլև հասարակական գործը։ Ահա հասարակական հիմունքներով գործող մեր ասպիրանտուրան, ուր շատ գիտնականներ բազմաթիվ ասպիրանտներ են աճեցնում։ Դա ինձ պարտավորեցնում է, որ ես էլ նույնպիսի հոգատարություն ցուցաբերում աշխատանքի իմ ընկերների գիտելիքների հարստացման նկատմամբ։ Եվ տեսնում եմ, որ ունկնդիրների գաղափարական ու տեխնիկական զինվածությունը նպաստում է ֆաբրիկայի առջև դրված խնդիրների հաջող լուծմանը։ Օգնելով նրանց, ես փաստորեն թեթևացնում եմ իմ՝ ֆաբրիկայի գլխավոր ինժեների գործը։ Եվ, վերջապես, սովորեցնելով նրանց, ինքս էլ ավելի շատ բան եմ սովորում, մարդկանց եմ ճանաչում։



«Առաջավոր վարպետի դպրոց» — այսպես է կոչվում այն խմբակը, որի հետ պարապում է Սուսաննա Տիգրանյանը։ Նրա ունկնդիրների թիվը հասնում է 25-ի։ Նա կարողանում է անցնելիք թեմաների շուրջ հարց ու պատասխանի ակտիվ զրույցներ կազմակերպել, դրանց մասնակից դարձնել գրեթե բոլորին։ Ծրագրային թեմաները միշտ պարապմունքի ժամանակ կապվում են արտադրական առաջադրանքների կատարման հետ։ Այսպես, ասենք թե անցնում են «Ինքնարժեքի իջեցման եղանակները» թեման։ Նա ոչ միայն տեսականորեն բացատրում է, թե ինչ տարրերից է գոյանում ինքնարժեքը և ինչպես կարելի է այն իջեցնել, այլև նշում է, թե իրենց մոտ՝ ֆաբրիկայում, կարող բանվորուհիներն ու վարպետները ինչպես են իրենց սովորածը կենսագործում։ Այսպիսով, քաղպարապմունքում ունկնդիրներն իրենց գաղափարական մակարդակի բարձրացման հետ միասին, բարձրացնում են նաև իրենց վարպետությունն ու տեխնիկական զինվածությունը։ Ունկնդիրներ Օֆելյա Հակոբյանի, Լուսիկ Մայիլյանի, Իսկուհի Աղատյանի, Կլարա Գրիգորյանի, Վահրամ Վարդանյանի, Հրաչյա Ղահրամանյանի լավագույն օգնականը, տնտեսագիտական հարցերում բանիմաց խորհրդատուն իրենց պրոպագանդիստն է։ Հենց այդ ուշիմ ունկնդիրներն էլ կազմում են ֆաբրիկայի գործերը առաջ մղող և կոլեկտիվի անունը բարձրացնող թեև ոչ միակ, բայց կարևոր ու վճռական մի ջոկատ։

Սուսաննա Տիգրանյանի ղեկավարած խմբակի ակտիվ ունկնդիր, Սիրիայից հայրենիք վերադարձած Վահրամ Վարդանյանը հանգամանորեն ուսումնասիրելով պարտիայի ծրագիրը և թեմատիկ պլանով նախատեսված մյուս նյութերը, ամեն կերպ ձգտում է առավելագույն չափով օգտակար լինել հայրենիքին, օգնել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։ Նրա արած ռացիոնալիզատորական մի քանի առաջարկությունները ֆաբրիկային արդեն բերել են մոտ երկու հարյուր հազար ռուբլու օգուտ։ Իսկ այդ բանում քիչ ջանքեր չի թափել նաև Սուսաննա Տիգրանյանը։

— Հանգամանքների բերումով ես ուշ եմ մասնակցել մեր հայրենիքի ծաղկման ու բարգավաճման գործին,— ասում է Վահրամ Վարդանյանը,— բայց մեր ընկերների և, հատկապես, մեր



պրոպագանդիստ Սուսաննա Տիգրանյանի օգնությամբ, ես կջանամ ավելի լավ աշխատել, որպեսզի կարճ ժամանակում հասնեմ ընկերներիս...

Սուսաննա Տիգրանյանը դեռ երիտասարդ է և ունի ոչ միայն հարուստ գիտելիքներ, այլև գործնական աշխատանքի մեծ փորձ։ Այդ գիտելիքներն ու փորձը նա սիրով տալիս է իր ունկնդիրներին, որպեսզի նրանք ավելի լավ ու արդյունավետ աշխատեն և ակտիվորեն մասնակցեն կոմունիզմի կառուցմանը։

Գ. ՀԱԿՈԲՅԱՆ

---

## ՏԵՂ ԳՅՈՒՂԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

Խրախուսելի է Գորիսի շրջանի Տեղ գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության անցած տարվա կատարած աշխատանքը։ 1964 թվականի սկիզբն էր։ Զանգեզուրի լեռնաշխարհում նման սաստիկ ձմեռ վերջին տասը տարում գրեթե չէր եղել։ Ինչպես շատ, այնպես էլ Տեղ գյուղի կոլտնտեսության 5000 գլուխ ոչխարները հեռագնաց ձմեռանոցում էին, որտեղ պետք է մնային մինչև գարուն։ Դեռ չէր լրացել մեկ ամիսը, երբ ձմեռանոցից լուր ստացվեց, թե ձյան շերտն անչափ հաստ լինելու և սաստիկ ցրտի պատճառով հոտը հնարավոր չէ դուրս բերել արոտի, իսկ կեր բոլորովին չկա։

Ուշացնել՝ նշանակում է ձեռք քաշել ոչխարների մեծ մասից։ Իսկ ինչպե՞ս կեր հասցնել, երբ ձյունաշատ բուքը փակել էր ճանապարհները։

Պարտիական կազմակերպության բյուրոյի՝ այդ հարցը քննող նիստին մասնակցում էին 25 կոմունիստներ։ Ձմեռանոցում ստեղծված ծանր վիճակի մասին պարտբյուրոյի քարտուղար Ապետնակ Բաղդասարյանի հաղորդումն անհանգստացրեց, հուզեց բոլորին։

— Ես տրակտորով կբացեմ ձմեռանոցի ճանապարհները, իսկ ավտովարորդները թող շղթայեն անիվները և կեր փոխադրեն,— առաջարկեց մեխանիզատոր Վոլոդյա Ծռնվերանցը։

— Իսկ ես կբեռնեմ խոտը, ավտո-



մեքենայով կգամ,— պատրաստակամություն հայտնեց Կոլյա Իսունցը։

Նրանց միացան և ուրիշներ։

Բյուրոյի նիստից հետո 25 կոմունիստներն էլ անցան գործի։ Տրակտորիստ Վոլոդյա Ծռնվերանցը իր օգնականի հետ տրակտորով 7 ժամում բաց արեց ճանապարհները, իսկ խոտով բեռնված 4 ավտոմեքենաներ արշալույսի հետ հայտնվեցին ձմեռանոցում։ Հովիվները զարմացան։

— Էդ ինչպե՞ս կարողացաք հասնել...

— Հո ձեզ չէինք թողնի այդ վիճակում։ Երեկ դուք լուր ուղարկեցիք, այսօր արդեն ձեզ մոտ ենք,— պատասխանեցին օգնության հասած կոմունիստները։

Եվ այսպես, 15 օր շարունակ, գիշեր ու ցերեկ ձմեռանոցի ճամփան բռնեցին կոմունիստ-մեխանիզատորները՝ այնտեղ տեղափոխելով ավելի քան 150 տոննա կեր։ Բացի այդ, դաշտավարական բրիգադներում աշխատող 15 կոմունիստ բարձրացան ձմեռանոց՝ ոչխարների լավ խնամքն ու կերակրումն ապահովելու, ծինը հաջող անցկացնելու համար։

Եկավ գարունը, վերոհիշյալ միջոցառումների և կոմունիստների նախաձեռնության շնորհիվ 1,2 տոկոս կազմեց ոչխարների անկումը, իսկ ծինն անցկացվեց գրեթե անկորուստ։ Կոմունիստ հովիվներ Սուրեն Շիրինյանը,

Սարգիս Գյանջումը և ուրիշներ իրենց խնամքին հանձնված 350-ական մայր ոչխարներից ստացան ու պահպանեցին 355-ական գառ։

Այժմ կոլտնտեսության հոտը նորից ձմեռանոցումն է։ Որքան էլ այս ձմեռը խիստ լինի, այն չի վհատեցնի անասնապահներին, որովհետև ձմեռանոցում կուտակված է 150 տոննա խոտ, նորոգվել են անասնաշենքերը, անասնապահները համալրվել են 10 կոմունիստով ևս։ Այդ բոլորի շնորհիվ այս ձմեռ նույնպես հաջողությունները ակնհայտ կլինեն։

1964 թվականի առաջին եռամսյակի արդյունքների ամփոփումը ցույց տըվեց, որ կովաբուծական ֆերմայում կաթնատվության բարձրացման ուղղությամբ գրեթե տեղաշարժ չի նկատվում։ Նույնիսկ կոմունիստ կթվորներ Ալիշ Ղուլունցը, Ենոք Բալաշյանը և ուրիշներ իրենց խնամքին հանձնված կովերից քիչ կաթ էին ստացել։ Պատճառն այն էր, որ զոոտեխնիկ, կոմունիստ Հմայակ Դալլաքյանը չէր հետևել զոոկանոնների ճիշտ կիրառմանը, հաճախ խախտվել էր կովերի կերակըրման, ջրելու և կթելու ժամերը, ֆերմայում ընկած էր աշխատանքային կարգապահությունն ու պատասխանատվությունը։ Նման երևույթները չէին կարող վրիպել պարտիական կազմակերպության տեսադաշտից և չանհանգստացնել կոմունիստներին։

Հաջորդ օրը պարտիական բյուրոյի օրակարգում էր այդ հարցը։ Դատապարտելով զոոտեխնիկ Հմայակ Դալլաքյանի և կովաբուծական ֆերմայի վարիչ Ներսես Ղուլունցի անհոգի վերաբերմունքը, բյուրոն նկատողություն հայտարարեց նրանց և պահանջեց՝ վճռականապես բարելավել անասունների խնամքն ու կերակրումը։ Այդ և մյուս միջոցառումների շնորհիվ կարճ ժամանակում ֆերմայում բարձրացավ կարգապահությունը, բարելավվեց անասունների խնամքն ու կերակրումը, ավելացավ կաթնատվությունը։ Առաջին կիսամյակում կաթի արտադրության գործում լավ ցուցանիշների հասնելու համար ֆերման նվաճեց ՀԿՊ Գորիսի շրջկոմի և արտադրական վարչության փոխանցիկ դրոշը և մինչև օրս այն չի զիջում ոչ ոքի։ Հինգ կոմունիստ կըթվորներն էլ առաջավորներ են, 300-ական լիտրով գերակատարել են ֆուրաժային կովի կաթնատվության տարեկան առաջադրանքը։

Տարիներ շարունակ կոլտնտեսությունը ծխախոտի խիստ ցածր բերք էր ստանում։ Դրա պատճառը ոչ թե այն է, որ Զանգեզուրի պայմաններում այդ կուլտուրան լավ չի աճում, այլ այն, որ ծխախոտը ցանվում էր այգիներում, ուր հնարավոր չէր լինում լըրիվ կիրառել ագրոմիջոցառումները։

Նման վիճակից դուրս գալու նպատակով պարտիական կազմակերպությունը խորհրդակցեց կոմունիստների, արտելի մասնագետների ու փորձված հողագործների հետ։

— Ծխախոտը պետք է դուրս բերել այգիներից,— իր կարծիքը հայտնեց կոմունիստ Գուրգեն Ներկարանցը։

— Իսկ որտե՞ղ ցանել, չէ՞ որ հարմար հողատարածություն չկա, իսկ եղածն էլ հնարավոր չէ ոռոգել, ջուր չկա,— վրա բերեցին առանձին մարդիկ։

— Լավ հողատարածություններ մենք ունենք,— ասացին ծխախոտագործուհիներ, կոմունիստներ Արմիկ Հակոբյանը և Մարուսյա Բադասյանը։ Մնում է, որ պարտիական կազմակերպությունը կոնկրետ միջոցառումների դիմի դրանք մշակելու համար։ Ինչո՞վ է վատ մեր Լալա-Թափա կոչվող դաշտամասը, այն շատ հարմար է ծխախոտի ցանքի համար. հարթ է, հողերն էլ բերրի են։ Ճիշտ է, այնտեղ ջուր չկա, բայց Շոր ձորի աննպատակ հոսող ջրերը հնարավոր է խողովակներով տեղափոխել այնտեղ։



— Այո, դա խելացի մտահղացում է, միակ հուսալի ելքը,— միաձայն հավանություն տվեցին հավաքվածները։

Կոմունիստների նախաձեռնությամբ ձեռք բերվեցին խողովակներ և սահմանված ժամկետին մեկ և կես կիլոմետր հեռավորությունից ջուրը բերվեց այդ հողամասի մոտ ու այնտեղ կառուցվեց 1500 տոննա տարողությամբ ջրամբար։ Այդ աշխատանքները կատարվեցին բոլոր՝ 65 կոմունիստների անմիջական մասնակցությամբ։ Բավական է նշել, որ այդ նոր հողատարածությունից լավ մշակության և ոռոգման շնորհիվ ծխախոտի այնքան բերք ստացվեց, որքան չէր ստացվել վերջին 3 տարիներում միասին վերցրած. հեկտարից 25 ցենտներ՝ պլանավորված 10,5-ի դիմաց. այդ անչափ ուրախացրել է կոլտնտեսականներին։

Դրանով, իհարկե, չվերջացավ ջրային ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու նպատակով պարտիական կազմակերպության անելիքը։ Վերջերս տեղի ունեցած հաշվետու ժողովի որոշման մեջ նշվեց, որ 1965 թվականի գարնանը պետք է ձեռնամուխ լինել նոր ջրամբարի կառուցմանը։ Դրա նպատակն է՝ եկող տարի այնտեղ հիմնել 20 հեկտարանոց պտղատու այգի և 5 հեկտարով ընդարձակել ծըխախոտի պլանտացիան։ Անկասկած, Տեղի կոմունիստները պատվով կկատարեն պարտիական կազմակերպության այդ որոշումը ևս։

1964 թվականի հունիս ամսի սկըզբներին էր, խոտհնձի ու հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի նախօրեին։ Տրակտորային բրիգադայի բրիգադավար, պարտբյուրոյի անդամ Ժ. Դավթյանը մոտեցավ պարտկազմակերպության քարտուղարին։

— Մեր բրիգադան որոշել է հենց այժմվանից պայքարել կոմունիստականի բարձր կոչման համար։ Խնդրում ենք ընդառաջել մեր ցանկությանը։

Քարտուղարը մի պահ լռում է, խորհում ու այնուհետև պատասխանում.

— Հիանալի նախաձեռնություն է։ Բայց գիտե՞ք, թե որքան բան է պահանջվում այդ կոչմանն արժանանալու համար։ Չե՞ք շտապում արդյոք։

— Մի կասկածի։ Շրջանում առաջինը մենք ենք որոշել պայքարել, խոստանում ենք՝ առաջինն էլ արժանանալ այդ պատվին,— հավաստիացրեց բրիգադավարը, ապա սեղանին դնելով մի տետր, ավելացրեց,— ահա մեր ստանձնած պարտավորությունները, խնդրեմ, ծանոթացեք։

— Պարտավորությունները լուրջ են, դրանք պետք է քննարկվեն նաև պարտիական ժողովում,— ծանոթանալուց հետո բրիգադավարին դիմեց քարտուղարը։

Երկու օր հետո տեղի ունեցավ ժողովը։ Ողջունելով մեխանիզատորների խրախուսելի քայլը՝ կոմունիստները նրանց ցանկացան հաջողություններ։

Ու բրիգադան լարեց իր ուժերը. այդ օրվանից սկսեց աշխատել նոր եռանդով, կոմունիստականի կոչմանն արժանանալու հաստատ վճռականությամբ։

Սկսվեց խոտհունձը։ Ճիշտ տեղաբաշխելով իր ուժերը՝ բրիգադան գործը կազմակերպեց այն հաշվով, որ խզում չառաջանա հնձի և փոխադրման միջև, դաշտում չմնա ոչ մի խուրձ խոտ։ Դեռ չէր լրացել հնձի ավարտման համար սահմանված ժամկետը, երբ նրանք զեկուցեցին 2000 տոննա խոտ հնձելու առաջադրանքը 500 տոննայով գերակատարելու մասին։ Նրանք հնձեցին նաև ամբողջ եգիպտացորենը, որից պատրաստվեց 620 տոննա սիլոս։ Արտելի կուտակած 1400 տոննա ծղոտի հետ միասին կերի այդ քանակը հանրային հոտին կբավականացնի մեկ և կես տարի։

Իսկ հացահատիկի բերքահավաքի ժամանա՞կ: Հարկ չկա նկարագրելու այն անհանգիստ պահերը, որ ապրում էին կոմունիստականի համար պայքարողները: Նրանք վստահ էին, որ իրենց վարած յոթ կոմբայնները անխափան կգործեն. միայն վախենում էին, որ հանկարծ եղանակները կվատանան ու կձգձգվի բերքահավաքը, ահագին բերք կկորչի: Զանգեզուրին հատուկ է անձրևային ամառը և, իհարկե, անձրևներ եղան, բայց նրանք սեղմ ժամկետում և անկորուստ հավաքեցին 1400 հեկտար հացահատիկը՝ պատվով կատարելով իրենց խոստումը: Նրանք հնձեցին նույնիսկ այն տարածությունների հացահատիկը, որոնք այնքան էլ մեքենահարմար չէին: Ճիշտ է, անցած ձմռանը 400 հեկտար աշնանացան ցրտահարվեց և փչացավ, բայց գարնանն աշնանացանի զբաղեցրած տարածություններում կատարվեց կրկնացանք և հեկտարից ստացվեց մինչև 13 ցենտների բերք:

Բրիգադան ագրոտեխնիկական լավագույն ժամկետում կատարեց նաև 1150 հեկտար աշնանացանը և տնտեսվեցին մոտ 2500 ռուբլու պահեստամասեր ու մեծ քանակությամբ վառելանյութ:

Արտադրական մեծ նվաճումներով ավարտելով 1964 թվականի տնտեսական տարին, բրիգադան գրոհի է ելել նոր տարում նոր բնագծեր գրավելու, կոմունիստականի կոչումը նվաճելու համար:

Ռ. ՏՈՐՈՆՅԱՆ



# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՈԳՈՎ ՏՈԳՈՐՎԱԾ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

Ս. ԽԱՐՄԱՆԴԱՐՅԱՆ

ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը բազմազգ Սովետական սոցիալիստական պետության հիմքերից մեկն է: Այդ բարեկամությունն արտահայտում է Սովետական Միության ժողովուրդների շահերի ընդհանրությունը, նրանց համագործակցության մեծ ուժը կոմունիստական հասարակարգի ստեղծման գործում:

Դարերի խորքից է գալիս Սովետական Միության և, մասնավորապես, Անդրկովկասի ժողովուրդների բարեկամությունը՝ դիմանալով բազում փորձությունների:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից հետո Անդրկովկասի բուրժուական նացիոնալիստները՝ մենշևիկները, մուսավաթականները, դաշնակները և ուրիշներ, անջատելով երկրամասը նրա դարավոր պաշտպան Ռուսաստանից, որը դարձել էր Սովետական ֆեդերատիվ ռեսպուբլիկա, ջլատեցին Անդրկովկասի քաղաքական և տնտեսական միասնությունը: Մեկուսացնելով իրարից ադրբեջանցի, վրացի, հայ և երկրամասի մյուս եղբայրական ժողովուրդներին, թշնամական, ազգայնամոլ մթնոլորտ ստեղծելով նրանց միջև, նրանք հրահրեցին Անդրկովկասի ժողովուրդների եղբայրասպան, ազգային կոտորածները, Անդրկովկասը հասցրին տնտեսական փլուզման, թուլացրին և այն դարձրին Թուրքիայի ագրեսիվ, նվաճողական ծրագրերի իրականացման օբյեկտ:

Գ. Կ. Օրջոնիկիձեն, որ 1920—1925 թթ. ղեկավարում էր Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունները, խոսելով Անդրկովկասի պատմության մեջ 1918—1920 թվականների մասին, նշել է. «Այդ ամբողջ շրջանը՝ նացիոնալիստական սանձարձակության համատարած մղձավանջ էր: Հարյուրավոր այրված գյուղեր, քարուքանդ եղած քաղաքներ, հափշտակված երեխաներ և կանայք, անցյալ տարի, նախքան սովետական իշխանություն հաստատելը հայկական Շուշի քաղաքի խայտառակ ոչնչացում, բռնաբարություն, կոտորած, երեխաներին և կանանց հորերն ու անդունդը գցել,— այս է Անդրկովկասում նացիոնալիզմի տիրապետության անփառունակ շրջանը» (Գ. Կ. Օրջոնիկիձե, Ընտիր հոդվածներ և ճառեր, Երևան, 1950, էջ 75): Միայն սովետական իշխանության հաղթանակը Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում բերեց ազգային խաղաղություն երկրամասի ներսում և, միաժամանակ, վերջ տվեց Թուրքիայի ագրեսիային:

Առանձնապես ծանր էր դրությունը Հայաստանում։ Սովետական իշխանությունն այստեղ հաստատվեց 1920 թվականի նոյեմբերի 29-ին՝ այն պահին, երբ դաշնակցական բուրժուա-նացիոնալիստական կառավարության ավանտյուրիստական ներքին ու արտաքին քաղաքականությունը և Թուրքիայի բարբարոսական արշավանքը հայ ժողովրդին հասցրել էին անդունդի եզրը, և նա կանգնած էր ֆիզիկական ոչնչացման օրհասական վտանգի առաջ, մի բան, որը թուրք վանդալներն արդեն կատարել էին Արևմտյան Հայաստանում, 1915 թվականին։ 50 տարի առաջ կատարված այդ եղեռնը նորից ու նորից է հիշեցնում մեզ, որ միայն սովետական իշխանության հաստատումը փրկեց Արևելյան Հայաստանի ժողովրդին թուրքական յաթաղանից և դաշնակ արկածախնդիրներից, գենոցիդի ենթարկվելու ռեալ վտանգից։ Դաշնակների տիրապետության տարիներին Հայաստանում սովից, հիվանդություններից և Թուրքիայի կողմից գրավված Ղարսում, Իգդիրում, Ալեքսանդրապոլում և այլուր 1918, 1920 թթ. տեղի ունեցած կոտորածների հետևանքով երկրի բնակչությունը (1914 թ. սահմաններում) նվազել էր 1/3-ով, այսինքն՝ զոհվածների թիվը հասնում էր մոտ կես միլիոնի։

Չբավականանալով այդքանով, արդեն տապալված դաշնակները, ապօրինի, 1920 թ. դեկտեմբերի 2-ի գիշերը Ալեքսանդրապոլում (այժմ Լենինական) Թուրքիայի հետ կնքեցին այսպես կոչված Գյումրու կամ Ալեքսանդրապոլի պայմանագիրը, ըստ որի Հայաստանին էր մնում միայն 13 հազար քառ. կմ. տերիտորիա, այսինքն Երևան քաղաքի և Սևանա լճի շրջանները։ Թուրքիային վերապահվում էր Հայաստանի ներքին գործերին միջամտելու և նրա տերիտորիայի վրա ռազմական գործողություններ կատարելու իրավունք։ Ալեքսանդրապոլ—Ջուլֆա երկաթուղագիծը հանձնվում էր Թուրքիայի վերահսկողությանը։ Հայաստանի զինված ուժերը սահմանափակվում էին ընդամենը 1500 մարդով, մի քանի գնդացիրներով (24) և 8 հրանոթով։ Փաստորեն դա Թուրքիայի կողմից Հայաստանը զավթելու, Հայաստանի վրա Թուրքիայի պրոտեկտորատ հաստատելու պայմանագիր էր։

Ալեքսանդրապոլի պայմանագիրը միաժամանակ ուներ և պրովոկացիոն բնույթ։ Դաշնակները, մեկ անգամ ևս ոտնահարելով հայ ժողովրդի շահերը, կատարեցին իրենց իմպերիալիստական տերերի կամքը, որոնք մտադրվել էին միմյանց հետ գժտեցնել Սովետական Ռուսաստանն ու Թուրքիան, ներքաշել նրանց պատերազմի մեջ, կազմակերպել նոր արշավանք Սովետական Ռուսաստանի դեմ։ Արևմտյան իմպերիալիստները հույսեր էին դնում հատկապես պանթուրքական ագրեսիվ ձգտումների վրա։ Ֆրանսիական միլիտարիստների օրգան «Վիկտուար» թերթը 1921 թվականի փետրվարի 8-ին գրել է. «Ռուսական բոլշևիզմի դեմ լավագույն պատվարը Ասիայում համաձայնությունն է ազգայնամոլական Թուրքիայի հետ։ Թուրքական բանակը ետ կմղի բոլշևիզմը ամբողջ Ասիայով մեկ և որպես սկիզբ կզատի Բաքվի նավթաբեր հողերը»։ Փետրվարի 13-ին բրիտանական գաղութարարների օրգան «Նիր Իստը» նշել է. «Ալեքսանդրապոլում կնքված հաշտությունն ուղղված է ավելի շատ Ռուսաստանի, քան Հայաստանի դեմ»։

Սովետական Հայաստանի կառավարությունը չճանաչեց Ալեքսանդրապոլի պայմանագիրը, մերժեց, իսկ Թուրքիան համառորեն ցանկանում էր ուժի մեջ պահել այն, որպես միջոց իր զավթողական ծրագրերի իրականացման համար ոչ միայն Հայաստանի, այլև Վրաստանի ու Ադրբեջանի նկատմամբ։ Այդ էր



պատճառը, որ Թուրքիայի արտաքին գործերի մինիստր Բեքիր Սամի բեյը 1921 թ. փետրվարի 5-ին ի պատասխան Հայկական ՍՍՌ արտգործժողկոմատի կողմից հունվարի 8-ին և 19-ին Թուրքիային ուղղված նոտաների, որոնց մեջ մատնանշվում էին թուրքական օկուպանտների աղաղակող վայրագությունները Սովետական Հայաստանի տերիտորիայում և Ալեքսանդրապոլի շրջանը իրենց զորքերից մաքրելու ու փոխհարաբերությունները կարգավորելու անհրաժեշտությունը, կեղծավորաբար հայտարարում էր. «Մենք կարծում ենք, որ Ալեքսանդրապոլի պայմանագիրը մարմնավորում է ոչ թե բռնություն, այլ արդարություն, և որ նրա իրականացումը անհրաժեշտ է Կովկասում կայուն խաղաղություն հաստատելու համար» (ՍՍՌՄ Արտգործմինիստրություն. ՍՍՌՄ արտաքին քաղաքականության փաստաթղթեր, հատ. 3-րդ, Մոսկվա, 1959, ռուսերեն, էջ 487)։ Անդրկովկասում հյուսված չափազանց բարդ իրադրությունն էր պատճառը, որ Վ. Ի. Լենինը 1921 թվականի փետրվարի 28-ին Մոսկվայի սովետում արտասանած ճառում նշեց, թե Կովկասում «մենք մեծ պատերազմի շեմքին ենք» (Վ. Ի. Լենին, Երկեր, 4-րդ հրատ., հատ. 32, էջ 175)։

Սակայն իմպերիալիստների և նրանց ձայնակիցների մտադրությունները չիրականացան։ Սովետական Ռուսաստանի եռանդուն քաղաքականության շնորհիվ Հայաստանի և Թուրքիայի միջև վիճելի հարցերը դրվեցին Մոսկվայի կոնֆերանսի (1921 թվականի փետրվարի 26— մարտի 16) քննարկմանը։ Սկսվեցին երկարատև բանակցություններ Թուրքիայի հետ՝ ավելի կայուն և արդարացի հաշտության համար։

Սովետական Հայաստանի ինքնուրույն գոյության հիմքը ռազմա-քաղաքական դաշինքն էր ՌՍՖՍՌ-ի հետ, որի համաձայն Սովետական Ռուսաստանի կառավարությունն իսկույն ևեթ անհրաժեշտ զորամասեր հատկացրեց Հայաստանի անկախությունն ապահովելու համար։ Այսպիսով Հայաստանի աշխատավորության վերջնական հաղթանակը հնարավոր դարձավ միայն ՌՍՖՍՌ և մյուս սովետական ռեսպուբլիկաների եղբայրական օգնության շնորհիվ։ Դրանով իսկ Հայաստանը, դուրս եկավ մեկուսացված վիճակից, և մեկընդմիշտ վերջ տրվեցին դրացիների թշնամական հարաբերություններին։

Մոսկվայի պայմանագիրը, որը կնքվեց ՌՍՖՍՌ և Թուրքիայի միջև 1921 թվականի մարտի 16-ին, նշանավորեց սովետական արտաքին քաղաքականության հետագա հաջողությունը պատերազմից խաղաղությանն անցնելու դժվարին պայմաններում։ Սովետական Ռուսաստանը վիժեցրեց իմպերիալիստների հղացած նոր ինտերվենցիայի ծրագիրը. Մոսկվայի պայմանագիրը վերացրեց Հայաստանում, Վրաստանում, Ադրբեջանում սովետական իշխանության ամրապնդումը խափանելու փորձերը և լուրջ ներդրում հանդիսացավ խաղաղության գործում։ Մոսկվայի պայմանագիրը անվավեր համարեց Ալեքսանդրապոլի պայմանագիրը, հաստատեց 1918 թվականի Բրեստի պայմանագրի անվավերությունը, պայմանագիր, որի վրա ևս Թուրքիան հենվում էր։ Պայմանագրի 15-րդ հոդվածը պարտավորեցնում էր Թուրքիային կարգավորել իր հարաբերությունները Անդրկովկասյան սովետական ռեսպուբլիկաների հետ՝ Մոսկվայի պայմանագրի համաձայն։ 1921 թվականի ապրիլի 6-ին ՌՍՖՍՌ արտաքին գործերի ժողկոմ Գ. Վ. Չիչերինը հայտնում է Թիֆլիս՝ Սերգո Օրջոնիկիձեին և Մամիա Օրախելաշվիլուն. «Ալեքսանդրապոլի պայմանագիրը այնքան հրեշավոր է, որ նրա ամեն մի վկայակոչում պետք է հանդիպի ամենակտրուկ հակահարվածի։ Կարելի է ուղղակի հայտարարել, որ Ռուսաստան-

յան ռեսպուբլիկան ոչնչի առաջ կանգ չի առնի, եթե կրկին փորձեն ստիպել Հայաստանին՝ ճանաչելու Ալեքսանդրապոլի պայմանագիրը» (ՍՍՌՄ արտաքին քաղաքականության արխիվ, ֆ. 0216, ց. 3, թղթ. 2, գ. 9, թ. 113)։

Մոսկվայի պայմանագրով Անդրկովկասի սովետական ռեսպուբլիկաներն ապահովվեցին Թուրքիայի հետագա ոտնձգություններից. Սովետական Ռուսաստանի պատվիրակության ղեկավարը Մոսկվայի կոնֆերանսում՝ Չիչերինը հայտարարում էր. «Մենք չենք ընդունի կովկասյան ռեսպուբլիկաների սուվերենիտետը խախտող ոչ մի որոշում նրանց և Թուրքիայի միջև կնքված պայմանագրերում» (Հայկական ՍՍՌ ՀՌՍՇԿՊ արխիվ, ֆ. 114, ց. 1, գ. 63, թ. 47)։ Դրա հետ մեկտեղ Մոսկվայի պայմանագիրը հանդիսացավ Թուրքիայի միջազգային դրության ամրապնդման վճռական գործոն։ Թուրքիան ստացավ սովետական ռեսպուբլիկաների և, ամենից առաջ, ՌՍՖՍՌ բարոյական ու նյութական օժանդակությունը, այսինքն՝ լրիվ հնարավորություն՝ պայքարելու իմպերիալիստական ինտերվենցիայի դեմ։

Այս է Անդրկովկասի սովետական ռեսպուբլիկաների և Թուրքիայի միջև հարաբերությունների կարգավորման էտապներից մեկի իսկությունը 1921 թ. գարնանը։

Ստորև հրապարակվող երեք փաստաթուղթը նվիրված են նրանց հարաբերությունների նորմալացման հետագա էտապին՝ 1921 թվականի գարնանից մինչև աշուն, այսինքն՝ Ղարսի կոնֆերանսի նախապատրաստմանը։ Փաստաթղթերը բացահայտում են Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի սովետական ռեսպուբլիկաների ինտերնացիոնալ համերաշխությունը, նրանց հար ամրապնդվող բարեկամությունը։

Թուրքիան իսկույն ևեթ խախտեց Մոսկվայի պայմանագրի 15-րդ հոդվածը։ Թուրքիայի պատվիրակությունը, որը գլխավորում էր Յուսուֆ Քեմալը, Մոսկվայից Թուրքիա վերադառնալիս, 1921 թվականի ապրիլին պայմանագիր պետք է կնքեր Անդրկովկասյան երեք սովետական ռեսպուբլիկաների հետ։ Բայց Յուսուֆ Քեմալը Բաքվում հայտարարեց, որ նա լիազորություն չունի Հայաստանի վերաբերյալ։ Այդ ժամանակ Սովետական Ադրբեջանը և Վրաստանը, դրսևորելով եղբայրական, ինտերնացիոնալ համերաշխություն, չհամաձայնեցին պայմանագիր կնքել առանց Սովետական Հայաստանի, և հարցը հետաձգվեց։ № 1 և № 2 փաստաթղթերը լուսաբանում են այդ բարդ մոմենտը Անդրկովկասյան—թուրքական կոնֆերանսի գումարման բանակցությունների ընթացքում։ Միաժամանակ № 1 փաստաթուղթը տեղեկություններ է տալիս Անդրկովկասի ռեսպուբլիկաների տնտեսական միավորումն սկսելու մասին, կարևոր մի հանգամանք, որը նախապատրաստում էր Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծումը։

1921 թվականի մայիսի 7-ին Բաքվում տեղի ունեցավ Անդրկովկասյան սովետական ռեսպուբլիկաների ներկայացուցիչների խորհրդակցություն, որին մասնակցում էր նաև Գ. Կ. Օրջոնիկիձեն։ Այդ խորհրդակցությունը նշանակալից դեր կատարեց Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի դիվանագիտական հետագա համախմբման գործում։ Խորհրդակցությունը որոշեց, որ Թուրքիայի հետ տեղի ունենալիք կոնֆերանսում Անդրկովկասյան ռեսպուբլիկաները հանդես գան միացյալ, որպես մեկ համաձայնող կողմ։ Այդ ասպեկտով ուղղվեց Սովետական Ադրբեջանի ներկայացուցիչներ Մ. Դ. Հուսեյնովի և Բ. Շախտախտինսկու մասնակի սխալը, որը թույլ էր տրվել նրանց կողմից Յուսուֆ



Քեմալի հետ դիվանագիտական բանակցությունների ընթացքում և արտահայտվել էր այն բանավոր համաձայնության մեջ, որ նրանք տվել էին Թուրքիային՝ առանձին պայմանագրեր կնքելու հարցում, չնայած պնդել էին, որ պայմանագրերը մշակվեն միացյալ (տե՛ս, փաստաթուղթ № 2)[1]։ Ավելին, խորհրդակցության՝ յուրաքանչյուր ռեսպուբլիկայի հետ կապված հարցերի քննարկման կարգին վերաբերող որոշման մեջ ընդգծվում էր, որ կոնֆերանսում առաջին հերթին անհրաժեշտ է քննարկել այն հարցերը, որոնք կապված են Հայաստանի հետ Թուրքիայի կողմից պայմանագրային հարաբերություններ հաստատելուն (տե՛ս փաստաթուղթ № 3)։

Այդ որոշումները մեծ նշանակություն ունեին, մասնավորապես, Հայաստանի համար, և վկայությունն են այն բանի, թե եղբայրական սովետական ռեսպուբլիկաների աշխատավորները որքան ջերմորեն էին պաշտպանում Սովետական Հայաստանի աշխատավորների շահերը։

Չնայած այդ ամենին, Թուրքիան չհրաժարվեց Անդրկովկասյան սովետական ռեսպուբլիկաների հանդեպ իր անբարյացակամ քաղաքականությունից և գրավեց սպասողական դիրք։ Ամեն կերպ, տարբեր առիթներով նա ձգձգում էր Անդրկովկասյան—թուրքական կոնֆերանսի գումարումը, ցանկանում կրկին մեկուսացնել Հայաստանը և այլն։ Վերջապես կոնֆերանսը նշանակվեց Ղարսում և տեղի ունեցավ 1921 թվականի սեպտեմբերի 26-ից հոկտեմբերի 13-ը։ Այդ կոնֆերանսում ևս թուրքական պատվիրակությունն սկզբից ևեթ անհաջող փորձեր կատարեց պառակտելու սովետական պատվիրակության միասնությունը։ Այդ առթիվ Գ. Կ. Օրջոնիկիձեն ասել է. «Թուրքերն այս անգամ ևս փորձում էին խաղ խաղալ Ադրբեջանի հետ, ձգտելով սեպարատ հաշտություն կնքել նրա հետ, որպեսզի ձեռքներն ազատ լինեին Վրաստանի և Հայաստանի, հատկապես վերջինիս նկատմամբ... Մեր դելեգացիան... կատեգորիկ կերպով հայտարարեց թուրքերին, որ ինքը պահանջում է համատեղ բանակցություններ վարել Անդրկովկասի բոլոր ռեսպուբլիկաների հետ և կնքել միասնական հաշտության պայմանագիր, պայմանագիր մի թերթի վրա, ինչպես այն ժամանակ արտահայտվում էին» (Գ. Կ. Օրջոնիկիձե, Ընտիր հոդվածներ և ճառեր, էջ 128)։

Ղարսի կոնֆերանսում հաղթանակեց Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության ու եղբայրության քաղաքականությունը։ Գ. Կ. Օրջոնիկիձեն սովետների Անդրկովկասյան I համագումարում նշել է. «Ադրբեջանցի ընկերները պահանջեցին նրանց [թուրքական պատվիրակության] կողմից հայերին ցույց տրվող լավ վերաբերմունքի որոշակի ապացույցներ, և այդ հիմնական պայմանը հանդիսացավ։ Այն ժամանակ նրանց համար մեկեն պարզ եղավ, թե այստեղ ինչ է կատարվում։ Նրանք հասկացան, որ նախկին մուսուլմանն արդեն այն մուսուլմանը չէ, որին իրենք ճանաչում էին, այլ սովետական մուսուլման է։ Որ նա մուսուլման է, այդ այդպես է, բայց ոչ թե այն, որը մորթում է հայերին, այլ այն, ով հայերի հետ կիսում է իր վերջին պատառը» (Գ. Կ. Օրջո-

[1] Ղարսի կոնֆերանսի 4-րդ նիստում, 1921 թվականի սեպտեմբերի 30-ին, Սովետական Ադրբեջանի ներկայացուցիչ Բեյբութ Շախտախտինսկին վճռականորեն հայտարարեց. «Ռևոլյուցիոն անհրաժեշտությունը ստիպում է մեզ պնդել միասնական պայմանագրի կնքման վրա։ Այդ միասնական պայմանագրում մենք տեսնում ենք Անդրռեսպուբլիկաների համար նպատակահարմարություն և օգուտ, իսկ Թուրքիայի համար՝ ռեալ ցույց մեր ընդհանուր թշնամիների դեմ... Ադրբեջանական ռեսպուբլիկայի անունից պնդում եմ, որպեսզի պայմանագիրը լինի միասնական...» (ՍՍՌՄ արտաքին քաղաքականության արխիվ, ֆ. 132, ց. 6, թղթ. 4, գ. 3, թ. 78)։

*նիկիձե, Ընտիր հոդվածներ և ճառեր, էջ 109)։ Ղարսի կոնֆերանսը որոշակի դեր կատարեց Սովետական Անդրկովկասի և Թուրքիայի փոխհարաբերությունների նորմալացման, նրանց փոխադարձ ճանաչման, դիվանագիտական և տնտեսական որոշ հարաբերությունների զարգացման գործում։ Ղարսի պայմանագիրն ստիպեց Թուրքիային Անդրկովկասի սովետական ռեսպուբլիկաների հանդեպ վարելու ավելի ռեալ քաղաքականություն. մասնավորապես Հայաստանի նկատմամբ այդ նշանակում էր, նախ և առաջ՝ պաշտոնական հրաժարում Ալեքսանդրապոլի պայմանագրից։*

*Տվյալ փաստաթղթերը ցույց են տալիս, թե ինչպես շնորհիվ կոմունիստական պարտիայի ղեկավարության, ադրբեջանական, վրացի, հայ ժողովուրդների եղբայրական համերաշխության, ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնության, ամրապնդվում էր սովետական իշխանությունը Հայաստանում և ամբողջ Անդրկովկասում։ Առաջին անգամ հրապարակվող այս փաստաթղթերը (ռուսերենից թարգմանված են բառացի, ուստի և պարունակում են հայերենի որոշ ոճական սխալներ) ամբողջովին տոգորված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, որը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման վճռական պայմաններից մեկն է։*

**№ 1**

ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ՍՍՌ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐ Մ. Դ. ՀՈՒՍԵՅՆՈՎԻ[1] ՀԵՌԱԳԻՐԸ ՌՍՖՍՌ ԱՐՏԳՈՐԾԺՈՂԿՈՄ Գ. Վ. ՉԻՉԵՐԻՆԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆՈՒՄ ԹԱՄԺ[1] ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԴԻՎԱՆԱԳԻՏԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԻ ՀԵՏ ՎԱՐԱԾ ԻՐ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ։

*[Հաղորդված է Բաքվից, 1921 թ. ապրիլի 18-ի լույս 19-ի գիշերը] [2]։*

Մոսկվա, արտգործժողկոմ ընկեր Չիչերինին.

Թիֆլիս, Լիազոր ներկայացուցիչ ընկ. Լեգրանին[2]), պատճենն—ընկ. Օրախելաշվիլուն[3]):

Երևան, ընկ. Մռավյանին[4]), պատճենն—ընկ. Օրջոնիկիձեին[5])

Ապրիլի 10-ին ես զրուցում էի Ադրբեջանում Թուրքիայի դիվանագետ-ներկայացուցիչ Մահմուդ Շեվքեթի[3] հետ, որը, նշելով Ադրբեջանի հատուկ դերը որպես Արևելքի երկիր, ցանկություն հայտնեց ունենալ հատուկ հարաբերություն Ադրբեջանի հետ և մոտ օրերս ձեռնամուխ լինել Թուրք-Ադրբեջանական կոնֆերանսին: Ես նրան պատասխանեցի, որ մենք չենք կարող թույլ տալ, որ Ադրբեջանի և Թուրքիայի փոխհարաբերությունները լինեն մեկ, իսկ Թուրքիայի և Հայաստանի կամ Վրաստանի՝ այլ: Նշելով սովետական երկրների շահերի ու նպատակների ընդհանրությունը, ես նրան հայտնեցի, որ ձեռնամուխ է արված Անդրկովկասյան ռեսպուբլիկաների միավորմանը անդրկովկասյան երկաթուղիների միասնական վարչության, արտաքին առևտրական գործունեության միավորման ստեղծման և Անդրկովկասյան բոլոր ռեսպուբլիկաների միասնական Տնտեսական խորհրդի ստեղծման ուղղությամբ: Ուստի, հայտնեցի ես Մահմուդ Շեվքեթին, որ Անդրկովկասյան ռեսպուբլիկաները պետք է միասնաբար կնքեն պայմանագիր Թուրքիայի հետ: Ի պատասխան դրա Մահմուդ Շեվքեթը հայտարարեց, որ պատվիրակությունը[6]) ունի հանձնագրեր պայմանագրեր կնքելու Ադրբեջանի հետ առանձին և առանձին Վրաստանի հետ, իսկ Հայաստանի հետ պայմանագիր կնքելու համար թուրքպատվիրակությունը հանձնագիր չի ստացել: Նկատի առնելով ստեղծված դրությունը ես համաձայնություն հայտնեցի պատվիրակության Ղարս մեկնելուն, ուր նա Քյազիմ Կարաբեքիրի[7]) հետ միասին, զուգն և իր կառավարության հետ հարաբերության մեջ մտնելով, կլուծի Անդրկովկասյան ռեսպուբլիկաների հետ պայմանագիր կնքելու հանձնագրերի հարցը: Թուրքերի հայտարարությամբ ապրիլի 19-ի երեկոյան իրենց համար պատվիրված է գնացք... ապրիլի 18-ին իմ կողմից Մահմուդ Շեվքեթին հանձնված է հայտագիր այն մասին, որ մոտակա ժամանակներս մենք ուղարկում ենք Անգորա[4] մեր ներկայացուցչությունը: Խնդրում եմ շտապ Ձեր ցուցումները: № 1005:

Արտգործժողկոմ Դ. Հուսեյնով:

*Ադրբեջանական ՍՍՌ ՀՌՄՇԿՊ Արխիվ, ֆ. 28, ց. 2, գ. 27, թ. 87—թարգմանություն ռուսերենի խնկականից։*

---

[1] *Թուրքիայի ազգային մեծ ժողովի։*

[2] *Դատան ճշտված է փաստաթղթի բովանդակությունից։*

[3] *Այդպես է բնագրում. ճիշտը պետք է լինի Մեմդուհ Շևքեթ բեյ։*

[4] *Այժմ Անկարա։*

**№ 2**

Մ. Դ. ՀՈՒՍԵՅՆՈՎԻ ՀԵՌԱԳԻՐԸ Գ. Կ. ՕՐՋՈՆԻԿԻՁԵԻՆ ԻՐ ԿՈՂՄԻՑ Գ. Վ. ՉԻՉԵՐԻՆԻՆ ՈՒՂԱՐԿՎԱԾ ՀԵՌԱԳՐԻ ՏԵՔՍՏԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՄԲ։

*[Բաքվից], հաղորդված է [1921 թ.] ապրիլի 20-ին—ժ. 15⁰⁰։*

Թիֆլիս, Օրջոնիկիձեին, պատճենն—Օրախելաշվիլուն:

Պատճենն—Երևան, Մռավյանին:

Ընկ. Չիչերինին իմ կողմից ուղարկված է[1] հետևյալ հեռագիրը. «Այսօր ես և Շախտախտինսկին[8]) զրուցում էինք թուրքերի հետ, որոնք, պարզվում է, խիստ դժգոհ մնացին մեզնից իմ առաջարկության համար՝ խոսել միայն Անդրկովկասյան—թուրքական կոնֆերանսի մասին: Մրտ-քերի երկարատև փոխանակությունից հետո թուրքերը համաձայնեցին Անդրկովկասյան—թուրքական կոնֆերանսին [այն] պայմանով, որպեսզի միացյալ կերպով մշակված պայմանագրերը առանձին-առանձին ստորագրվեն յուրաքանչյուր ռեսպուբլիկայի հետ: Մենք դրա հետ համաձայնեցինք: Թուրքերը պնդում են կոնֆերանսի վայրը նշանակել Ղարսը, պատճառաբանելով, որ այնտեղ իրենց հեշտ կլինի կապվել Անգորայի հետ: Ադրբեջանի կողմից մենք համաձայնություն հայտնեցինք Ղարսի վերաբերյալ, միաժամանակ նշելով Վրաստանի և Հայաստանի համաձայնության անհրաժեշտությունը: Կարծում ենք, որ մեր հիմնական պայմանի ընդունմամբ, Ղարսին կարելի է համաձայնել»: Հայտնում եմ Ձեզ ի գիտություն, որ այսօր երեկոյան ժամի 11-ին թուրքական պատվիրակությունը Յուսուֆ Քեմալի գլխավորությամբ մեկնեց[2] Ղարս՝ Թիֆլիս—Ալեքսանդրապոլի[3] վրայով: Խնդրում եմ հաղորդել Ձեր նկատառումները: № 594:

(Հուսեյնով):

*Ադրբեջանական ՍՍՌ ՀՌՄՇԿՊ Արխիվ, ֆ. 28, ց. 2, գ. 27, թ. 164, թարգմանություն ռուսերենի վավերացված պատճենից։*

---

[1] *Հեռագիրն ուղարկված է Բաքվից 1921 թ. ապրիլի 19-ին, ժամի 20-ն անց 40 րոպե, հաղորդված է Մոսկվա, ՌՍՖՍՌ Արտգործժողկոմատ ժամի 21-ն անց 10 րոպե։*

[2] *Այդպես է բնագրում. պետք է լինի—մեկնում է։*

[3] *Այժմ Լենինական։*

*№ 3*

*1921 Թ. ՄԱՅԻՍԻ 7-ԻՆ ԲԱՔՎՈՒՄ ԿԱՅԱՑԱԾ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ։*

*Տպագրվում է հինգ օրինակով։*

## 1921 Թ. ՄԱՅԻՍԻ 7-ԻՆ ԲԱՔՈՒ ՔԱՂ. [ԿԱՅԱՑԱԾ] ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Խորհրդակցությանը մասնակցեցին. Կովկասյան ռազմաճակատի ՌՌԽ-ի[1] անդամ ընկ. Օրջոնիկիձեն, Անդրկովկասյան ռեսպուբլիկաներում ՌՍՖՍՌ լիազոր ներկայացուցիչ ընկ. Բ. Վ. Լեգրանը, Վրաստանի ՍՍՌ ներկայացուցիչ ընկ. Մամիա Օրախելաշվիլին, Հայաստանի ՍՍՌ ներկայացուցիչ ընկ. Ա.[2] Ա. Բեկզադյանը[9]) և Ադրբեջանական ՍՍՌ ներկայացուցիչներ՝ ընկ. Միրզա Դավուդ Հուսեյնովը և ընկ. Բեյբուդ Շախտախտինսկին։

Նախագահում է ընկ. Օրախելաշվիլին, քարտուղար է ընկ. Ա. Ա. Անդրեևը։

ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՀԱՐՑԸ։ Քննարկելով այն հարցը, թե կարելի է ներկա խորհրդակցությունը համարել Անդրկովկասյան Ռեսպուբլիկաների կոնֆերանս, որոշվեց ներկա նիստը համարել նախնական խորհրդակցություն, որից հետո, Անդրկովկասյան Ռեսպուբլիկաների դելեգատների Մոսկվայից վերադառնալուց[10]) և ներկա խորհրդակցության օրակարգում դրված հարցերը տեղերում, այսինքն՝ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի կողմից քննարկելուց հետո գումարել Անդրկովկասյան Ռեսպուբլիկաների կոնֆերանս Երևան քաղաքում[11])։

*ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է ՀԵՏԵՎՅԱԼ ՕՐԱԿԱՐԳԸ.*

1. Անդրկովկասյան Ռեսպուբլիկաների միացյալ կոնֆերանսը Թուրքիայի Ազգային Մեծ Ժողովի կառավարության հետ։
2. Անդրկովկասյան-թուրքական կոնֆերանսի վայրը և ժամանակը։
3. ԹԱՄԺ կառավարության հետ Անդրկովկասյան Ռեսպուբլիկաների բանակցությունների հիմքերը։
4. Անդրկովկասյան Ռեսպուբլիկաներից յուրաքանչյուրի հետ կապված հարցերի քննարկման կարգը։
5. Լրացումներ և փոփոխություններ ի զարգացում Մոսկվայի պայմանագրի։

---

ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻԱՑՅԱԼ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ ԹՈՒՐՔԻԱՅԻ ԱԶԳԱՅԻՆ ՄԵԾ ԺՈՂՈՎԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԵՏ։ Քննարկելով կոնֆերանսի հարցը, խորհրդակցությունը որոշեց, որ սպասվող կոնֆերանսում բոլոր Անդրկովկասյան Ռեսպուբլիկաները, այսինքն՝ Ադրբեջանական Սոց[իալիստական] Սով[ետական] Ռեսպուբլիկան, Վրաստանի Սոց[իալիստական] Սով[ետական] Ռեսպուբլիկան և Հայաստանի Սոց[իալիստական] Սով[ետական] Ռեսպուբլիկան հանդես կգան միացյալ, որպես մեկ պայմանավորվող կողմ։

ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՎԱՅՐԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԸ։ Կոնֆերանսի ժամանակի և տեղի հարցի մասին խորհրդակցությունը որոշեց, որ այն չի կարող տեղի ունենալ՝ մոտ օրերս Մոսկվա մեկնող Անդրկովկասյան Սովետական Ռեսպուբլիկաների ներկայացուցիչների վերադարձից շուտ։ Ինչ վերաբերում է կոնֆերանսի հավաքման վայրին, ապա այդպիսին ցանկալի է նշանակել Բաքուն, կամ Թիֆլիսը։ Խորհրդակցությունը չէր հանդիպի խոչընդոտների նշանակելու այդպիսի վայր և Կարսը, եթե ԹԱՄԺ-ի կառավարությունը հատկապես կցանկանա այդ, սակայն բոլոր դեպքերում հավաքման տեղի հարցը չի կարող դրվել ուլտիմատիվ [պահանջի] ձևով։

ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԻՄՔԸ։ Խորհրդակցությունը որոշեց բանակցությունների և հետագա պայմանագրի հիմքում հենակետ ընդունել Մոսկվայի մարտի 16-ի պայմանագիրը։

ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻՑ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻ ՀԵՏ ԱՌԱՆՁԻՆ ԿԱՊՎԱԾ ՀԱՐՑԵՐԻ ՔՆՆԱՐԿՄԱՆ ԿԱՐԳԸ։ Հաշվի առնելով այն հանգամանքը, որ Հայաստանի հետ Թուրքիայի [կողմից] պայմանագրային հարաբերությունների հաստատման հետ կապված հարցերն առանձնապես սուր են, խորհրդակցությունը որոշեց. առաջիկա կոնֆերանսում պնդել, որ առաջին հերթին քննարկվեն Հայաստանի հետ Թուրքիայի [կողմից] պայմանագրային հարաբերությունների հաստատման հետ կապված հարցերը, երկրորդ հերթին՝ Վրաստանի հետ և երրորդ՝ արդեն Ադրբեջանի հետ։

ԼՐԱՑՈՒՄՆԵՐ ԵՎ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐ Ի ԶԱՐԳԱՑՈՒՄ ՄՈՍԿՎԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ։ Մոսկվայի պայմանագրի 3-րդ պարագրաֆով Թուրքիայի, Ադրբեջանի և Հայաստանի ներկայացուցիչներից [կազմված] հատուկ Հանձնաժողովին տրված է իրավունք ուղղելու Հայաստանի և Նախիջևանի սահմանը, ուստի նկատի առնելով, որ այդ հարցը անհրաժեշտորեն կկանգնի Անդրկովկասյան—Թուրքական կոնֆերանսի առջև, խորհրդակցությունը որոշեց. ինչպես նաև միջոցներ ձեռք առնել տեղում Ադրբեջանի և Հայաստանի ներկայացուցիչների կողմից ուսումնասիրելու սահմանի ճիշտ որոշման հարցը[12]), ազգագրական սկզբունքի, նմանապես և տեղական բնակչության կողմից այդ հարցի շուրջը հաստատված հայացքների համաձայն։

Նախագահ— (ստորագրություն) Մ. Օրախելաշվիլի։

Անդամներ— (ստորագրություններ) Բ. Շախտախտինսկի, Դ. Հուսեյնով։

Քարտուղար— (ստորագրություն) Ա. Անդրեև։

*Հայկական ՍՍՌ ՀՌՍՇԿՊ Արխիվ, ֆ. 113, ց. 3, գ.21, թ. 71—72 (տե՛ս նաև Ադրբեջանական ՍՍՌ ՀՌՍՇԿՊ Արխիվ, ֆ. 28, ց. 2, գ. 27, թ. 29—30)— Թարգմանություն ռուսերենի խնկականից։*

---

1 *Ռազմա-ռևոլյուցիոն խորհրդի։*

2 *Բնագրում տպված է սխալ— Մ. Ա. Բեկզադյանը։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆ

1) ՄԻՐԶԱ ԴԱՎՈՒԴ ՀՈՒՍԵՅՆՈՎ *(1894—1938)—ՍՄԿՊ և Սովետական պետության գործիչ։ Պարտիայի անդամ 1919 թվականից. 1920 թ. փետրվարին Ադրբեջանի Կ(բ)Պ անլեգալ I համագումարում ընտրվել է Ադրբեջանի Կ(բ)Պ Կենտկոմի նախագահ. 1920—1921 թթ. Ադրբեջանական ՍՍՌ Ռևկոմի նախագահի տեղակալ և արտաքին գործերի ժողովրդական կոմիսար. 1922 թ. ՌՍՖՍՌ ազգությունների գործերի ժողկոմի տեղակալ. 1923—1929 թթ. Անդրկովկասյան ՍՖՍՌ Ժողկոմխորհի նախագահի տեղակալ և ֆինանսների ժողկոմ. 1930 թ. մինչև 1934 թ. Տաջիկստանի Կ(բ)Պ Կենտկոմի 1-ին քարտուղար։ Զոհ է դարձել կամայականության՝ անհատի պաշտամունքի տարիներին։*

2) ԲՈՐԻՍ ՎԱՍԻԼԵՎԻՉ ԼԵԳՐԱՆ—*Ծնվել է 1884 թ., ՌՍԴԲՊ անդամ է 1901 թվականից, բոլշևիկ, եղել է պարտիայի Թիֆլիսի, հետագայում (1906—1907) Պետերբուրգի կոմիտեների անդամ, երեք անգամ բանտարկվել է Թիֆլիսում, Բաքվում և Պետերբուրգում ցարական իշխանությունների կողմից, արտաքսվել է Պետերբուրգից։ 1907—1915 թթ. հեռացել է ակտիվ պարտիական աշխատանքից։ 1917 թ. ամռանը վտարվել է գործող բանակից (Արևմտյան ռազմաճակատ) բոլշևիկյան ագիտացիայի պատճառով։ Կրթությամբ իրավաբան, Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո նշանակվել է Սովետական Ռուսաստանի ռազմական գործերի ժողկոմի տեղակալ, հետո Պետրոգրադի օկրուգային դատարանի և Պետրոգրադի դատական պալատի կոմիսար։ 1919 թվականից վարել է դիվանագիտական աշխատանք և դրսևորվել է որպես սովետական աչքի ընկնող դիվանագետ, 1920 թ. ՌՍՖՍՌ լիազոր ներկայացուցիչն էր դաշնակցական Հայաստանում, 1921—1922 թթ. ՌՍՖՍՌ լիազոր ներկայացուցիչը՝ Անդրկովկասյան սովետական ռեսպուբլիկաներին կից։ Եղել է ղեկավար պարտիական և սովետական աշխատող Հեռավոր Արևելքում։ 1930 թվականից Լենինգրադի Պետական էրմիտաժի դիրեկտոր, մահացել է 1936 թ.։*

3) ԻՎԱՆԵ ԴՄԻՏՐԻԻ (ՄԱՄԻՅԱ) ՕՐԱԽԵԼԱՇՎԻԼԻ—*(1883—1940)—ՍՄԿՊ և Սովետական պետության գործիչ։ Բոլշևիկյան պարտիայի անդամ 1903 թվականից, 1905 թ. ռևոլյուցիայի ակտիվ մասնակիցը Պետերբուրգում. 1917 թ. պարտիայի Վլադիկավկազի (այժմ Օրջոնիկիձե) կոմիտեի Վլադիկավկազի սովետի նախագահ. 1918 թ. բանտարկվել է Վրաստանի մենշևիկյան կառավարության կողմից և ազատվել է միայն 1920 թ. մայիսին։ 1918 թ. մարտից պարտիայի Կովկասյան երկրային կոմիտեի անդամ, ապա 1920 թ. ՌԿ(բ)Պ Կովկասյան բյուրոյի անդամ։ 1921 թ. Վրաստանի ՍՍՌ Ռևկոմի նախագահի տեղակալ, արտաքին գործերի, լուսավորության ժողկոմ,*

1921—1937 թթ. Վրաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար, Անդրկովկասյան ՍՖՍՌ ժողկոմխորհի նախագահ, ՀամԿ(բ)Պ Անդրերկրկոմի քարտուղար։ Զոհվել է Ստալինի անձի պաշտամունքի տարիներին։

4) ԱՍՔԱՆԱԶ ԱՐՏԵՄԻ ՄՌԱՎՅԱՆ (1886—1929)—ՍՄԿՊ և Սովետական պետության գործիչ, պարտիայի անդամ 1905 թվականից. այդ ժամանակաշրջանում Հայաստանի ՍՍՌ Ռևկոմի անդամ էր և արտաքին գործերի ժողովրդական կոմիսարը։ Մասնակցել է Ղարսի կոնֆերանսին որպես Սովետական պատվիրակության անդամ՝ Հայաստանի կողմից։

5) Գ. Կ. ՕՐՋՈՆԻԿԻՁԵՆ այդ օրերին (ապրիլի 18—21) Երևանում էր, ուր եկել էր տեղում Հայաստանի դրության հետ ծանոթանալու նպատակով՝ դաշնակների 1921 թ. Փետրվարյան ավանտյուրայի լիկվիդացիայից և Երևանը ապրիլի 2-ին ազատագրելուց հետո։ Այստեղ նա ստացավ Մ. Դ. Հուսեյնովի հեռագիրը, ինչպես և Վ. Ի. Լենինի ապրիլի 19-ի հեռագիրը հասցեագրված՝ «Երևան, ընկ. Օրջոնիկիձեին», որով Լենինը հարցում էր անում Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի արտաքին առևտրի միավորման մասին։

6) Խոսքը Յուսուֆ Քեմալի գլխավորած Թուրքական պատվիրակության մասին է։

7) Քյազիմ Կարաբեքիր փաշան Թուրքիայի Արևելյան ռազմաճակատի հրամանատարն էր, մոլի ռեակցիոներ։

8) ԲԵՅԲՈՒԹ ՇԱԽՏԱԽՏԻՆՍԿԻ (1881—1924)—Սովետական պետության գործիչ։ Բոլշևիկյան «Հումմետի» անդամ 1917 թվականից, Բաքվի կոմունայի ակտիվ մասնակիցը. 1920—1921 թթ. Ադրբեջանական ՍՍՌ ներկայացուցիչը ՌՍՖՍՌ-ում, որոշ ժամանակ Ադրբեջանական ՍՍՌ ներկայացուցիչը Թուրքիայում. 1921 թ. հունիսից Ադրբեջանական ՍՍՌ բանվորագյուղացիական տեսչության ժողկոմ և ժողկոմխորհի նախագահի տեղակալ. այդ պաշտոնում նա մասնակցել է Ղարսի կոնֆերանսին որպես Սովետական պատվիրակության անդամ Ադրբեջանի կողմից։ Հետագայում Նախիջևանի ռևկոմի, ապա ժողկոմխորհի նախագահ։

9) ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱՐՏԵՄԻ ԲԵԿԶԱԴՅԱՆ (1881—1939 թթ.)—ՍՄԿՊ և Սովետական պետության գործիչ։ ՌՍԴԲՊ անդամ 1902 թվականից, պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ (պարտիական ծածկանունն էր «ՅՈՒՐԻՅ»). 1905 թ. աշնանը ընտրվել է Տամերֆորսի կոնֆերանսի դելեգատ Բաքվի պարտկազմակերպության կողմից, բայց բանտարկվել է, 1906 թ. փախել է բանտից և էմիգրացիայի ենթարկվել Շվեյցարիա, որտեղ կատարել է պարտիական աշխատանք՝ անմիջական կապ պահպանելով Վ. Ի. Լենինի հետ։ 1918 թ. Բաքվի Սովետի հատուկ լիազորն էր հացի մթերման գծով Հյուսիսային Կովկասում. 1919—1920 թթ. պարտիայի անլեգալ Կովկասյան երկրային կոմիտեի անդամ. 1920 թ. նոյեմբերից—1921 թ. Հայաստանի ՍՍՌ ռևկոմի անդամ և արտաքին գործերի ժողկոմ. հետագայում Անդրկովկասյան ֆեդերացիայի պետական խոշոր գործիչ։ 1930—1937 թթ. ՍՍՌՄ լիազոր ներկայացուցիչը Նորվեգիայում, ապա Հունգարիայում։ Զոհ է դարձել կամայականության և օրինականության խախտման։

10) Խորհրդակցության մասնակիցները մեկնում էին Մոսկվա, Անդրկովկասի տնտեսական միավորման հարցի կապակցությամբ։

11) Խորհրդակցության կողմից նշված հատուկ կոնֆերանս չի եղել։ Անդրկովկասյան—Թուրքական կոնֆերանսի հետ կապված սկզբունքային հարցերը կանխատեսվեցին տվյալ խորհրդակցության որոշումներով։

12) Այդ աշխատանքը կատարվեց։ Բացի դրանից Ղարսի կոնֆերանսում Անդրկովկասի միացյալ պատվիրակությունը առաջարկություն մտցրեց մասնակի սահմանային ուղղում մտցնել, որպեսզի միջնադարյան Հայաստանի մայրաքաղաք Անիի ավերակները, որոնք մնացել էին Սովետական Հայաստանից մի քանի կմ. հեռավորության վրա և ունեն համաշխարհային կուլտուր-պատմական նշանակություն, որտեղ ակադեմիկոս Նիկողայոս Մառը 19-րդ դարի վերջերից սկսած կատարում էր հնագիտական պեղումներ, մնան հայ ժողովրդի պետականության մեջ։ Բայց Թուրքական կառավարությունը ցույց չտվեց հարցի ըմբռնում և բարյացակամ վերաբերմունք սովետական ռեսպուբլիկաների առաջ քաշած խնդրին։



## ՈՒՂԵՂԸ ՀՈՐՄՈՆՆԵՐԻ ԱՂԲՅՈՒՐ Է

Ա. ԳԱԼՈՅԱՆ

Կենսաբանական գիտությունների դոկտոր

Ուղեղը մտածողության օրգանը չէ միայն: Օրգանիզմի ֆունկցիաների կանոնավորումը տեղի է ունենում քիմիական մի շարք նյութերի և հորմոնների միջոցով, որոնք արտադրվում են ուղեղի կողմից: Օրգանների և հյուսվածքների հետ ուղեղի կապն իրացվում է ինչպես նյարդաթելերի, այնպես էլ արյան մեջ արտադրվող մի շարք քիմիական նյութերի միջոցով (հումորալ ուղի):

Արտաքին աշխարհում և օրգանիզմի ներսում կատարվող յուրաքանչյուր տատանում՝ օդի ջերմաստիճանի, մթնոլորտային ճնշման, արյան քիմիական կազմի և մի շարք այլ փոփոխություններ նյարդային վերջույթների միջոցով հաղորդվում են ուղեղի որոշ հատվածներին, որոնք համապատասխան ռեակցիա են տալիս և նյարդահումորալ ճանապարհով կարգավորում, հավասարակշռում են խանգարված ֆունկցիան:

Երկար տարիներ վեճ էր ընթանում այն մասին, թե ուղեղը կարո՞ղ է ունենալ ներզատիչ գեղձերի հատկություն, ինչպես ասենք, ենթաստամոքսային և սեռական գեղձերը, մակերիկամը, վահանաձև և հարվահանաձև գեղձերը և այլն: Այլ կերպ ասած, կարո՞ղ է ուղեղը արտադրել հորմոններ, որոնք ուղեղի բջիջներից ուղղակի արտազատվեն արյան մեջ և կարգավորեն օրգանիզմի այս կամ այն ֆունկցիան: Այս չափազանց հետաքրքրական վեճը վերջին երեք տասնամյակների ընթացքում լուծվել է դրականորեն: Պարզվել է, որ ուղեղի վեգետատիվ նյարդային սիստեմի բարձրագույն կենտրոնը՝ հիպոթալամուսային շրջանը հանդիսանում է հորմոնների աղբյուր: Ամուսիններ Շառերների հիստոքիմիական և բիոքիմիական հետազոտությունները ապացուցեցին, որ կաթնասունների և այդ թվում մարդու մոտ ուղեղի հիպոթալամուսային հատվածների բջիջները արտադրում են հորմոններ: Այդ հորմոններն արտադրվում են, այսպես կոչված, նեյրոսեկրետոր բջիջների կողմից: Արտազատված նյութերն իրենցից ներկայացնում են բարդ գոյացումներ, որոնք կազմված են սպիտակուցներից, ածխաջրատներից և ճարպերից: Սակայն, ինչպես պարզվել է, ոչ բոլոր նյութերն են օժտված հորմոնալ հատկությամբ: Հորմոնալ հատկություններ ունեն սպիտակուցները: Մինչդեռ ածխաջրատա-ճարպային կոմպլեքսը սպիտակուցային բնույթ ունեցող հորմոնների կրողն է և նպաստում է դրանց տեղափոխմանը: Ուղեղում հայտնաբերված առաջին սպիտակուցային հոր-

մոնները, այսպես կոչված, վազոպրեսինը և օքսիտոցինն են, որոնք կազմված են ութ ամինոթթուներից և իրարից տարբերվում են որոշ ամինոթթուների դասավորությամբ։ Վազոպրեսինը բարձրացնում է արյան ճնշումը և ազդում է երիկամների անոթների վրա, կանոնավորելով մեզի արտադրությունը։ Կասկած չի հարուցում այն փաստը, որ արյան ճնշման փոփոխությունները ու երիկամային հիվանդությունները որոշակիորեն կապված են նաև վազոպրեսինի արտազատման խանգարումների հետ։ Այսպես, նշված հորմոնի պակասը առաջ է բերում անշաքար, «շաքարախտ» հիվանդությունը, որի ժամանակ մեզի միջոցով կորչում է մի քանի լիտր ջուր և, եթե չներարկվի վազոպրեսին, ապա մարդը կարող է մահանալ ջրազրկությունից։ Օքսիդոցինը կանոնավորում է կաթնազատության պրոցեսը և նպաստում արգանդի կծկումներին։ Բացի դրանից ուղեղային հորմոնները ունեն նաև խթանիչ հատկություններ։ Վերջին տարիներին պարզվել է, որ հիպոթալամուսի բջիջների կողմից արտադրվում է մի հորմոն, որն արյան հետ հասնելով հիպոֆիզ, խթանում է վերջինիս կողմից, այսպես կոչված, ադրենոկորտիկոտրոպ հորմոնի սինթեզմանը և արտազատմանը։ Այս հայտնագործությունն ունի չափազանց կարևոր նշանակություն։ Բանն այն է, որ ադրենոկորտիկոտրոպ հորմոնը մեծ դեր է խաղում օրգանիզմի հարմարողական պրոցեսներում։ Մրսում է մարդը կամ թե ջերմում, ճուզվում է, թե ուրախանում, տառապում է ինֆեկցիոն կամ որևէ ներքին հիվանդությամբ, այս հորմոնի արտազատումը փոփոխվում է։ Այդ, կարելի է ասել, ունի ախտորոշիչ նշանակություն։ Բացի դրանից, այդ հորմոնը ազդելով մակերիկամի կեղևային շերտի վրա, նպաստում է այսպես կոչված կորտիկոստերոիդների արտադրմանը։ Վերջիններս կատարում են կարևոր դեր ադապտացիոն պրոցեսներում։ Այդ պատճառով նշված հորմոնը ունի բուժիչ հատկություններ։ Այստեղից պետք է հանգել այն եզրակացության, որ ուղեղային հորմոնները ամբողջ օրգանիզմի ֆունկցիաների կանոնավորման կարևոր գործոնն են։

Վերջին երկու տարիների ընթացքում պարզվել է, որ ադրենոկորտիկոտրոպը կարող է սինթեզվել հիպոթալամուսի բջիջների կողմից և դուրս գալ արյան մեջ որպես պատրաստի հորմոն։ Պարզվել է նաև, որ ուղեղի այդ հատվածում կարող է գոյանալ նաև այսպես կոչված աճի հորմոնը, որի բացակայությունն առաջ է բերում գաճաճություն հիվանդությունը։ Այժմ արդեն հայտնի է, որ վահանաձև գեղձի հորմոնի (թիրոքսինի) արտադրությունը, ինչպես նաև սեռական գեղձերից հորմոնների արտադրությունը ևս ենթակա է հիպոթալամուսից եկող քիմիական նյութերի ներգործությանը։ Կլինիցիստների կողմից վաղուց ապացուցվել է, որ հիպոթալամուսի շրջանի վնասումները առաջ են բերում սեռական օրգանների թերզարգացում (ինֆանտիլիզմ), ճարպակալում, քնի խանգարումներ, ախորժակի բացակայություն և մի շարք այլ հիվանդագին երևույթներ։

Անհրաժեշտ է նշել, որ հիպոթալամուսային շրջանում կուտակված են ոչ միայն սպիտակուցային բնույթի հորմոններ, այլև ներվային գրգիռը հաղորդող մի շարք քիմիական փոխանցիչներ։ Ուշագրավն այն է, որ այդ փոխանցիչները ևս ունեն հորմոնալ նշանակություն. արյան հետ անցնելով հիպոֆիզ, նրանք խթանում են այս կամ այն հորմոնի առաջացումը։ Ինքնըստինքյան հասկանալի է այն տեսակետի անհիմն լինելը, ըստ որի ուղեղի դերը հորմոնագոյացության մեջ ժխտվում էր։

Զնայած ձեռք բերված հաջողություններին, գիտությունը դեռևս քիչ բան գիտի ուղեղի հիպոթալամուսային բջիջների քիմիական և ֆիզիոլոգիական առանձնահատկությունների մասին. հայտնի չէ, թե նշված հորմոններից որը որ բջիջներից է արտադրվում։ Ի՞նչ ձևով է տեղի ունենում այս հորմոնների առաջացման կանոնավորումը հենց իրեն հիպոթալամուսի ներսում. ինչպիսի՞ դեր են խաղում քիմիական փոխանցիչները սպիտակուցային հորմոնների առաջացման գործում, ինչպիսի՞ նոր հորմոններ գոյություն ունեն հիպոթալամուսում և այլն։ Վերջին հաշվով պետք է նկատի ունենալ, որ օրգանիզմի ներվային ծագում ունեցող բարդ հիվանդությունների բուժումը կախված է տվյալ մեխանիզմների բացահայտումից։

Դժբախտաբար մեզ մոտ՝ Սովետական Միությունում դեռևս լայն ծավալ չեն ստացել նոր հորմոնների անջատման և նրանց քիմիական կառուցվածքի ուսումնասիրման աշխատանքները։ Այդ, մասամբ պետք է բացատրել նաև նրանով, որ անհատի պաշտամունքի շրջանում անհանդուրժելի վիճակ էր ստեղծվել ոչ միայն գենետիկայի բնագավառում, ուր լուրջ մեղադրանք էր ներկայացվում խրոմոզային տեսությամբ զբաղվողներին, այլև խիստ աղավաղված ձևով էին ներկայացվում պավլովյան ֆիզիոլոգիայի ճշգրիտ դրույթները որոշ գիտնականների կողմից։

Ինչպես հայտնի է Պավլովի ուսումնասիրությունները հիմնականում վերաբերում են պայմանական ռեֆլեքսներին։ Ուղեղի կեղևային մասը, լինելով ֆիլոգենետիկ զարգացման մի նոր հատվածը, իր վրա է վերցնում պայմանական ռեֆլեքսների առաջացման հիմնական ֆունկցիան։ Սակայն, ինչպես ցույց է տալիս պավլովյան ուսմունքը, ուղեղի կեղևում կատարվող բարդ ֆիզիոլոգիական պրոցեսների առաջացումը՝ գրգռումը և արգելակումը, պայմանավորված են նաև ենթակեղևային հատվածներում կատարվող ֆիզիկո-քիմիական պրոցեսներով։ Անպայմանական ռեֆլեքսները, որոնց ֆոնի վրա առաջանում են պայմանական ռեֆլեքսները, հիմնականում կազմավորվում են ենթակեղևային հատվածներում։ Ըստ պավլովյան ուսմունքի, պայմանական ռեֆլեքսները ժամանակի ընթացքում վեր են ածվում անպայմանականի։ Այլ կերպ ասած, այս ուսմունքը երբևիցե չի հակադրել կեղևի գործունեությունը ենթակեղևայինին։ Մինչդեռ պավլովյան ուսմունքի «անարատությունը» պաշտպանելու պատրվակով, մի շարք գիտնականներ ուղեղի կեղևի գործունեությունը հակադրում էին ենթակեղևայինին։ Վեգետատիվ ներվային հատվածների (հիպոթալամուսի շրջանի) ուսումնասիրությունը երկար տարիների ընթացքում հետին պլանի վրա էր մղված։ Լ. Ա. Օրբելու ստեղծած սիմպատիկ սիստեմի ադապտացիոն-տրոֆիկ ուսմունքը չէր զարգացվում։ Դժվար է ասել, թե այսպիսի վիճակը ինչպիսի լուրջ դժվարությունների առաջ կկանգներ բիոլոգիայի զարգացումը, եթե ժամանակին չըշտկվեր այն։

***

Զնայած մի շարք դժվարությունների, մեր կողմից կուտակված են բազմաթիվ տվյալներ, որոնք պարզաբանում են ուղեղի հորմոնների սինթեզի մեխանիզմի մի քանի կողմեր, ինչպես նաև հայտնաբերված են նոր հորմոնալ բնույթ ունեցող մի շարք նյութեր, որոնք կանոնավորում են սրտի շրջանում արյան պսակաձև շրջանառության գործունեությունը։

Ուսումնասիրելով հիպոթալամուսի քիմիական փոխանցիչների՝ ացետիլխոլինի, ադրենալինի, նորադրենալինի,

հիստամինի, սերոտոնինի դերը նեյրոսեկրետոր հորմոնների գոյացման և փոխանցման մեխանիզմներում, մենք 1960 թվականին նկատեցինք հետևյալ կարևոր փաստը: Հիստամինի ազդեցության ներքո (երբ հիպոթալամուսից դեպի արյուն են դուրս գալիս սպիտակուցային բնույթի հորմոնները) նկատելիորեն փոխվում է սրտի աշխատանքը, նրա կծկումները զգալիորեն ուժեղանում են: Սա էլ հանգեցրեց այն եզրակացության, որ ըստ երևույթին, հիպոթալամուսի բջիջների հորմոնների կազմում գոյություն ունեն նոր քիմիական նյութեր, որոնք կանոնավորում են սրտի պսակաձև անոթների գործունեությունը: Նկատենք, որ համաշխարհային գրականության մեջ գոյություն չունի որևէ տվյալ կամ կանխագուշակում այն մասին, որ ուղեղը կարող է արտադրել քիմիական հատուկ նյութեր, որոնք կոչված են կանոնավորելու սրտի արյան շրջանառության պրոցեսը: Ընդհանրապես մինչև այժմ էլ խիստ հակասական կարծիքներ կան այն մասին, թե ինչպես է կատարվում սրտի արյան անոթների լայնացումը և նեղացումը. միայն ներվաթելերի՞ միջոցով, ապա ո՞ր ներվաթելերի, թե՞ քիմիական ճանապարհով, ապա ո՞ր հորմոնների միջոցով: Մինչև այժմ էլ այդ հարցերը չեն ստացել իրենց վերջնական լուծումը:

Երկարատև փորձերից հետո, 1962 թվականի սկզբին հաջողվեց հիպոթալամուսից և նեյրոհիպոֆիզից անջատել պոլիպեպտիդային բնույթի մի շարք նյութեր (պոլիպեպտիդները դրանք մի քանի ամինոթթուներից կազմված գոյացումներ են), որոնցից երեքը նշանակալից ազդեցություն են ունենում կենդանիների սրտի պսակաձև անոթների վրա: Այդ նյութերից մեկի ներարկումը նեղացնում է պսակաձև անոթները, չփոխելով արյան ճնշումը և չթուլացնելով սրտի աշխատանքը: Հենց այն, որ նշված նյութը չի փոխում արյան ճնշումը, այլ միայն նեղացնում է պսակաձև անոթները, արդեն խոսում է այն մասին, որ այն հիպոթալամուսում արտադրվող վազոպրեսին չէ, որը նեղացնում է սրտի պսակաձև անոթները և միաժամանակ բարձրացնում արյան ճնշումը: Հայտնաբերված նյութերից երկուսը, ընդհակառակը, պսակաձև անոթները աստիճանաբար և բավական երկար ժամանակով լայնացնում են (2—4 և ավելի ժամ): Այսպիսի ներգործությունը չունի ոչ մի հայտնի դեղանյութ կամ հորմոն: Երբ անոթների լայնացման աստիճանը արտահայտենք միավոր ժամանակում պսակաձև անոթներից դուրս եկող արյան քանակով, ապա այդ նյութերից մեկը արյան քանակը հասցնում է 100—200, իսկ մյուսը՝ 300—400 տոկոսի, այսինքն՝ այդ նյութերը պսակաձև անոթները լայնացնում են 2—4 անգամ: Հետազոտությունները պարզեցին, որ լայնացնող պեպտիդների միջև կա որոշակի տարբերություն: Այդ տարբերությունն արտահայտվում է ոչ միայն նրանով, որ նրանցից մեկն ազդում է 2, իսկ մյուսը՝ 4 և ավելի ժամ, կամ թե նրանով, որ նրանցից մեկը լայնացնում է անոթները երկու, մյուսը՝ 4 անգամ, այլև նրանով, որ նրանցից մեկը չի ազդում սրտի կծկումների վրա, իսկ մյուսը՝ ուժեղացնում է այն: Այս դեպքում տրամաբանորեն ծագում է մի հարց. ի՞նչ բիոլոգիական նշանակություն ունեն նրանցից յուրաքանչյուրը: Այս հարցերը կստանան իրենց վերջնական լուծումը, երբ լրիվ կերպով կպարզվի այն քիմիական մեխանիզմների բնույթը, որոնց միջոցով կատարվում է այդ նյութերի անջատումը մյուսներից:

Բացի դրանից, որպեսզի հաստատվի հիպոթալամուսում պսակաձև անոթների գործունեությունը կարգավորող հորմոնների գոյությունը, պետք է ապա-



ցուցել նրանց գոյությունը նաև արյան մեջ: Այն փաստը, որ կարգավորող նյութերի չափազանց չնչին քանակությունը (միլիգրամի $^1/_{100}$ մասը) առաջ է բերում նշանակալից էֆեկտ, խոսում է դրանց հորմոնալ բնույթի օգտին: Այն, որ հիստամինի և կերակրի աղի մեծ քանակների ներարկման դեպքում, երբ արյան մեջ են մտնում նեյրոսեկրետոր հորմոնները, հիպոթալամուսում դժվար է արդեն հայտնաբերել այդ նյութերը, կամ վերջիններս բոլորովին կորցնում են իրենց ակտիվությունը, նույնպես վկայում է, որ մեր կողմից հայտնաբերված նյութերը հորմոններ են: Այս կարևոր խնդրի վերջնական լուծման համար անհրաժեշտ է մշակել քիմիական չափազանց նուրբ մեթոդներ, արյան մեջ դրանց չնչին քանակները հայտնաբերելու համար: Այս ուղղությամբ մեր հետազոտությունները շարունակվում են:

Նշված խնդրի, ինչպես նաև մի շարք պրակտիկ հարցերի լուծման համար կարևոր նշանակություն ունի նաև այն, թե պսակաձև անոթները լայնացնող նյութերը ի՞նչ ազդեցություն ունեն ախտահարված անոթների վրա: Այլ կերպ ասած, կարո՞ղ են արդյոք այդ նյութերը վերացնել կամ կանխել պսակաձև անոթների նեղացումը: Մեր փորձերը ցույց են տվել, որ պիտուիտրինի ներգործությամբ անոթների սեղմումը լրիվ կերպով վերանում է, երբ ներարկում ենք պոլիպեպտիդներ: Հետևաբար, դրանք պետք է լավ արդյունք տան սրտանոթների սպազմների բուժման ժամանակ: Մինչև կլինիկական փորձարկումները դեռևս հարկ կա լուծելու մի շարք խնդիրներ, կապված այդ նյութերի քիմիական և ֆիզիոլոգիական առանձնահատկությունների հետ: Ներկայումս հետազոտությունները կատարվում են այն ուղղությամբ, որպեսզի պարզվի, թե ինչ սպիտակուցային նյութերի հետ են կապված անջատված ակտիվ պոլիպեպտիդները: Այս հարցի լուծումն ունի սկզբունքային նշանակություն: Բանն այն է, որ մի շարք հորմոններ կապված են սպիտակուցների հետ և ներգործություն են ունենում սպիտակուցային նյութերի միջոցով: Նկատի ունենալով անջատված նյութերի պոլիպեպտիդային բնույթը, նաև այն, որ այդ նյութերը զատվել են քիմիական այնպիսի մշակումներով, որ հնարավորություն է տալիս դրանք անջատել սպիտակուցային մարմիններից, կարելի է ենթադրել, որ հիպոթալամուսում գոյություն ունեն հատուկ սպիտակուցներ, որոնցից պոկվում են ակտիվ պոլիպեպտիդներ: Ըստ երևույթին, օրգանիզմի մեջ այս կամ այն ազդակի ներքո ևս տեղի է ունենում նշված նյութերի արտազատումը դեպի արյուն, նպաստելով պսակաձև անոթների տոնուսի կանոնավորմանը:

Քիմիական մեթոդներով մեզ հաջողվել է անջատել մի սպիտակուց, որը լրիվ կերպով պահպանում է սրտի անոթները լայնացնող պոլիպեպտիդների հատկությունները: Դեռ ավելին, այս սպիտակուցային նյութը, որն այժմ ստանում ենք սպիտակ փոշու ձևով, ունի ավելի լավ արտահայտված անոթալայնիչ հատկություն, քան պոլիպեպտիդները:

Այժմ կատարվում է ստացված նյութերի մաքրում կլինիկական փորձարկումների նպատակով:

Մեր լաբորատորիայում կատարվում են մի շարք աշխատանքներ պարզելու համար, թե ի՞նչ սպիտակուցների հետ է կապված պսակաձև անոթները նեղացնող ակտիվ նյութը: Եթե հաջողվի պարզել այդ խնդիրը, ինչպես նաև այն, թե ինչ քիմիական մեխանիզմով է կատարվում այդ սպիտակուցներից այս կամ այն պոլիպեպտիդի անջատումը, դա կլինի մեծ հաջողություն սրտանոթային մի շարք հիվանդությունների պատճառների ռեալ բացատրման և բուժման գործում:

Մեր կողմից հայտնաբերված սպիտակուցը, որը պսակաձև անոթները լայնացնում է մի քանի ժամ տևողությամբ, ոչ մի կապ չունի գրականության մեջ հայտնի այն սպիտակուցների հետ, որոնք ունեն հորմոնալ նշանակություն: Հարյուրավոր կենդանիների հիպոֆիզներից մեր կողմից անջատված, այսպես կոչված, Վան-Դեյկի սպիտակուցը իր քիմիական և ֆիզիոլոգիական հատկություններով ոչնչով չի առնչվում նոր սպիտակուցի հետ: Բացի դրանից, նեյրոհիպոֆիզից զատված միակ հորմոնալ բնույթ ունեցող սպիտակուցը (Վան-Դեյկի) հայտնաբերված չէ հիպոթալամուսում, մինչդեռ մեր սպիտակուցը հայտնաբերված է հենց ուղեղի այդ շրջանում: Սխալ կլիներ պատկերացնել, որ հայտնաբերված նյութերը խաղում են իրենց դերը միայն սրտանոթային սիստեմի կանոնավորման գործում կամ այդ նյութերի սինթեզը և անջատման գաղտնիքները կապված են միայն հիպոթալամա-հիպոֆիզար սիստեմի հետ: Մեր նախկին բիոքիմիական հետազոտությունները, որոնք կատարվել են ուղեղի բջիջների մակարդակի վրա, պարզորեն ցույց են տվել, որ ներվային գրգիռը փոխանցող քիմիական նյութերը խոր ազդեցություն ունեն հիպոթալամա-հիպոֆիզար սիստեմից սպիտակուցային բնույթ ունեցող նյութերի սինթեզի և անջատման գործում: Հատկանշականն այն է, որ տարբեր քիմիական փոխանցիչներ ունեն տարբեր ազդեցություն հորմոններ արտադրող տարբեր ներվային բջիջների վրա:

Ինչպես պարզվեց, քիմիական փոխանցիչները ազդում են նաև մեր կողմից հայտնաբերված պոլիպեպտիդների և սպիտակուցների ակտիվության և արտադրման վրա: Այս փաստերը վկայում են, որ ուղեղի տարբեր մասերը համագործակցում են և քիմիական փոխանցիչների միջոցով կանոնավորում են օրգանների ֆունկցիաների գործունեությունը: Ուստի նշված պրոբլեմների լուծման համար անհրաժեշտ է մի շարք մասնագետների համախմբված աշխատանք: Խնդրի բարդությունը ոչ միայն նրանումն է, որ հազարավոր նյութերի միջից պետք է անջատել, քիմիապես մաքրել և ճանաչել այս կամ այն նյութը և որ պետք է խորապես ուսումնասիրել ուղեղի տարբեր քիմիական նյութերի միջև գոյություն ունեցող օրգանական կապը, խնդրի բարդությունը նաև նրանումն է, որ անհրաժեշտ է պարզել սպիտակուցային նյութերի քիմիական կառուցվածքը (ամինոթթուների դասավորությունը սպիտակուցի մեջ):

Նշված գիտական պրոբլեմների հետազոտությունը, որը պահանջում է մեծ թվով բանիմաց և գիտությանը նվիրված նոր կադրեր, մեր կարծիքով, կլուծի ուղեղի բիոքիմիայի և հորմոնների վերաբերյալ մի շարք խնդիրներ, որոնք հիմք կհանդիսանան ներվային, նեյրո-էնդոկրին և սրտանոթային բազմաթիվ հիվանդությունների ճանաչման և բուժման համար:



# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ՈՐՆ Է ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՌԱՐԿԱՆ

*Մեծ աշխատանք է կատարված կոմունիստական հասարակության կառուցման հարուստ փորձի ուսումնասիրման ասպարեզում: Որոշակի գիտական արդյունքներ են ձեռք բերվել տնտեսական երևույթների սոցիալիստական բովանդակության վերլուծման, սոցիալիզմի առաջացման ու զարգացման, սոցիալիզմից կոմունիզմին անցման տնտեսական օրենքների և կատեգորիաների բացահայտման և նրանց գիտակցական իրականացման, կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի առավելությունների վերհանման ասպարեզում: Լույս են տեսել այդ հարցերին նվիրված բազմազան մենագրություններ, դասագրքեր, ուսումնական ձեռնարկներ, հոդվածներ: Եթե անցյալում չունեինք սոցիալիզմի քաղաքատնտեսություն և նրա փոխարեն ուսումնասիրվում էր սոցիալիստական պետության տնտեսական քաղաքականությունը, ապա այժմ ոչ միայն ունենք այն, այլ հաջողությամբ զարգանում է: Այս բոլորը կարևոր ներդրում է մարքս-լենինյան տնտեսագիտության հարստացման և զարգացման գործում:*

*Սոցիալիզմի քաղաքատնտեսության ստեղծման գլխավոր արդյունքները վերաբերում են նախ և առաջ սոցիալիստական արտադրեղանակի զանազան կողմերի, տնտեսական օրենքների և կատեգորիաների գիտական վերլուծմանը: Սակայն կոմունիստական շինարարության աճող պահանջների բավարարման համար այդ բավական համարել չի կարելի: Կոմունիստական հասարակության զարգացման ներկա էտապը և այս կապակցությամբ տնտեսագիտական պրոպագանդան նոր խնդիրներ են դնում սոցիալիզմի քաղաքատնտեսության առաջ, որոնց լուծումը դարձել է կենսական անհրաժեշտություն: Այդ խնդիրներից մեկը, որը կարևոր նշանակություն ունի սոցիալիզմի քաղաքատնտեսության հետագա զարգացման համար, դա կոմունիստական արտադրեղանակի տնտեսական օրենքների և կատեգորիաների հաջորդականության գիտական հիմնավորման անհրաժեշտությունն է նրանց պատմական և տրամաբանական զարգացման տեսակետից: Այդ պրոբլեմի ճիշտ լուծման համար վճռական նշանակություն ունի այն տնտեսական կատեգորիայի բացահայտումը, որը ելակետային տեղ է գրավում ինչպես կոմունիստական արտադրեղանակի, այնպես էլ նրան ուսումնասիրող քաղաքատնտեսության մեջ:*

*Հայտնի է, ինչպես բնության, այնպես էլ հասարակության մեջ զարգացումն ընթանում է պարզից դեպի բարդը, ստորինից դեպի բարձրը, ընդ որում, բարդը չի վերացնում պարզը, այլ միշտ վերարտադրում է նրան որպես իր գոյության և զարգացման պայմանը: Հասարակական արտադրական հարաբերությունների նկատմամբ այդ նշանակում է, որ մարդկանց բարդ արտադրական հարաբերություններն առաջանում են ավելի պարզ հարաբերություններից, ըստ որում վերջինները անընդհատ վերարտադրվում են որպես առաջինների գոյության պայման: Պարզ կամ հասարակ տնտեսական հարաբերությունների ամբողջությունը Մարքսը անվանեց որոշ արտադրեղանակի «բջիջը»: Ուսումնասիրելով կապիտալիզմի արտադրական հարաբերությունների սիստեմը, Մարքսը բացահայտեց, որ նրա ամենապարզ տնտեսական ձևը, պատմական և տրամաբանական տեսակետից նրա ելակետային կատեգորիան ապրանքն է: Ապրանքի տնտեսական բնույթի վերլուծությամբ Մարքսը սկսում է կապիտալիզմի արտադրական հարաբերությունների ուսումնասիրումը: «Մարքսի մոտ, Կապիտալում,— գրել է Վ. Ի. Լենինը,— նախ վերլուծության է ենթարկվում բուրժուական (ապրանքային) հասարակության ամենապարզ, սովորական, հիմնական, ամենամասսայական, ամենաառօրեական, միլիարդավոր անգամներ պատահող հարաբերությունը՝ ապրանքների փոխանակությունը: Վերլուծությունն այս պարզագույն երևույթի մեջ (բուրժուական հասարակության այս «բջջի» մեջ) բացահայտում է ժամանակակից հասարակության բոլոր հակասու-*

դիտում է որպես կապիտալիստական արտադրության մի ընդհանուր պրոցես, որը արտահայտվում է բոլոր տնտեսական կատեգորիաներում։

Հարց է առաջանում, թե ինչ հիմք կա պլանաչափ զարգացումը դիտելու որպես սոցիալիստական սեփականության շարժման տնտեսական «բջիջը»։ Մեզ թվում է, որ դասագրքում բերված փաստարկումները ոչ միայն գիտականորեն հիմնավորված չեն, այլ չկա ոչ մի հիմք պլանաչափությունը համարելու սոցիալիզմի տնտեսական «բջիջը»։ Ինչպես որ տարերայնությունը, կոնկուրենցիան անբաժանելի են կապիտալիստական արտադրությունից, այնպես էլ պլանաչափությունը անբաժանելի է սոցիալիստական արտադրությունից։ Արտադրության տարերային զարգացումը Մարքսը բացահայտում է կապիտալիզմի ամեն մի տնտեսական կատեգորիայի վերլուծման ժամանակ։ Եվ դա հասկանալի է, որովհետև տարերայնությունը, կոնկուրենցիան դրսևորվում են որոշ տնտեսական երևույթների, կատեգորիաների միջոցով։ Նրանց առանձին քննարկումը, բացի ընդհանուր դատողություններից, ուրիշ ոչինչ չէր կարող տալ։ Ուրեմն, ղեկավարվելով տնտեսական երևույթների վերլուծման մարքսիստական մեթոդով, պլանաչափությունը՝ որպես սոցիալիստական տնտեսության զարգացման ընդհանուր պրոցես, պետք է քննության առնել ոչ թե ընդհանրապես տալով նրա մասին ընդհանուր դատողություններ, այլ նրա գործողությունները բացահայտել և ցույց տալ սոցիալիզմի տնտեսական կատեգորիաների վերլուծման միջոցով ինչպես արտադրության, այնպես էլ բաշխման, փոխանակության և սպառման պրոցեսում։

Այս ամենը ցույց են տալիս, թե որքան կարևոր է սոցիալիզմի քաղաքատնտեսության գիտական լոգիկայի մշակումը։ Այդ պետք է սկսել նրանից, թե որն է սոցիալիստական արտադրական հարաբերությունների սիստեմում ելակետային տնտեսական կատեգորիան։

Ինչպես հայտնի է, յուրաքանչյուր արտադրության եղանակի ելակետը նյութական բարիքների արտադրությունն է։ Նյութական բարիքների արտադրության ծավալով է որոշվում հասարակության հարստությունը, որը արտահայտվում է այս կամ այն սեփականության ձևերով։

Բուրժուական հասարակության հարստությունն ունի մասնավոր սեփականության ձև։ Այդ հարստությունը ներկայացնում է ապրանքների մի հսկայական հավաքածու, իսկ առանձին ապրանքը՝ նրա տարրական ձևը։ Դրա համար էլ, նշում է Մարքսը, նրա հետազոտությունը սկսվում է ապրանքի վերլուծությամբ։

Սոցիալիստական հասարակության հարստությունն իր մեծ մասով համաժողովրդական ունեցվածք է, իսկ մնացած մասը կազմում է կոոպերատիվ ձեռնարկությունների կոլեկտիվ սեփականությունը և առանձին քաղաքացիների անձնական սեփականությունը։

Սակայն, սոցիալիզմի պայմաններում աշխատանքի պրոդուկտի ապրանքային ձևը սոցիալիստական հասարակության հարստության ընդհանրական ձևը չէ, ինչպես կապիտալիզմի ժամանակ։ Այստեղ հասարակության հարստությունը, որպես նյութական բարիքների մի հսկայական հավաքածու, ունի ապրանքային և ոչ ապրանքային ձև։ Չնայած դրան նա ունի մի ընդհանուր սոցիալ-տնտեսական բովանդակություն։ Նյութական բարիքների ինչպես ապրանքային, այնպես էլ ոչ ապրանքային ձևերը սոցիալիստականորեն միավորված մարդկանց աշխատանքի արդյունքն են, միայն այն տարբերությամբ, որ առաջինը անցնում է սպառման պրոցես ապրանքա-դրամական հարաբերությունների միջոցով, իսկ երկրորդը՝ շրջանցելով այդ հարաբերությունները։

Աշխատանքի պրոդուկտի շարժման այս ձևերը պայմանավորված են կոմունիստական արտադրության առաջին փուլի՝ սոցիալիզմի առանձնահատկություններով։

Սոցիալիզմը աստիճանաբար վերաճելով կոմունիզմի, կվերանան այդ առանձնահատկությունները, հետևապես կվերանա նաև աշխատանքի պրոդուկտի ապրանքային ձևը։ Այդ պայմաններում հասարակության հարստության արտահայտման միակ ձևը կլինի աշխատանքի պրոդուկտը առանց ապրանքային ձևի։ Հետևապես այն ընդհանուր տնտեսական կատեգորիան, որը հանդիսանում է ինչպես սոցիալիստական, այնպես էլ կոմունիստական սեփականության հարաբերությունների ամենատարրական և պարզ արտահայտությունը, կարող է լինել միայն աշխատանքի պրոդուկտը։ Այս նշանակում է, որ սոցիալիզմի քաղաքատնտեսության ելակետային տնտեսական կատեգորիան պետք է համարել աշխատանքի պրոդուկտը։

Աշխատանքի պրոդուկտը՝ որպես մարդկանց աշխատանքի մարմնացումը, միշտ էլ եղել է և կլինի սեփականատիրական հարաբերությունների արտահայտման իրային ձևը։ Համապատասխան այս կամ այն արտադրության եղանակին փոխվում է միայն նրա բնույթը և արտահայտման ձևը։ Ինչպիսին արտադրության եղանակն է, նույնպիսին է աշխատանքի և նրա պրոդուկտի բնույթը։

Աշխատանքի պրոդուկտը որոշ արտադրական հարաբերությունների պայմաններում դառնում է ապրանք։ Այդ դեպքում աշխատանքի պրոդուկ-



տի ապրանքային ձևը դառնում է մարդկանց արտադրական հարաբերությունների արտահայտողը։

Կապիտալիզմի ժամանակ, երբ մարդկանց հարաբերությունները կառուցվում են մասնավոր սեփականության հիման վրա, երբ աշխատուժը դառնում է ապրանք, աշխատանքի պրոդուկտի ապրանքային ձևը հանդես է գալիս որպես արտադրական հարաբերությունների արտահայտման համընդհանուր ձև։

Սոցիալիզմի պայմաններում սկսվում է ապրանքային ձևից աշխատանքի պրոդուկտի ազատման պրոցեսը, որն ավարտվում է կոմունիզմի ժամանակ։ Ահա թե ինչու պրոդուկտի ապրանքային ձևը չի կարող լինել սոցիալիստական արտադրական հարաբերությունների արտահայտման համընդհանուր ձևը, հետևապես և կոմունիստական արտադրության եղանակի ուսումնասիրման ելակետային կատեգորիան։

Աշխատանքի պրոդուկտի ազատումը ապրանքային ձևից՝ կապված է սոցիալիստական սեփականության հարաբերությունների առաջացման և զարգացման հետ։ Սոցիալիստական սեփականությունը կոմունիստական սեփականության վերաճման և ըստ աշխատանքի բաշխումից ըստ պահանջմունքի բաշխման անցման պրոցեսում կվերանա նաև աշխատանքի պրոդուկտի ապրանքային ձևը։ Բայց այն պայմաններում, երբ պրոդուկտի ապրանքային ձևը օբյեկտիվ անհրաժեշտություն է, նա բացառիկ կարևոր դեր է կատարում սոցիալիստական տնտեսության զարգացման գործում։ Այստեղից էլ բխում է ապրանքա-դրամական հարաբերությունների հետագա կատարելագործման անհրաժեշտությունը։ Այս, իհարկե, չի նշանակում, որ պրոդուկտի ոչ ապրանքային ձևին երկրորդական տեղ է հատկացվում։ Օրինակ, յուրաքանչյուրին հասկանալի է, թե ինչպիսի վճռական դեր են կատարում ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը նյութական բարիքների արտադրության ընդլայնման և զարգացման ու ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում, թեպետ նրանք ապրանքային ձև չունեն։

Սոցիալիստական հասարակությունում աշխատանքի պրոդուկտի առանձնահատկությունը ոչ միայն այն է, որ նա հանդես է գալիս ապրանքային և ոչ ապրանքային ձևով, այլև այն, որ նրա քանակական և որակական կողմերը որոշվում են արժեքով և սպառողական արժեքով։ Այսպես, առանց արժեքի կատեգորիայի հնարավոր չէ որոշել պրոդուկտի արտադրության հասարակական ծախքերը, հասարակական ամբողջական պրոդուկտի, հասարակության հարստության մեծությունը, հնարավոր չէ կազմել ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման համամասնություններ, բաշխել հասարակական ամբողջական պրոդուկտը փոխհատուցման, կուտակման և սպառման ֆոնդերի և այլն։

Հայտնի է, թե ինչպիսի կարևոր դեր են կատարում գները որպես արժեքի դրամական արտահայտություն նյութական շահագրգռվածության բարձրացման, ազգային եկամտի բաշխման ու վերաբաշխման, առաջարկի ու պահանջարկի կարգավորման գործում։

Կարող է հարց ծագել, եթե արժեքը այսպիսի ունիվերսալ ֆունկցիաներ է կատարում, էլ ինչ անհրաժեշտություն կա աշխատանքի պրոդուկտը բաժանել ապրանքային և ոչ ապրանքային ձևի։ Բանն այն է, որ երբ աշխատանքի պրոդուկտը հանդես է գալիս ոչ ապրանքային ձևով, արժեքը գերազանցապես կատարում է հաշվառման դեր, իսկ երբ նա ապրանքային ձև է ընդունում բացի հաշվառման դերից, նա կատարում է նաև իր մյուս ֆունկցիաները։ Այս չափազանց կարևոր հանգամանքն անուշադրության է մատնված տնտեսական վերլուծություններում։ Քաղաքատնտեսության մեջ հատուկ գլուխ կամ բաժին հատկացնելով ապրանքա-դրամական հարաբերությունների ուսումնասիրմանը, սովորաբար անուշադրության է թողնվում աշխատանքի պրոդուկտի ոչ ապրանքային ձևի վերլուծությունը, որը կարևոր նշանակություն ունի քաղաքատնտեսության մյուս կատեգորիաների ճիշտ ըմբռնման համար։ Գիտական տեսակետից աշխատանքի պրոդուկտի ապրանքային և ոչ ապրանքային ձևերը կազմում են մի միասնություն, նրանք միևնույն տնտեսական երևույթի երկու կողմերն են, որոնց վերլուծությունը ելակետային նախադրյալներ կստեղծի հետագա ուսումնասիրությունների համար։

Կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջիջի» հարցը քննարկվում է ոչ միայն կենտրոնական, այլև ռեսպուբլիկական մամուլի էջերում։ Այդ հարցի առթիվ դեռ 1961 թ. հոդվածով հանդես եկավ Վ. Աղուզումցյանը, որը հանգում է այն եզրակացության, որ կոմունիստական արտադրաեղանակը նույնպես ունի իր առանձնահատուկ տնտեսական «բջիջը», որպիսին է պրոդուկտը [1]։ Հոդվածի մի շարք հարցերի առթիվ եղան քննադատական դիտողություններ Կ. Բոստանջյանի և Ս. Միքայելյանի

[1] Վ. Աղուզումցյան— «Կոմունիզմի քաղաքատնտեսության էության և կառուցվածքի մի քանի հարցերի մասին»։ «Լենինյան ուղիով», № 9, 1961 թ.։

հոդվածներում[1]: Սակայն, մեր կարծիքով այդ քննադատությունը մինչև վերջը չի բացահայտում Վ. Աղուզումցյանի սխալի էությունը: Բանն այն է, որ Վ. Աղուզումցյանը հանգելով ճիշտ եզրակացության, որ կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջիջը» պրոդուկտն է (ավելի ճիշտ կլիներ ասել աշխատանքի պրոդուկտը, նկատի ունենալով, որ պրոդուկտներ են և բնության բարիքները), չի կարելի ճիշտ համարել պրոդուկտի՝ որպես տնտեսական «բջիջի» նրա բնորոշումը:

Որոնք են ըստ Աղուզումցյանի կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջջի» բնորոշման ելակետերը: Ըստ նրա, քանի որ «կոմունիստական արտադրությունը աշխատավորության պահանջմունքների բավարարման համար է և ղեկավարում է միայն սպառարժեքով» և «այստեղ արտադրական հարաբերություններն անմիջական են ու նրանց կրողը հանդիսանում է արտադրվող պրոդուկտը կամ սպառարժեքը», «հետևաբար նյութական բարիքը կամ պրոդուկտը այն տնտեսական «բջիջն» է, որի արտադրության և բաշխման հետ կապված արտադրահարաբերությունների օրենքների ուսումնասիրությունը հանդիսանում է կոմունիզմի քաղաքատնտեսության էությունը»[2]:

Նախ պետք է ասել, որ ոչ միայն կոմունիստական, այլև գյուղական-նահապետական արտադրության անմիջական նպատակը սպառողական արժեքն է: Ուրեմն այս հանգամանքը միայն կոմունիստական արտադրության հատկանշական կողմը չէ: Առհասարակ կա արդյոք որևէ արտադրություն, որի վերջնակետը սպառումը չլինի: Նույնիսկ կապիտալիզմի ժամանակ, թեկուզ սպառումը արտադրության անմիջական նպատակը չէ, բայց այն նույնպես վերջ ի վերջո սպառման համար է, այլ կերպ արտադրությունը անիմաստ կլիներ:

Երկրորդ, արտադրական հարաբերությունների իրային կրողը ոչ միայն պրոդուկտն է, այլև ապրանքը, ըստ որում, ավելի ճիշտ է ասել նրանց սպառողական արժեքը: Հայտնի է, որ ապրանքի արժեքը արտադրական հարաբերություն է, սպառողական արժեքը նրա իրային կրողը, իսկ ո՞րն է պրոդուկտի մեջ արտադրական հարաբերությունը: Այս մասին ոչ միայն չկա պատասխան, այլև այդ հարցը չի դրված:

Հետևապես ինչ հիմք կա պրոդուկտը համարել տնտեսական բջիջ:

Երրորդ, եթե պրոդուկտը դիտվում է սոսկ արտադրական հարաբերությունների կրողը, առանց ցույց տալու պրոդուկտի արտադրական հարաբերություն հանդիսացող հատկությունը, ապա պետք է եզրակացնել, որ այստեղ պրոդուկտը նույնացվում է սպառողական արժեքի հետ: Այդ ավելի ակներև է ցույց տրված նրա հետևյալ արտահայտության մեջ՝ «...Կոմունիստական տնտեսաձևում այն տնտեսական բջիջ է, որպես պրոդուկտ, ըստ որում այս դեպքում որոշիչը հանդիսանում է սպառարժեքը»[3]: Եթե պրոդուկտի մեջ որոշիչը սպառողական արժեքն է, էլ ինչ է մնում քաղաքատնտեսությանը...

Ինչպես տեսնում ենք, բերված փաստարկումները չեն տալիս անհրաժեշտ գիտական հիմնավորում պրոդուկտի՝ որպես կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջջի» մասին:

Մեր կարծիքով, աշխատանքի պրոդուկտի՝ որպես կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջջի» գիտական հիմնավորման համար, անհրաժեշտ է՝ նախ այն դիտել որպես պատմականորեն փոփոխվող կատեգորիա և, երկրորդ, քննության առնել այն որպես երկակի հատկությունների միասնություն: Անցնենք այդ հարցի համառոտակի պարզաբանմանը:

Ինչպես հայտնի է, արտադրության պրոցեսը միաժամանակ և աշխատանքի պրոցես է, ինչպես արտադրության, այնպես էլ աշխատանքի պրոցեսներն ունեն երկու կողմ: Մեկը մարդկանց հարաբերությունն է դեպի բնությունը, իսկ մյուսը՝ մարդկանց հարաբերությունն է իրար հետ կամ նրանց արտադրական հարաբերությունը: Աշխատանքը, որպես աշխատուժի գործադրումը նյութական բարիքների արտադրության պրոցեսում, հանդես է գալիս երկակի հատկություններով: Մի կողմից՝ «աշխատանքը... իբրև օգտակար աշխատանք,— ասում է Կ. Մարքսը,— մարդկանց գոյության ամեն հասարակական ձևերից անկախ մի պայման, հավիտենական, բնական անհրաժեշտություն է, առանց աշխատանքի հնարավոր չէր լինի նյութերի փոխանակությունը մարդու և բնության միջև, այսինքն՝ հնարավոր չէր լինի ինքը մարդկային կյանքը»[4]: Մյուս կողմից՝ «քանի որ մարդիկ այսպես թե այնպես աշխատում են միմյանց համար, նրանց աշխատանքը հենց դրանով էլ հասարակական ձև է ստանում»[5]: Առաջին դեպ-

---

[1] Կ. Բոստանջյան—«Մենք առարկում ենք»: «Լենինյան ուղիով», № 5, 1962 թ. և Ս. Միքայելյան — «Անհրաժեշտ է պարզություն»: «Լենինյան ուղիով», № 10, 1962 թ.:

[2] Լենինյան ուղիով, № 9, 1961 թ., էջ 94—95:

[3] Հայաստանի ժողովրդական տնտեսություն, № 7, 1964 թ., էջ 83:

[4] Կ. Մարքս, Կապիտալ, հատ. 1, էջ 49, Հայպետհրատ, 1954 թ.:

[5] Նույն տեղը, էջ 79:



քում աշխատանքը որպես օգտավետ, կոնկրետ աշխատանք արտահայտում է մարդկանց հարաբերությունը դեպի բնությունը, իսկ մյուս դեպքում՝ որպես հասարակական աշխատանք, արտահայտում է մարդկանց արտադրական հարաբերությունները:

Ինչպես աշխատանքը, այնպես էլ նրա պրոդուկտը ունի երկակի հատկություն: Մի կողմից՝ որպես սպառողական արժեք, նա «կազմում է հարստության իրային բովանդակությունը» (Մարքս) և արտահայտում մարդկանց հարաբերությունը դեպի բնությունը, իսկ մյուս կողմից՝ «մանվածքը և կտավը հասարակական պրոդուկտներ են»: (Մարքս) և արտահայտում են մարդկանց արտադրական հարաբերությունները:

Աշխատանքը որպես օգտավետ կոնկրետ աշխատանք և նրա արդյունքը որպես սպառողական արժեք քաղաքատնտեսությունը չի ուսումնասիրում, նրանք ուսումնասիրվում են բնական տեխնիկական գիտությունների կողմից: Ինչ վերաբերում է աշխատանքի և նրա պրոդուկտի հասարակական բնույթին, նա քաղաքատնտեսության ուսումնասիրման անմիջական առարկան է:

Սակայն այն բնորոշ գծերը, որ նշվեցին աշխատանքի և նրա պրոդուկտի երկակի հատկությունների մասին, հատուկ են բոլոր հասարակարգերին: Այնինչ, աշխատանքը և նրա պրոդուկտը տարբեր հասարակարգերում հանդես են գալիս որոշ առանձնահատկություններով և զարգացման ուրույն օրինաչափություններով:

Մարքսը կապիտալիստական արտադրաեղանակի տնտեսական վերլուծությունն սկսում է ապրանքից, նկատի ունենալով նախ և առաջ նրա արժեքը, որպես յուրահատուկ հասարակական աշխատանքի՝ աբստրակտ աշխատանքի արդյունք: Ինչ վերաբերում է սպառողական արժեքին և նրա հիմքը կազմող կոնկրետ աշխատանքին, նա դիտում է նրանց որպես արժեքի և աբստրակտ աշխատանքի իրային կրողներ, որոնք անմիջականորեն նրա ուսումնասիրության առարկան չեն կազմում:

Կոմունիստական արտադրաեղանակի սոցիալիստական փուլում աշխատանքի պրոդուկտը, ինչպես նշեցինք, հանդես է գալիս ապրանքային և ոչ ապրանքային ձևով, ըստ որում ինչպես առաջինի, այնպես էլ երկրորդի դեպքում պրոդուկտը հանդես է գալիս որպես սպառողական արժեք և արժեք: Այստեղ նույնպես սպառողական արժեքը կոնկրետ աշխատանքի մարմնացումն է, իսկ ինչ վերաբերում է արժեքին, նա թեպետ աբստրակտ աշխատանքի արդյունք է, բայց արտահայտում է ոչ թե կապիտալիստական, այլ սոցիալիստական արտադրական հարաբերությունները:

Կոմունիզմի ժամանակ աշխատանքի պրոդուկտի ինչպես արժեքային, այնպես էլ ապրանքա-դրամական ձևերը վերանում են, հետևապես ավելորդ է դառնում և աբստրակտ աշխատանքը որպես հասարակական աշխատանքի արտահայտություն և արժեքի հիմք: Սակայն այս չի նշանակում, որ աշխատանքի պրոդուկտը հանդես կգա սոսկ սպառողական արժեք, որպես կոնկրետ աշխատանքի մարմնացում: Այստեղ նույնպես կպահպանվեն աշխատանքի և նրա պրոդուկտի երկակի հատկությունները, այսինքն՝ պրոդուկտները լինելով կոնկրետ աշխատանքի արդյունք՝ սպառողական արժեք, միաժամանակ նա հանդես կգա անմիջականորեն հասարակական աշխատանքի արդյունք, արտահայտված աշխատաժամանակով, առանց արժեքային ձևերի[1]:

Այսպիսով, պրոդուկտը որպես աշխատանքի արդյունք բոլոր հասարակարգերում հանդես է գալիս երկակի հատկությամբ, ըստ որում նրա հասարակական հատկության մշտական կրողը սպառողական արժեքն է: Փոխվելով արտադրական հարաբերությունների բնույթը փոխվում է և պրոդուկտի հասարակական հատկությունը: Սպառողական արժեքը լինելով պրոդուկտի հասարակական հատկության կրողը նույնպես ենթակա է փոփոխման, սակայն այն կապված է ոչ թե արտադրական հարաբերությունների, այլ հասարակության արտադրողական ուժերի զարգացման հետ: Աշխատանքի պրոդուկտի սպառողական արժեքի փոփոխումը, նորանոր սպառողական արժեքների հայտնաբերումը կամ նրանց կատարելագործումը և սպառողական

---

[1] Չի կարելի համաձայնել Վ. Աղուզումցյանի այն դրույթի հետ, որ «աբստրակտ ու կոնկրետ աշխատանքը, որպես մարդկային աշխատուժի ծախսման ձևեր, ապրանքային և ապրանքակապիտալիստական արտադրության ծընունդ չեն», որ «դրանք աշխատանքի էությունը կազմող մշտապես գոյություն ունեցող հատկություններն ու ձևերն են...», որ «աշխատանքի աբստրակտ ու կոնկրետ բնույթը կպահպանվեն նաև զարգացած կոմունիզմի օրոք...» («Հայաստանի ժողովրդական տնտեսություն», № 7, 1964 թ., էջ 86):

Ինչպես տեսնում ենք, այստեղ աբստրակտ աշխատանքը դիտվում է ոչ որպես սպեցիֆիկ բնույթի հասարակական աշխատանք, այլ մարդկային աշխատուժի ծախսման ձև, որը հատուկ է բոլոր հասարակարգերին: Աբստրակտ աշխատանքի նման մեկնաբանումը նրա ֆիզիոլոգիական հասկացության վերարտադրումն է, որը լիովին հակասում է մարքսիստական քաղաքատնտեսության ելակետային սկզբունքներին:

հատկությունները հասարակության արտադրաեղանակի տնտեսական բջջի հատկանշական կողմը չեն կազմում։ Նրան բնութագրողը պրոդուկտի հասարակական հատկությունն է կամ արտադրական հարաբերությունները։ Բայց քանի որ չկան արտադրական հարաբերություններ առանց արտադրողական ուժերի, այնպես էլ չկա պրոդուկտի հասարակական հատկություն առանց սպառողական արժեքի, իսկ ապրանքային արտադրության ժամանակ չկա ապրանքի արժեք առանց սպառողական արժեքի։ Աշխատանքի պրոդուկտի այդ երկու կողմերը կազմում են մի հակասական միասնություն։ Այդ հակասության բնույթը, արտահայտման ձևը և լուծումը կախված են պրոդուկտի հասարակական հատկությունից։ Օրինակ, կապիտալիզմի ժամանակ այդ հակասությունը անտագոնիստական է և հանդիսանում է կապիտալիզմի հիմնական հակասության սաղմնային արտահայտությունը։ Կոմունիստական արտադրաեղանակի պայմաններում նրանց միջև նույնպես կա հակասություն, բայց այն անտագոնիստական բնույթ չի կրում և հաղթահարվում է արտադրական հարաբերությունների զարգացման և կատարելագործման միջոցով։

Կարծում եմ ասածից հասկանալի է, թե մեթոդոլոգիական ինչպիսի դիրքերից ելնելով պետք է տալ աշխատանքի պրոդուկտի՝ որպես կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջջի» բնորոշումը։ Նրա բնորոշման համար անհրաժեշտ է նկատի ունենալ ոչ թե սպառողական արժեքը որպես կոմունիստական արտադրության նպատակը և արտադրական հարաբերությունների կրողը և ոչ էլ սպառողական արժեքի դերը՝ կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջջի» մեջ, այլ աշխատանքի պրոդուկտը որպես պատմականորեն փոփոխվող և զարգացող տնտեսական կատեգորիա՝ իր երկակի հատկություններով, որը հասարակության զարգացման յուրաքանչյուր ժամանակաշրջանում դրսևորվում է որոշ առանձնահատկություններով և շարժման ուրույն օրինաչափություններով։

Մեթոդոլոգիական այս տեսանկյունով պետք է քննության առնել աշխատանքի պրոդուկտը որպես կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջիջ»։

Կարող են մեզ ասել, որ Մարքսը ապրանքի և նրա մեջ մարմնացած աշխատանքի երկակի հատկությունը բացահայտում է ապրանքակապիտալիստական արտադրության առանձնահատկությունների վերլուծման հիման վրա։ Հետևապես ինչ հիմք ունենք Մարքսի այս դրույթը տարածել ոչ ապրանքակապիտալիստական արտադրաեղանակների վրա։ Ճիշտ է, որ Մարքսի անմիջական ուսումնասիրության առարկան կապիտալիստական արտադրաեղանակն է, բայց նա դիտում է այն ոչ թե մինչև այդ եղած արտադրաեղանակներից կտրված, այլ հասարակության հետագա զարգացման շարունակությունը։ Ըստ որում, հասարակության զարգացումը ընթանում է ինչպես նրա առանձին էտապներում առաջացած տնտեսական օրենքների, այնպես էլ ընդհանուր օրինաչափությունների հիման վրա։ Այդ ընդհանուր օրինաչափություններից է նաև պրոդուկտի ու աշխատանքի երկակի հատկությունը, որը յուրաքանչյուր հասարակարգում հանդես է գալիս որոշ առանձնահատկություններով։

Ապրանքա-կապիտալիստական արտադրության պայմաններում այդ առանձնահատկություններից մեկն այն է, որ արտադրամիջոցների մասնավոր սեփականության հետևանքով հասարակական աշխատանքը փոխարկվում է յուրահատուկ հասարակական աբստրակտ աշխատանքի, որը անմիջականորեն հանդես է գալիս որպես մասնավոր աշխատանք, իսկ նրա հասարակական բնույթը դրսևորվում է կողմնակի ճանապարհով՝ արժեքի ձևերում։ Նախկինում եղած կոնկրետ և հասարակական աշխատանքի ոչ անտագոնիստական հակասությունը այստեղ վեր է ածվում կոնկրետ և աբստրակտ աշխատանքի անտագոնիստական հակասության, որը իր հերթին վերանում է այն ժամանակ, երբ արտադրամիջոցների սոցիալիստական հանրայնացման հետևանքով մասնավոր աշխատանքը փոխարինվում է անմիջականորեն հասարակական աբստրակտ աշխատանքի։ Սակայն կոնկրետ և աբստրակտ աշխատանքի անտագոնիստական հակասությունների վերացումը չի նշանակում ոչ անտագոնիստական հակասությունների վերացում։ Սոցիալիստական արտադրության զարգացման համար վճռական նշանակություն ունի ոչ անտագոնիստական հակասությունների հաղթահարումը, իսկ դրա գլխավոր միջոցն է՝ անմիջականորեն հասարակական աշխատանքի ձևերի անընդհատ կատարելագործումը։

Այսպիսով, աշխատանքի պրոդուկտը որպես կոմունիստական արտադրաեղանակի տնտեսական «բջիջ» ունի երկակի հատկություն, ըստ որում սոցիալիզմի քաղաքատնտեսությունը ուսումնասիրում է նրա հասարակական հատկությունը, որը սոցիալիզմի պայմաններում արտահայտվում է արժեքի և նրա ձևերի միջոցով։ Միաժամանակ նա բացահայտում է պրոդուկտի հասարակական և բնաիրային հատկությունների հակասությունը և նրանց հաղթահարման ուղիները։

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՄԻ ԲԱՆԱՎԵՃԻ ԱՌԹԻՎ

1961 թ. «Вопросы истории» ժուռնալի № 12-ում ակադեմիկոս Ժուկովը «Պարտիայի XXII համագումարը և պատմական գիտության խնդիրները» հոդվածում թռուցիկ կերպով նշեց, որ ազգի հանրահայտ սահմանումը չի կարելի առանց վերապահումների տարածել սոցիալիստական ազգերի վրա։ Նրա կարծիքով այժմ սովետական ազգերի համար որպես առավել բնորոշ հատկանիշ մնացել է լեզուն, իսկ ինչ վերաբերում է մնացած հատկանիշներին, ապա դրանք «մարում են»։ Ընկ. Ժուկովի այս դրույթին որպես պատասխան լույս տեսավ ընկ. Ա. Եղիազարյանի «Սոցիալիստական ազգերի հատկանիշների հարցի շուրջը» խորագիրը կրող հոդվածը, որտեղ խիստ քննադատվում է վերոհիշյալ տեսակետը։

Ընկ. Ժուկովի թռուցիկ ձևով արտահայտված կարծիքը ընկ. Եղիազարյանը բարձրացրեց «կոնցեպցիայի» աստիճանի, չափազանց պարզ հարցը խճճեց, խոսքով պայքարելով Ստալինի կուլտի դեմ, իրականում մնաց նրա դիրքերում։

Ամբողջությամբ համաձայն չլինելով ընկ. Ժուկովի հետ, մենք պաշտպանում ենք նրա հարցադրումը։ Իսկապես ժամանակն է, որ վերանայվի ազգի սահմանումը։ Բայց այն պետք է վերանայվի ոչ թե նրա համար, որ այն Ստալինն է տվել, դա կլինի կանխակալ և ոչ գիտական մոտեցում, այլ որովհետև զարգացել է կյանքը, պատմության արենայում հանդես են եկել նոր ազգեր, որոնք ամենևին չեն տեղավորվում այդ սահմանման շրջանակներում։ Իսկ ինչ վերաբերում է բանավիճող ընկերների այն փաստարկին, թե այդ սահմանումը ըստ էության Ստալինինը չէ, հարցի էությունը չի փոխում։

Ազգին տված Ստալինի սահմանման մեջ հաշվի էին առնված միայն կապիտալիզմի դարաշրջանի տիպիկական ազգերը. մոռացության է տրված Վ. Ի. Լենինի այն դրույթը, որ «Դարաշրջանը հենց այն պատճառով է կոչվում դարաշրջան, որ նա ընդգրկում է ինչպես տիպիկական, այնպես էլ ոչ տիպիկական, ինչպես մեծ, այնպես էլ փոքր, ինչպես առաջավոր երկրներին հատուկ, այնպես էլ հետամնացներին հատուկ բազմապիսի երևույթների... միագումարը» (Լենին, Երկեր, հ. 23, էջ 34—35)։

Ազգի հանրահայտ սահմանումը համարելով թերի, մենք ամենևին հավակնություն չունենք ավելի ընդունելի սահմանում տալու։ Ազգերի գոյությունը մենք դիտում ենք որպես ակնհայտ պատմական փաստ, որպես սոցիալական երևույթ[1], միաժամանակ արձանագրելով, որ ազգը որպես սոցիալական երևույթ իր բովանդակությամբ այնքան հարուստ է, որ ոչ մի սահմանում չի կարող դրա բովանդակությունը լրիվ ընդգրկել։ Ազգ կոչված մարդկանց հանրությունը, որպես այդպիսին, միանգամից չի ստեղծվել, պատմական երկարատև պրոցեսի արդյունք է. յուրաքանչյուր ազգ ունի իր ազգային միասնական տերիտորիան, բայց ոչ որպես հատկանիշ, այլ որպես այդ ազգի գոյության պայման, որպես որոշակի պատմական տերիտորիա, որի վրա նա ապրում է։ Այնուհետև ազգերին հատուկ է լեզու, բայց ամենևին պարտադիր չէ, որ ամեն մի ազգային միավորում խոսի մի լեզվով։ Միևնույն ազգը կարող է խոսել ոչ թե մի, այլ մի քանի լեզվով (օրինակ՝ ժամանակակից շվեյցարացիները, բելգիացիները, բրազիլիացիները)։

Միալեզվությունը բոլոր ազգերի համար պարտադիր ատրիբուտ չէ։ Որոշ եվրոպական ազգերի մոտ դա փաստ է։

Ազգի հոգեկան կերտվածքը խիստ հարա-

[1] Ընկ. Մ. Մելիքյանի այն դիտողությունը (տե՛ս «Լենինյան ուղիով» № 8, էջ 19), թե ազգը մյուս կողմից բնա-պատմական երևույթ է քննադատության չի դիմանում, որ պատմական է, ճիշտ է, բայց բնական (բնախոսական) իմաստով՝ ամենևին, ազգը իր մեջ ոչինչ բնախոսական չունի, նման կարծիքը ոչինչ ընդհանուր չունի մարքսիզմի հետ, թեև ընկ. Մելիքյանը վկայակոչում է մարքսիզմի կլասիկներին, առանց մեջբերելու։

բերական հասկացություն է և պայմանավորված տվյալ հանրության սոցիալ-տնտեսական միջավայրով։ Լենինը բացասաբար է արտահայտվել ազգը հոգեկան կերտվածքի միասնությամբ բնորոշելու Բաուերի տեսակետի մասին և քննադատել է Ռոզա Լյուքսեմբուրգին, որ լռությամբ էր անցնում Բաուերի տեսակետի կողքով։ Բացի վերոհիշյալներից, ազգի համար կարող է վճռական նշանակություն ունենալ պետականությունը։ Լենինը այդ հարցին հաճախ է անդրադառնում և ազգը շատ անգամ դիտում է որպես բուրժուական պետականության շրջանակներում միավորված հանրություն։ «Արդի կապիտալիզմի այդ պահանջներին ամենից ավելի բավարարող ազգային պետությունների գոյացումը... այս ամեն մի ազգային շարժման տենդենցն (ձգտումն) է։ Ամենախոր տնտեսական գործոններն են մղում դեպի այդ, և ամբողջ Արևմտյան Եվրոպայի, ավելին՝ ամբողջ քաղաքակիրթ աշխարհի համար էլ տիպիկ, նորմալ է կապիտալիստական դարաշրջանի համար ազգային պետությունը» (Երկեր, հ. 20, էջ 493)։ Ավելին, նույնիսկ կրոնը կարող է որոշակի նշանակություն ունենալ ազգի ձևավորման և զարգացման գործում։ Օրինակ, ազգային-ազատագրական պայքարը Ճավա կղզում (Հոլանդական Հնդկաստանում) իսլամի դրոշի տակ էր զարթնել, ինչպես մատնանշում է Վ. Ի. Լենինը «Ասիայի զարթոնքը» հոդվածում։ Այնպես որ կառչել Ստալինի տված սահմանումից և դրանից այն կողմ ոչինչ չտեսնել, ճիշտ չէ, հակապատմական է։ Ավելին, երբ նայում ենք ժամանակակից աշխարհի ազգագրական քարտեզին, նորից ու նորից համոզվում ենք, թե որքան տխուր կլինի մեր վիճակը, եթե այդ սահմանման շրջանակներում ցանկանանք լուծել ազգային հարցի տեսության բարդ հարցերը ներկա էտապում։

Ի. Ստալինը ազգի բոլոր հատկանիշները մի մակարդակի վրա էր դնում և վճռականապես պնդում, որ բավական է այդ հատկանիշներից մեկն ու մեկը պակասի, որպեսզի այս կամ այն ազգը դադարի ազգ լինելուց։ Նման տեսակետը մեթոդոլոգիապես ճիշտ չէ, նման մոտեցում նկատվում է նաև ընկ. Եղիազարյանի ու Մ. Մելիքյանի մոտ։

Ելնելով այդ սխալ մեթոդոլոգիական դիրքորոշումից՝ ընկ. Եղիազարյանը գրում է. սոցիալիստական ազգերի գոյությունն ու զարգացումը պայմանավորվում են ազգի բնորոշ չորս հատկանիշների միատեղ առկայությամբ։ Այս հարցում ճիշտ են այն հեղինակները, որոնք ելնելով մարքսիզմի ոգուց առաջնային նշանակություն են տալիս նյութական կարգի գործոններին՝ տնտեսական կյանքին ու տերիտորիային։

ՍՍՌՄ-ը բազմազգ պետություն է, նրա սահմաններում ապրող ազգերը նախկին, բուրժուական իմաստով դադարել են ազգեր լինելուց։ Նախկին ազգերին հատուկ էին ազգամիջյան գզվռտոցը, հետամնացությունը, դասակարգային թշնամանքը, պասսիվությունը։ Սոցիալիստական ազգերը բոլորովին այլ կարգի հանրություններ են։ Սոցիալիստական ազգերը հրաժեշտ են տվել հետամնացությանը, ճնշվածությանը, պասսիվությանը, տնտեսապես ամրացել են, քաղաքականապես ակտիվացել, կուլտուրապես զարգացել, հոգեպես մաքրվել են անցյալի աղտեղություններից, բարոյապես կատարելագործվել, լեզվական տեսակետից հարստացել և այլն։

Այդ պրոցեսը շարունակվում է շնորհիվ ՍՄԿՊ և սովետական պետության ինտերնացիոնալիստական ազգային քաղաքականության։ Բայց այդ պրոցեսն ունի և իր երկրորդ կողմը, քանի որ սովետական ազգերը անընդհատ աճում են, հետևապես աստիճանաբար վերանում են ազգերի զարգացման մակարդակի միջև եղած տարբերությունները, մեկը մյուսից սովորում են, իրար նմանվում, մերձենում, միավորվում և դրանով իսկ պայմաններ են ստեղծվում ազգերի ապագա միաձուլման համար։ Ժողովուրդները չէին կարող միաձուլվել ոչ ֆեոդալիզմի, ոչ էլ կապիտալիզմի օրոք, որովհետև հասարակության զարգացման այդ երկու աստիճաններից ոչ մեկը, էլ չենք խոսում նախնադարյանի և ստրկատիրականի մասին, դրա համար անհրաժեշտ տնտեսական պայմաններ չի ստեղծում։ Այդ միաձուլումը ի վիճակի է իրականացնելու միայն կոմունիզմը, այն էլ իր զարգացման որոշ էտապում։

Սոցիալիստական ազգերն իրենց տնտեսական կյանքի ընդհանրությունը ժառանգություն են ստացել կապիտալիզմից. Ռուսաստանի տերիտորիայում ապրող բոլոր այն ժողովուրդները, որոնք թևակոխել են կապիտալիստական զարգացման շրջան, դրանով հանդերձ ձեռք են բերել տնտեսական կյանքի ընդհանրություն, սոցիալիզմից առաջ տնտեսական ընդհանրության հիմնական բովանդակությունը կապիտալիստական տնտեսական հարաբերություններն են, կապիտալիստական շրջանառությունը, նատուրալ տնտեսությունների վերացումը։ Այս հարցում ընկ. Եղիազարյանի տված բացատրությունն ուղղակի հակասում է մարքսիզմին։ Տնտեսական կյանքի ընդհանրություն հասկացությունը զրկել նրա հիմնական բովանդակությունից՝ տնտեսական հարաբերություններից, ավելի ճիշտ արտադրական հարաբերությունների ամբողջությունից, առնվազն տարօրինակ է։ Տնտեսական ընդհանրության ըմբռնման հարցում ճիշտ է պրոֆ. Աղաջանյանը գրելով, որ «...մարդկանց ոչ մի պատմական ընդհանրություն գոյություն չի ունեցել առանց տնտեսական



կյանքի ընդհանրության» (Լենինյան ուղիով, 1964, № 3, էջ 106)։

Իսկապես, առանց տնտեսական կյանքի ընդհանրության տնտեսական ֆորմացիա հասկացությունը կզրկվեր իր բովանդակությունից, սակայն չի կարելի ազգի ձևավորման հիմք հանդիսացող կապիտալիստական տնտեսական հարաբերությունները նույնացնել առհասարակ ամեն էտապի տնտեսական հարաբերությունների հետ, ինչպես անում է ընկ. Եղիազարյանը։

Կապիտալիստական արտադրական հարաբերություններն այն հիմքն են եղել, որոնց շնորհիվ հնարավոր է դարձել անցումը դեպի սոցիալիզմ։ Սոցիալիստական ռևոլյուցիան խնդիր դնելով տապալել կապիտալիզմը, ստեղծել սոցիալիստական արտադրաեղանակ, ամենևին էլ նպատակ չուներ ազգերը տնտեսապես տանել դեպի ֆեոդալական անցյալը՝ խախտելով նրանց տնտեսական կյանքի ընդհանրությունը։ Սոցիալիզմի զարգացման համար էլ տնտեսական կյանքի ընդհանրությունն անհրաժեշտ պայման է, բայց ոչ թե այնպիսի տնտեսական կյանքի, որը խարսխված է մասնավոր սեփականության վրա, ոչ թե ազգային շրջանակներում իրականացված տնտեսական ընդհանրությունը, այլ համաժողովրդական և կոոպերատիվ սեփականության վրա հիմնված տնտեսական կյանքի ընդհանրությունը, ՍՍՌՄ բոլոր ազգերի տնտեսական ընդհանրությունը, որն, ըստ էության, բացառումն էր մի ազգի շրջանակներում նախկինում գոյություն ունեցած տնտեսական ընդհանրության։ Այսօր ո՛չ միայն սոցիալիստական, այլ նույնիսկ կապիտալիստական երկրներում նախկին իմաստով տնտեսական ընդհանրությունը իր տեղը զիջել է շատ ավելի ընդհանուր տնտեսական կապերի (ի դեպ, այդ պրոցեսը հարյուրամյա պատմություն ունի)։ Սոցիալիզմի կառուցմամբ սովետական ռեսպուբլիկաները դադարել են տնտեսական մեկուսացված միավորումներ լինելուց։

Հարց դնել, թե սոցիալիստական ազգերի համար տերիտորիան դադարում է նշանակություն ունենալուց, անհիմն է։ Բոլորովին այլ են ազգային պետականությունների սահմանները, դրանք, իսկապես, ինչպես նշված է պարտիայի ծրագրում, ՍՍՌՄ ներսում կորցրել են իրենց երբեմնի նշանակությունը[1], որովհետև «բոլոր ազգերը իրավահավասար են, նրանց կյանքը կառուցվում է միասնական սոցիալիստական հիմքի վրա և հավասարաչափ բավարարվում են ամեն մի ժողովրդի նյութական և հոգևոր պահանջները, նրանք բոլորն ընդհանուր կենսական շահերով միավորված են մի ընտանիքում և համատեղ գնում են մի միասնական նպատակի՝ կոմունիզմի» (տե՛ս ՍՄԿՊ ծրագիրը, մաս 2, բաժին 4)։ Այս հարցի վերաբերյալ ընկ. Եղիազարյանի բացատրությունը, որ տվել է Լենինյան ուղիով-ի 1963 թ. № 9-ի 82—83 էջերում, ավելորդ է և հակասում է պարտիայի ծրագրին։

Այս առթիվ ընկ. Աղաջանյանի բացատրությունը նույնպես չի օգնում հարցի լուծմանը, իսկ Լենինից արված մեջբերումը՝ «այն հարցը, թե ինչպես որոշել պետության սահմանները, քանի որ մենք ձգտում ենք սահմանների լիակատար ոչնչացման, հիմնական, կարևոր հարց չէ, այլ երկրորդական», ամենևին չի ապացուցում, թե տերիտորիան ազգի համար նշանակություն չունի, սահմանները և տերիտորիան նույնացնելը ճիշտ չէ, դրանք տարբեր կարգի հասկացություններ են։

Բանավիճող ընկերներից ընկ. ընկ. Եղիազարյանը և Մ. Մելիքյանը, շոշափելով տերիտորիայի նշանակության հարցը, այն տեսակետն են պաշտպանում, որ ազգային տերիտորիայի միասնականությունը գնալով ավելի գործուն նշանակություն է ստանում, այդ իսկ պատճառով սովետական կառավարությունն ու պարտիան հոգ են տանում դրա միասնության մասին և բերում է փաստեր՝ Արևմտյան Բելոռուսիայի միավորումը Սովետական Բելոռուսիայի հետ, Արևմտյան Ուկրաինայի միավորումը Սովետական Ուկրաինայի հետ, Կլայպեդայի մարզի հանձնումը Լիտվային և այլն։ Այս փաստերն անառարկելի են։ Բայց այդ փաստերից և ոչ մեկը չի խոսում այն մասին, որ սոցիալիստական ազգերի տերիտորիաները գործուն նշանակություն են ստանում, ավելին, այդ փաստերից և ոչ մեկը լրացուցիչ բացատրության կարիք չունի, որովհետև դրանք ժամանակին սպառիչ բացատրվել են Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն սովետի համապատասխան հրամանագրերում։ Իսկ ինչ վերաբերում է այն հարցին, թե ազգային տերիտորիան իր բնույթը փոխել է, առաջ այն եղել է մասնավոր սեփականություն, իսկ այժմ ազգայնացվել է, այս, իհարկե, հարցի հետ ոչ մի առնչություն չունի, որովհետև, նախ՝ ազգային տերիտորիան միշտ պետական սեփականություն է եղել և ապա՝ անկախ այն բանից, թե այդ տերիտորիան ումն է եղել, այնտեղ բնակվել է այս կամ այն ազգը։

[1] Ճիշտ չէ ընկ. Եղիազարյանի այն պնդումը, թե չի կարելի բավարարվել բացասական բնութագրումով։ Բացասական բնութագրումն էլ կարող է բացահայտել երևույթի էությունը։ Օրինակ, եթե մենք կապիտալիզմը բնութագրում ենք որպես անմարդկային հասարակարգ, ապա դրանով մենք շատ բան ենք ասում, չնայած բնութագրությունը բացասական է։

Ընկ. Եղիազարյանը գտնում է, որ «Հոգեկան կառուցվածքի ընդհանրության հատկանիշի «մարումը» և նրա անկիրառելիությունը սոցիալիստական ազգերի նկատմամբ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում կնշանակեր ազգային տարբերությունների վերացում, մահացում հիշյալ ժամանակաշրջանում։ Ավելի կոնկրետ՝ դա կնշանակեր Սովետական Միության սոցիալիստական ազգերի փոխանցումը այլ ազգի՝ այդ ազգերի լեզուների ժամանակավոր պահպանմամբ, այլ խոսքով դա կնշանակեր այդ ազգերի ասիմիլյացիան»։ Պարզ չէ, թե ընկ. Եղիազարյանը ինչ է հասկանում հոգեկան կառուցվածք ասելով, ո՛րն է այդ հասկացության ռեալ բովանդակությունը։ Կանտը մոտ երկու դար առաջ ազգերն իրարից տարբերում էր «հոգեկան կառուցվածքով» (բնավորությամբ), գտնելով, որ ֆրանսիացիները թեթևամիտ են, անգլիացիները՝ սառնարյուն, հույները՝ սողացող, գերմանացիները՝ տոկուն, հայերը՝ գործարար, կան բազմաթիվ ազգեր, որոնք ըստ Կանտի հոգևոր առանձնահատկություն չունեն, բայց կարող են հետագայում ձեռք բերել և կամ էլ այնպիսի ազգեր, որոնք ոչ ունեն, ոչ էլ կարող են ձեռք բերել։ Գուցե այս բաժանումը նկատի ունի ընկ. Եղիազարյանը։ Բայց ո՞վ կընդունի այս բաժանման լրջությունը։ Այս հարցում մարքսիզմի տեսակետը արևի նման պարզ է. նախ՝ դասակարգային հասարակության մեջ միասնական հոգեկան կերտվածքի մասին խոսելն անիմաստ է։ Հոգեկանը խիստ դասակարգային է։ Պրոլետարիատի հոգևոր կերպարը, պրոլետարիատի բարոյականությունը տարբերվում են ինչպես խոշոր կապիտալիստի, այնպես էլ մանր բուրժուայի մտածելակերպից ու հոգևոր կերպարից։ Երկրորդ՝ հոգեկանը խիստ փոփոխական է և կապված է կեցության հետ, փոխվում է կեցությունը, այն չի կարող իր անդրադարձումը չգտնել հոգևորի մեջ։

Ընկ. Մ. Մելիքյանը որպեսզի հարցը պարզեցնի՝ հոգևոր կերպար (духовный облик) հասկացությունը տարբերում է հոգևոր կերտվածք (духовный склад) հասկացությունից և գտնում, որ դասակարգայնությունը վերաբերում է հոգևոր կերպարին, իսկ հոգևոր կերտվածքը ապադասակարգային է և, առհասարակ, հատուկ է ամբողջ ազգին։ Շատ հարգելով ընկ. Մ. Մելիքյանի հեղինակությունը ազգային հարցում, չի կարելի անցնել այս լիովին անընդունելի թեզի կողքով։

Ճշմարտությունն այն է, որ տրադիցիաները, ոճը իրենց բոլոր արտահայտությունների մեջ, կենցաղը, կոլորիտը և այլն նույնպես դասակարգային են և համազգային լինել չեն կարող։ Մենք ամեն քայլափոխում օգտագործում ենք պրոլետարիատի ռևոլյուցիոն տրադիցիաներ, պրոլետարական կենցաղ և նման այլ արտահայտություններ։ Կամ մի՞թե պատմության մեջ հայտնի ոճերը՝ կլասիցիզմը, ռեալիզմը, ռոմանտիզմը ապադասակարգային երևույթներ են եղել։

Ազգերը ըստ հոգեկան կերտվածքի բաժանելը կանտականության ռեցիդիվ է, որը թափանցել է սոցիալ-դեմոկրատական գրականության մեջ։

Մի քանի խոսք «ազգային կուլտուրա» հասկացության մասին։ Բանավիճող ընկերներից ոմանք ինտերնացիոնալ կուլտուրա հասկացությունը մերժում են և ամեն մի ազգային կուլտուրայի համար տվյալ ազգային ձևը համարում պարտադիր։ Նախ՝ այնպիսի մեծ կուլտուրա, ինչպիսին մեր իդեոլոգիան է՝ մարքսիզմ-լենինիզմը, արմատապես ինտերնացիոնալ կուլտուրա է։ «Ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա» ֆորմուլան ֆիքսում է այն փաստը, որ կուլտուրան այժմ որևէ ազգային ձևի մեջ պետք է դրվի, այլ կերպ էլ հնարավոր չէ, քանի դեռ ազգեր գոյություն ունեն։ Այդ ֆորմուլան ամենևին չի պարտադրում հայկական կուլտուրայի համար հայկական ձև կամ ռուսական կուլտուրայի համար՝ ռուսական ձև։ Ժամանակակից հայ կուլտուրայի գործիչների մի ստվար մասը կամ չի տիրապետում հայոց լեզվին, կամ էլ այնքան վատ է տիրապետում, որ չի կարող այդ լեզվով ստեղծագործել, մի՞թե սա հիմք է տալիս դրանց ջնջելու հայ կուլտուրան ստեղծողների շարքից։ Օրինակ, բավականին թվով հայ գրողներ, որոնց ստեղծագործություններում շունչ է առնում հայ սոցիալիստական իրականությունը՝ իր բազմերանգներով, ստեղծագործում են ռուսերեն լեզվով. մի՞թե մենք հիմք ունենք նրանց ռուս գրող համարելու և ասելու, որ հայ կուլտուրայի հետ կապ չունեն։

Տարբեր ազգային լեզուների գոյությունը փաստ է։ Ազգային լեզուները սոցիալիզմի օրոք ո՛չ միայն չեն մարում, այլև զարգանում են, հարստանում հարևան ազգերի լեզուների հետ փոխշփվելու միջոցով, և այդպիսով հնարավոր է դառնում ընդհանուր քաղաքական և գիտական տերմինաբանության մշակումը, որը մի քայլ է ապագա միասնական լեզվի ստեղծման ճանապարհին։ Այժմ դժվար է ասել, թե այդ ապագա լեզուն ինչպիսին կլինի, բայց մի բան փաստ է, որ այն իր բնականությամբ չի զիջի ժամանակակից և ոչ մի լեզվի և այդ ապագա լեզվով խոսող անհատներից և ոչ մեկը «անհարմար» չի զգա այն բանի համար, որ իր նախորդները խոսել են մի ինչ-որ այլ լեզվով։ Լեզուների ապագայի վերաբերյալ Ստալինի տեսակետը քննադատության չի դիմանում։ Ստալինի այն դրույթը, թե ապագա լեզուն չի լինի ոչ ռուսերենը, ոչ անգլերենը, ոչ գերմաներենը, այլ՝ ինչ-որ մի նոր լեզու, լուրջ առարկությունների տեղիք է տալիս։ Պատմության մեջ ոչինչ առանց անհրաժեշտության չի ստեղծվում և, եթե ժամանակակից լեզուներից մեկը կարողանա ապագայում բարձրանալ համաշխարհային հաղորդակցման միջոցի աստիճանի, դրանում արտառոց ոչինչ չի լինի, ինչպես կարծում են ազգային հարցի որոշ տեսաբաններ, հետևելով Ստալինի տեսակետին։

Ընկ. Եղիազարյանը ճիշտ դիրքերից չի քննադատում պրոֆ. Աղաջանյանին ազգային զարգացման հարցում։ «Պրոլետարիատը ո՛չ միայն հանձն չի առնում պաշտպանել յուրաքանչյուր ազգի ազգային զարգացումը, այլ ընդհակառակը, մասսաներին զգուշացնում է նման պատրանքներից, պաշտպանում է կապիտալիստական շրջանառության լիակատար ազատությունը, ողջունում է ազգերի ամեն մի ասիմիլյացիա, բացառությամբ բռնի, կամ արտոնությունների վրա հիմնված ասիմիլյացիայից»։ Լենինի այս միտքը, որ բերել է պրոֆ. Աղաջանյանը, ընկ. Եղիազարյանը իր երկրորդ հոդվածում համարում է սոցիալիզմի պայմաններին չհամապատասխանող։ Նա գրում է. «Միայն դոգմատիզմով տառապողները կարող են Լենինի 1913 թ. ասածները կամ դրույթները կապիտալիստական աշխարհի մասին, տարածել սոցիալիստական աշխարհի վրա, կամ թե պրոլետարիատի անելիքը բուրժուական հասարակության շրջանակներում տարածել սոցիալիստական հասարակության վրա»։ Այստեղ, իհարկե, մենք գործ ունենք Լենինի դրույթին հակասող մի թեզի հետ, որն ընկեր Եղիազարյանն առաջ է քաշում դոգմատիզմի դեմ պայքարելու անվան տակ։ Պրոլետարիատն իր էությամբ ինտերնացիոնալիստական է և եթե, Լենինի արտահայտությամբ, «հանձն չի առնում պաշտպանել յուրաքանչյուր ազգի ազգային զարգացումը», այդ ոչ թե հետևանք էր այն բանի, որ պրոլետարիատը կապիտալիզմի պայմաններում այդպիսի հնարավորությունից զուրկ էր, ինչպես ներկայացնում է ընկ. Եղիազարյանը, այլ դա պրոլետարիատի՝ որպես ամենառևոլյուցիոն դասակարգի, ինտերնացիոնալիստական քաղաքականությունից է բխում։ Եթե պրոլետարիատը հանձն առներ պաշտպանել ամեն մի ազգի «ազգային զարգացում», էլ ի՞նչ կմնար պրոլետարիատից, որպես ամենառևոլյուցիոն ու ինտերնացիոնալ ուժից։ Նա կվերածվեր նացիոնալիստների գործիքի։

Այնուհետև ընկ. Եղիազարյանը շարունակում է. «Այժմ արդեն և բանվոր դասակարգը և նրա պարտիան, հանձն են առնում պաշտպանել յուրաքանչյուր ազգի զարգացումը, ազգային կուլտուրան, այն պարզ պատճառով, որ յուրաքանչյուր ազգ այդ հասարակարգում իրենից ներկայացնում է նախկին բուրժուական ազգերի վերափոխված և կազմավորված սոցիալիստական ազգ...»։ Ընկ. Եղիազարյանն իրավացի չէ. եթե պարտիան այսօր պաշտպանում է ազգի և ազգային կուլտուրայի զարգացումը, նա պաշտպանում է ոչ թե յուրաքանչյուր ազգի «ազգային զարգացումը», այլ յուրաքանչյուր սոցիալիստական ազգի սոցիալիստական զարգացումը։ ՍՄԿՊ ներկայիս քաղաքականությունը ո՛չ միայն չի հակասում Լենինի 1913 թ. վերոհիշյալ մտքին, այլ լրիվ ներդաշնակ է նրա հետ, ավելին, միայն սոցիալիզմի պայմաններում է, որ բանվոր դասակարգը հնարավորություն ունի հետևողականորեն կենսագործելու լենինյան պատգամները։

Մի քանի խոսք ազգերի ապագայի մասին։ Ազգերի ապագան շատ պարզ է. պատմական զարգացման տենդենցը աստիճանաբար տանում է դեպի ազգերի անհետացումն ու ձուլումը։ Ազգերի ձուլման հիմնական պայմանը կոմունիզմի հաղթանակն է։ Առայժմ կոմունիզմը գտնվում է լինելիության պրոցեսում, հետևապես այժմ հավաստել ազգերի վերջնական ձուլումը՝ անհիմն է։

Բանավիճող ընկերներն այնպես են դատում ազգերի ձուլման մասին, որ կարծես այդ հարցը ինչ-որ տեսաբաններից կախված լինի, եթե ուզեն, վաղը ևեթ կձուլեն։ Այս սխալ, սուբյեկտիվիստական տեսակետի աղբյուրը «ասիմիլյացիա» հասկացության ոչ ճիշտ ըմբռնումն է, իսկ մյուս կողմից՝ այդ պրոցեսի մասին մեխանիկական պատկերացումը։ Ընկ. Մելիքյանը ազգերի ասիմիլյացիայի փաստը հերքելու համար օրինակ է բերում ՍՍՌՄ-ում ազգությունների թվական աճը։ Իհարկե, եթե սոցիալիզմը կոչված լիներ թուրք ասիմիլյատորների նման այլազգիներին ոչնչացնելու կամ բռնի ձուլելու, այն ժամանակ նա երբեք պրոլետարական իդեոլոգիա և նպատակ չէր լինի։ Սխալ է պնդել, թե հայերի թվապես նվազելու դեպքում միայն մենք կարող ենք խոսել ասիմիլյացիայի փաստի մասին։ Այն ասիմիլյացիան, որ տեղի է ունենում ՍՍՌՄ-ում և պրոգրեսիվ տենդենց է, ոչ մի ընդհանուր բան չունի նման ըմբռնման հետ, այլ նրա ուղղակի հակադրությունն է։ Ոչ հեռավոր ապագայում ՍՍՌՄ բոլոր ազգերը թվապես կկրկնապատկվեն, բայց այդ փաստը կլինի ոչ թե ասիմիլյացիայի հերքումը, այլ ընդհակառակը այդ ասիմիլյացիայի հետևանքներից մեկը, այսինքն՝ ՍՍՌՄ ժողովուրդների հետագա բարեկամության ու հզորության ամրապնդման արդյունքը։ Բայց ամբողջ հարցն այն է, որ հայը, ռուսը, վրացին ապագայում այլևս չեն լինի այսօրվա մտածելակերպի, այսօրվա գործելակերպի, այսօրվա բարոյականության կրողը, այլ

դակաթ գուրգուրանքով փոխարինել է նրա որդու մորը։

1931 թվականին Վահանը նշանակվում է Անդրֆեդերացիայի ֆինանսների ժողովրդական կոմիսար։ Մեր ձեռքի տակ է ՀամԿ(բ)Պ Անդրերկրկոմի քարտուղարի բնութագիրը, որտեղ նշվում է նրա ֆինանսական գործերի լավատեղյակության, գաղափարական կայունության մասին։

Այդ աշխատանքում ևս ցայտուն դրսևորվել է նրա հոգու վեհ գծերից մեկը՝ ինտերնացիոնալիզմը։ Անդրերկրկոմի քարտուղար Մամիա Օրախելաշվիլին, Անդրկովկասյան ժողտնտխորհի նախագահ Մուսաբեկովը, ինչպես և պարտիական ու պետական շատ գործիչներ գոհունակությամբ էին նշում Երեմյանի գործունեության այդ գիծը։

Ընկերների շրջանում կենսախինդ Վահանը, որ հաճախ շատ լուրջ մտքեր արտահայտում էր սրամիտ կատակով, հայտնի էր որպես լավ պատմող։ Քայլում էր, ձեռքերը շփելով պատմում, իր պատմածներում աշխատելով ընդգծել մարդու բնավորության ու գործունեության հակասականությունը։

— Հաճախ կյանքում շատ վախկոտ մեկը, մեկ էլ տեսար մի այնպիսի հերոսություն կատարեց, որ բնավ մտքովդ չէր անցնի կամ հակառակը,— և պատմում ու զարմանքով ասում էր.— տեսե՛ք, ա՛յս է մարդը, ես ձեզ բան եմ ասում, այդպիսի՛ն է մարդը։



Սեղանին գրքեր են թափված, Մարքսի, Լենինի, Պլեխանովի գործերը... գլուխը ձեռքերի մեջ առած, տխուր նստած է Տիտոնիկը, իսկ Վահանը քայլում է հուզված ու խոսում, ասես ինքն իրեն հանգստացնելու, համոզելու համար։

— Կասկած չկա, որ մի սև ձեռք է գործում, հո չեն կարող այսքան մարդիկ, և այն էլ ինչպիսի՜ք, միանգամից մեղավորներ դառնալ։

Նա պետք է գար Երևան։ Տիտոնիկը ճանապարհում էր նրան...

Գնացքի մեկնելուց առաջ Վահանը գլուխը հանեց պատուհանից և՝

— Վստահ եմ, որ հավատում ես ինձ, ես ոչնչով մեղավոր չեմ, շուտով կվերադառնամ։

Այդպես էլ մինչև իր կյանքի վերջը նա իրեն հառած տեսավ կնոջ տխրամած, արցունքոտ աչքերը։

Երևանում նա ապրում էր Տիտոնիկի եղբոր՝ Թովմասի տանը։

Հունվարյան մի ցուրտ օր Վահանը բոլորովին նման չէր իրեն. ներս մտավ և դառնալով Թովմասին՝

— Ես պետք է գոնե վերջին անգամ տեսնեմ Տիտոնիկին, որդուս, այլ կերպ չեմ կարող։

Այդ օրը վերցրել էին նրա պարտիական տոմսը՝ մահացու հարված հասցնելով նրան։

— Գնացինք կայարան,— պատմում է հասակն առած բժիշկը՝ Թովմաս Գասպարի Մելքոնյանը։— Ընդհանուր վագոնով նա պիտի գնար։ Գնացքը շարժվելու վրա էր, երբ այն կանգնեցրին, փնտրեցին, գտան Վահանին և հենց այդտեղից էլ տարան։ Նա գնում էր չխոնարհած գլխով, և նրա այդ կեցվածքը, որ իմ հոգում պատկերվել է անջինջ, ինձ հիշեցրեց նրա՝ Լսո՞ւմ ես դու բանաստեղծության այս տողերը.

— Ես մարտիկ եմ նոր, երկարից առողջ.
Հզոր եմ հիմա և հպարտ եմ ես...
Եվ հար անճկուն պիտ երթամ առաջ,
Ինձ համար չկան վիհեր և արգելք:
Ոչ ոք չի անսա ինձանից հառաչ,
— Պիտի չընկճվիմ երբե՜ք ու երբե՜ք:

Գնաց՝ մարքսիզմն իր համար նոր ավետարան դարձրած, նոր կյանքը դարբնող ազնիվ մարդկանցից մեկը, և ոչ ոք չլսեց նրա հառաչը։ Դա 1937 թվականն էր։

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Լ. ԽՈՒԴՈՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 05202 Պատվեր 43 Տիրաժ 9450 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 27/I 1965 թ.։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։


## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ ՏԵՂԵԿԱՏՈՒ— *Կոմունիստն ընտրվել է սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար և առաջին իսկ օրվանից բախվում է շատ հարցերի։ Հատկապես անփորձ կազմակերպիչների համար ամեն ինչ չէ, որ պարզ է։*

*Այս գրքում կան լավ խորհուրդներ, որոնք օգտագործելով նա կարող է ճիշտ կազմակերպել իր աշխատանքը։*

*Այստեղ հրապարակված կոնսուլտացիաները, հարցերի պատասխանները գրված են պարտիական փաստաթղթերի և, մասամբ, ՍՄԿՊ ԿԿ-ի* Պարտիական կյանք *ամսագրում հրապարակված նյութերի հիման վրա, որոնց նպատակն է ո՛չ միայն տալ այս կամ այն կոնկրետ հարցի պատասխանը, այլև օգնել քարտուղարներին, բյուրոների և կոմիտեների անդամներին՝ ինքնուրույն գտնելու պատասխանները, տարբեր պայմաններում անսխալ գործելու։*

Գ. ՎԻԽՏՈՒՆՈՎՍԿԻ, Վ. ՎԻԿՏՈՐՈՎ—Դետքում—*Բրոշյուր է պարտիական-պետական վերահսկողության սկզբունքների, արդի պայմաններում դրանց հետագա զարգացման և այն մասին, թե ինչպես են կենսագործվում լենինյան գաղափարները։*

*Այստեղ ընդհանրացվում է ժողովրդական վերահսկիչների բազմամիլիոն բանակի համեմատաբար կարճ ժամանակամիջոցում ձեռք բերած հաջողությունների արժեքավոր և ուսանելի փորձը։*

*Այն օգտակար կլինի պարտիական-պետական վերահսկողության աշխատողների համար։*

Ա. ՏԱՐԱՍԵՆԿՈ—Վ. Ի. Լենինի դասախոսական վարպետության մասին— *Անսահման է Վլադիմիր Իլյիչ Լենինի պրոպագանդիստական վարպետությունը. Լենին-դասախոսը համազոր է Լենին-հրապարակախոսին։*

*Ո՞րոնք են նրա այդ վարպետության առանձնահատկությունները, ո՞րն է լսարանն ամբողջովին իրեն ենթարկելու, համակ լսողություն դարձնելու կարողության «գաղտնիքը»։*

*Այս բրոշյուրում խոսվում է այդպիսի մի քանի «գաղտնիքների», դասախոսությանը պատրաստվելիս Վլադիմիր Իլյիչի ստեղծագործական լարված աշխատանքի մասին։*

*Բրոշյուրի պրոպագանդիստ հեղինակն օգտագործել է լենինյան շատ հետաքրքրական փաստաթղթեր, ասույթներ, մեր պարտիայի և բանվորների ու գյուղացիների միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչների հիշողություններ։*

Վ. ՎԼԱԴԻՄԻՐՑԵՎ, Ն. ՆԵՖԵԴՈՎ—*Դասախոսության նախապատրաստումը— Դասախոսի ելույթի հաջողությունն ամբողջովին պայմանավորված է նրանով, թե որքան հիմնավոր ու լավ է նախապատրաստված այն։ Բրոշյուրում շարադրված են այն կարևորագույն սկզբունքները, որոնցով պետք է առաջնորդվի դասախոսը, ելույթ ունենալու համար։*

Վ. ԱԶՈՒՐ— Դիտողական պիտույքներ դասախոսության համար— *Բրոշյուրը նվիրված է պարտիական կազմակերպությունների պրոպագանդիստական գործունեության ամենակարևոր հարցերից մեկին՝ ՍՄԿՊ պատմությանը, քաղաքատնտեսությանը, կոնկրետ էկոնոմիկային, միջազգային հարաբերություններին նվիրված դասախոսությունների ժամանակ դիտողական պիտույքներ օգտագործելու մեթոդիկային։ Կծանոթանաք դիտողական պիտույքների տեսակներին և դրանց օգտագործման հիմնական ձևերին։*

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊՈԼԻԷԹԻԼԵՆԻ ՄՇԱԿՈՒՄԸ ՈՒԼՏՐԱՄԱՆՈՒՇԱԿԱԳՈՒՅՆ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐՈՎ

*Սինթետիկ նյութ պոլիէթիլենը շատ արժեքավոր է։ Այն էժան է, ունի էլեկտրամեկուսիչ հատկություններ, հեշտ է մշակելը և ռեակցիայի մեջ է մտնում լոկ առավել ագրեսիվ ոչ շատ քիմիական նյութերի հետ։ Պոլիէթիլենն օգտագործվում է որպես մեկուսիչ նյութ հեռախոսաթելի համար, իսկ ուժային կաբելների մեկուսացման համար այն կիրառելի չէ, որովհետև հալվում է C-ի 105—115 աստիճանում։ Շվեդական հետազոտողներին վերջերս հաջողվել է գտնել պոլիէթիլենը ջերմադիմացկուն դարձնելու նոր մեթոդ։ Ըստ այդ մեթոդի պոլիէթիլենը ճառագայթահարում են ուլտրամանուշակագույն ճառագայթներով։ Նախապես պոլիմերը ծածկում են ուլտրամանուշակագույն ճառագայթների նկատմամբ բարձր զգայունակություն ունեցող նյութի բարակ շերտով, որից հետո սկսում ճառագայթահարել։ Դրանից հետո պոլիէթիլենը այլևս չի հալվում, այլ 250—300 C-ի ջերմաստիճանում սկսում է ածխանալ։*

## «ՏԵՍՆՈՂ» ԱՎՏՈՄԱՏ

*Բամբակի մեքենայական հավաքի ժամանակ բերքի կորուստը դեռևս մեծ է։ Մեքենայի համար դժվար է հավաքել շարքերի արանքում ընկած կնգուղները։ Մեքենայի կատարելագործմանը ձեռնամուխ եղան Տաշքենդի ոռոգման և գյուղատնտեսության մեքենայացման ինստիտուտի մի խումբ գիտնականներ։ Նրանք ստեղծել են հատուկ ֆոտոռելե, որը մեքենային հնարավորություն է տալիս «տեսնելու» ամենափոքրիկ կնգուղը և հավաքելու այն առանց աղբի հետ խառնելու։ Մեքենայի աշխատանքի սկզբունքը հիմնված է այն բանի վրա, որ այդ սարքը տարբեր կերպ է արձագանքում հողից և բամբակից անդրադարձած լույսին։ Երբ սարքը «տեսնում է» բամբակը, նա անմիջապես հրաման է տալիս բանվորական մեխանիզմների բռնիչ մասերին՝ իջնելու այնտեղ, ուր ընկած է կնգուղը։*

## ՍԻՏԱԼ

*Սիտալը նոր պրոգրեսիվ նյութ է, որն իր կայուն տեղն է գրավում կյանքում։ Այդ նոր նյութի հիանալի հատկությունները՝ կարծրությունը, թեթևությունը, կոռոզիայի նկատմամբ բարձր դիմացկունությունը այն դարձրել են լեգիրացված պողպատների և այլ համաձուլվածքների լավագույն մրցակիցը։ Այդ նոր նյութը կիրառվում է նաև պոլիգրաֆիայում։ Սիտալի գնդերն օգտագործվում են օվսեթային ձևերի հղկման և ներկերը փոշիացնելու համար։ Նոր գնդերը չորս անգամ ամուր են ճենապակե գնդերից։ Զգալի չափով բարձրանում են հղկման որակը և մեքենաների արտադրողականությունը։*

## ՁՈՒԿԸ ՑԻՍՏԵՌՆՈՒՄ

*Անգլիայում, Էրին նավահանգստի մոտ գտնվող վայրում, Մենն կղզում, անգլիական գիտնականների մի խումբ փորձարկումներ է կատարել ձուկը ցիստեռնի մեջ «արդյունաբերական» եղանակով ստանալու ուղղությամբ։ Այժմ նրանք ձկնկիթից ստացել են 160000 փոքրիկ կամբալաներ։ Դրանց 25 տոկոսը կենդանի կմնա. այդ մի քանի անգամ ավելի է, քան բնական պայմաններում, բաց ծովում մնացածը։ Ձկնկիթը լցրել են ծովաջրով լի սև պլաստմասսայից ցիստեռնի մեջ, ջրի ջերմությունը շաբաթական 0,5 աստիճանով բարձրացրել, մինչև 12-ի հասցնելը։ Մանր ձկների առաջանալուց 4 օր անց, որպես սնունդ նրանց տրվել է միլիոնավոր փոքրիկ ջրախեցգետիններ, որին հետո ավելացրել են մանրած միդիում։*